ՄԱՏԵՆԱԳՐՈՒԹԻՒՆՔ

# ՆԱԽՆԵԱՑ

---

## ԳՐԻԳՈՐ ԼՈՒՍԱՒՈՐԻՉ

ՍՐԲՈՅ ՀՕՐՆ ՄԵՐՈՅ

# ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄ ՃԱՌՔ

ԵՒ

## ԱՂՕԹՔ



Ի ՎԵՆԵՏԻԿ
Ի ՏՊԱՐԱՆԻ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

ՅԱՄԻ 1838 ՌՄՁԷ

# ՅԱՌԱՋԱԲԱՆ

Եթէ 'ի գործոյ ծնելասէր հօր արձանագիր երբէք աւանդեցաւ որդւոց զխւրական առաքինութիւնն 'ի նոսա կենդանագրել և աստուածպաշտութեան կրօնից լինել ուղեցոյց, այս մատեան է անշուշտ աւանդ պատուական աստուածարեալ հօր մերոյ լուսաբաշխ աղաչս տպաւորեալ. զոր յետ արտաբերական բանից նորա արձանագրելոց յերանելւոյն Ագաթանգեղեայ հրատարակեմք ի լոյս զգանձարան բազմարդիւն քրտանց հօրս մերոյ, որ զամբարեալն յինքեան զարդասիս սերմանց անապատ կրօնից գանձեալ 'ի սմա պարգևեաց սիրողապէս նորածնեալ որդւոցն փոխանակ մեհենական սնոտեաց:

Քանզի սկիզբն արարեալ նորա յաստուածածանօթութենէ և 'ի մարդասէր խնամոց արարչին առ արարածս, անցանէ ապա առ ամենայն ազգս ուղղութեանց, խրատս քաղցունս և բանս ամոք և դիւրագործս ուղղեալ առ ամենայն հասակ և պայման. և հակառակացն յանդիմանութեամբ առ արկեալ, քան երկիւղալից սպառնալեօքն՝ յորդորագոյնս առնէ զլսողսն զառաքինութեամբ գալ և խնդամիտ ծուաձել ընդ քաղցր լծովն Քրիստոսի: Այլ 'ի վերայ այսորիկ առ որս միակեցական վարուց տենչանօքն բերիցեն, կանոնս հրաշալիս ըստ հոգևոր հարցն հանձարոյ սահմանեալ նոցա,

խրախոյս կարդայ յանտրտում եղբայրսիրութեան զմի-
մեամբք եղանել և զարտաքին կարգաւորութիւնն անվրէպ 'ի գլուխ տարեալ, բորբոքեալ սիրով միաւ-
գունդ զվերնայնոցն նկարագիրս յերկրի յանձինս իւ-
րեանց ճշգրտել։

Մատեան այսպիսի՝ հնութեամբն և պատուականութեամբն պատկառելի լեալ յամենայն ժամանակի 'ի հանուր ազգիս, չգիտեմ յոր արկածից բաղդին մատնեալ 'ի ձեռս առն աննշանի խանգարեալ ծայր 'ի ծայր 'ի յստակ դարձուածոյ բանից հայեցի ոճոյ, և 'ի հատուածոց ինչ յապաւեալ և եկամուտք կցկցեալ, եղ և երևեցաւ 'ի միջի։

Այն են արդարև 'ի խորախոս բանս երանելւոյս ինչ ինչ աստուածաբանից և եթ իմանալի, որ ներհունքն իցեն ոճոյ նախնի հարց որոց, և ողք բազմաքիրտն տարժանմամբ վաստակեն լուսաբանել զնոսա պէսպէս խելամտութեամբ ըստ ողջամիտ վարդապետութեան կաթողիկէ եկեղեցւոյ և վկայութեամբ նոյնաձայն բանից յայլոց սրբազանից։ Այլ զնոյն բանսն պատկառելիս իբրև զխաղալիկ մի մանկտւոյ այլայլել անիմայ մտօք, մոլորութիւն իցէ աններելի։

Արդ մերոյ հաւատարիմ տպագրիս օրինակ գրեալ էր 'ի ՌՃԻԲ գաղափարեալ 'ի հին երկաթագիր օրինակէ գրելոյ 'ի Թուին ՑՀԸ որ պահէր յարկեղս գրոց 'ի Սիս քաղաքի, որպէս ազդ առնէ յիշատակարանն. և քննեալ մեր մանրախուզիւ զգաղափարն վկայեմք երկիւղածութեան գրչին յամենայնի անայլայլակ առեալ զհաւասարն ըստ ամենայն նշանախեցից հնագիր օրինակին, մինչև զմիոյ կամ զերկուց տառից անգամ որ 'ի հնութենէ խանգարեալ էին 'ի հինն՝ դատարկ թողուլ զտեղին։ Առ հնութեան դարձեալ քանզի թուղթք անկեալ էին 'ի սկզբանէ, անտի սկիզբն առնէ օրինակս մեր, ուր մեք ազդ արարեալ եմք 'ի մերում տպագրութեան յէջն 10. և զնախնի պակասորդն յաջողեցաւ մեզ յայլմէ օրինակէ լրացուցանել. որ թէ-

պէտ և նորագիր 'ի ՌՀԴ, այլ հարազատութեամբն ոչ ինչ նուազ քան զգաղափար երկաթագիր օրինակին։

Իսկ զվաստակ մեր 'ի սոյն, թէպէտ և դուզնաքեայ, նուիրեմք աւասիկ 'ի նորին երանելւոյ հօր քաղցր յիշատակ և յորդւոց նորա 'ի փրկաւէտն վայելս. և և այս մեզ միակ տրիտուր փոխարինի և յառաջիկայն խորախոյս քաջալերութեան։

---

# ՑԱՆԿ

ՍՐԲՈՅՆ

# ԳՐԻԳՈՐԻ

## ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

ԱՍԱՑԵԱԼ

# ՃԱՌՍ ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄՍ

ԵՒ ԼՈՒՍԱՒՈՐ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆՍ
ՅԱՂԱԳՍ ՕԳՏԻ ԼՍՈՂԱՑ



## Ա

Մի է էութիւն և գոյութիւն ամենասուրբ Երրորդութեան. և իւր է միութիւն և ոչ յայլմէ գոյութէ։ Զանսկզբանսն ունի զպատճառսն Հայր զՈրդւոյ և զՀոգւոյ։ Իսկութիւն անծին և էութիւն անսկիզբն, մշտնջենաւորութիւն անսահման և ճշմարտութիւն անփոփոխելի, կեանք և կեցուցիչ ամ կենդանեաց։ Հայր է Որդւոյ, և բղխումն Հոգւոյ. ամ է և արարիչ արարածոց երևելեաց և աներևութից։ Պատճառ ասի ծննդեանն Որդւոյ, և բղխումն Հոգւոյն սրբոյ։ Իսկ ինքն անծին զէն անսկիզբն ծնեալ. մշտնջենաւորին անսահմանի զճշմարտութիւնն անփոփոխ ծնեալ. կենացն կենարարաց զկենանին կենսատու ծնեալ. լուսոյն կենդանեաց զկենդանի լոյսն ծնեալ. բարւոյն զբարերարն ծնեալ. արարչին զարարիչն ծնեալ ամ արարածոց երևելեաց և աներևութից։ Երկնից հաստիչ և երկնայնոց զօրութեանցն, երկրի և որ ՚ի սմա են արարածք։ Նա է և կատարեալ և զամ յամի լնու, ինքն ոչ թերանայ. որ ոչ նուազի և ոչ հնանայ, ոչ լնու և ոչ պակասէ. որ նոյն կայ միշտ ՚ի լրութեան իւ-

րում և յանբաւութե։ Եւ չիք ուստեք եկամուտ կամ յաւելուած յանբաւ և յանհաս և յանսահմանն և յամենակատար բնութիւնն։ Որում ոչ հասու լինին միտք. նա և ոչ հրեշտակաց իմանի, թէպէտ և երագունք են որպէս զմիտս մարդկան. այլ ուր ակնարկեն կամք արարչին, յայնոսիկ սպասաւորութիւնս առնեն յերկնաւորս և յերկրաւորս։ Զի որպէս երկինք և ամ զարդք նոցա հաստատեալ կան Բանիւ այ և Հոգւով ամ զօրութիւք, նոյնպէս և երկիր լերամբք և դաշտովք, ծովով և գետովք և աղբերբք և անտառախիտ ծառովք։

Եւ չիք այլ արարիչ, բայց միայն սուրբ Երրորդութին, ամենազօր տէրութիւն, յստակ և պարզ ամենակալ զօրութիւն. որ ասաց և եղեն, հրամայեաց և հաստատեցան։ Որ նստի յերկինս երկնից և խնամէ զարարածս ամենայն. որ կանուխ գիտութբն և անբաւ իմաստութբն մատակարարէ զերկնաւորս և զերկրաւորս. և ամենեցուն կեանք է և կեցուցիչ, և յամենայնի անբաւ է և անհաս և անճառ։ Սէր է՝ կենդանի երանութբք լցեալ. լոյս անմատոյց, ահեղ և զարմանալի։ Գիտութի և իմաստութի 'ի նմանէ են ստուգեալ. կենդանի և կենդանարար. ողորմած և բարերար շնորհօք. երկայնամիտ է և դարմանիչ։ Ինքն սրբութի սրբոց մերձեցելոց 'ի նա սրբութբ և արդարութբ, լուսաւորիչ բանական բնութեանս միշտ. և ամենայնիւ ճշմարտութի է՝ յանդիմանելովն զմեզ և խրատելովն զմեղուցեալսն, զի ապրեսցին 'ի բարկութէն՝ որ գալոցն է 'ի վերայ ամբարշտաց։ Այլ և խոստմամբք բարեաց յորդորէ, զի արժանաւորք լիցուք պսակաց և փառացն յաւիտենից ամենաշահութեանցն։ Զի նաւահանգիստ է հանգստարար ճգնաւորաց 'ի խնամս սուրբ սիրոյ իւրոյ. որ յանճառ երանութիւն վայելեցուցանէ զառաքինացեալսն հոգւով։ Զի մեծութիք անքննինք են, անսկիզբն էութիւն, 'ի վեր քան զիմանալիս յանսահմանութեն և յանբաւութեն. և խնամովք տեսչութբ լնու զամենայն արարածս։ Որ գիտէ զխորհուրդս սրտից, և քննէ զերիկամունս, և առաջնորդէ օրինօք Հոգւոյն կենդանա-

բար անմահից յանմռաց ուրախութիւնս, յանդադար խնդութիւն, յանճառ և յանպատում բարութիւն, ժառանգելով զարքայութիւն Աստուծոյ։

Արդ այս ամենայն արհեստք ինքնաբոյսք անսահմանելի մշտնջենաւորին՝ դարմանիչք են յարարածս ըստ բարերարութեան արարչութեան իւրոյ. զի կեցուցիչ է 'ի խնամս իւր, որ անբաւ և անքննելի է։ Որում ոչ բաւէ իմաստութիւն հոգևորացն հասու լինել, Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. այլ 'ի գործոց իւրոց և յերախտեաց իմանի և ճանաչի անմարմնոց և մարմնաւորաց մի աստուածութիւն, ամենազօր տէրութիւն։ Զի որպէս արև և լոյս և ջեր՝ միոյ արեգական ասի և ոչ այլոց, և որպէս աղբեւր և ջուր և գետ 'ի միոյ 'ի բնութենէ լինի, սոյնպէս և միտք և բան և հոգի իմանի 'ի մարդում, նոյնպէս և աստ միոյ բնութեան և աստուածութեան է իմանալ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Զի ոչ է արեգակն առանց լուսոյ և ջերմութեան, և ոչ աղբեւր առանց ջրոյ և բղխման, և ոչ միտք առանց բանի և հոգւոյ։ Այնպէս և ոչ էր Հայր առանց Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։

# ՆՈՐԻՆ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ
# ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՃԱՌԵԱԼ ՃԱՌՍ ՅԱՃԱԽԱՊԱՏՈՒՄՍ
## Ի ՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆՆ ԱՌԱՆՁՆԱՒՈՐՈՒԹԻՒՆՍ

### Բ

ԿԱՏԱՐԵԱԼ է Հայր անձամբ և զօրութեամբ, գիտութեամբ և իմաստութեամբ, արարչութեամբ և բարերարութեամբ. և զամենայն իւր անծին իսկութիւնն ունի: Կատարեալ է Որդի անձամբ և զօրութեամբ, գիտութեամբ և իմաստութեամբ, արարչութեամբ և բարերարութեամբ. որ և զամենայն անսկիզբն էութիւն ունի: Կատարեալ է և սուրբ Հոգին անձամբ և զօրութեամբ, գիտութեամբ և իմաստութեամբ, արարչութեամբ և բարերարութեամբ. և զամենայն անսկիզբն էութիւն ունի: Մի է բնութիւն աստուածութեանն և անփոփոխ իսկութեանն. մի արարչութիւն և մի բարերարութիւն. մի տէրութիւն և մի զօրութիւն. և չիք ուստեք եկամուտ և յաւելուած փառաց յանսկիզբն Երրորդութիւնն: Զի նա է աղբիւր ամենայն բարեաց, և 'ի նմանէ բաշխին ամենայն պարգևք արարչութեանն յարարածս ամենայն: Որ յօրինէ և դարմանէ և սնուցանէ բարերարութեամբն իւրով զերևելիս և զաներևոյթսն հոգւով և ճշմարիտ վարդապետութեամբ, և առաջնորդէ յիւր արքայութիւնն և 'ի փառսն, որք հաւատան 'ի նա և կատարեսցեն զսրբութիւնս ահիւն Աստուծոյ 'ի սուրբ սրտէ և յանկեղծաւոր հաւատով, որպէս և գրեալ է:

Որպէս ընկալայք զհաւատոյն բան. և դուք այսպէս հաւատացէք յամենասուրբ Երրորդութիւնն, յարարիչն Աստուած և 'ի հաստիչն Տէր և 'ի կենսատու շնորհն:

Որ կենդանարար լուսովն և սուրբ օրհնովն ժառանգորդս առնէ իւր անճառ արքայութեանն. և լինի յորդորիչ յիշմանն խոստացեալ անպատմելի պարգևացն, որ կայ և պահի յուսացելոցն 'ի նոա հաւատով և սիրով։ Վասն զի սէր արարչութեանն ստիպեաց արարչին առնել զարարածս ա̃մ, որ երևին և որ ոչն երևին. ոչ 'ի պէտս իւրոյ ա̃ծութեանն արարեալ, այլ զի երևեսցին նորա փառքն, որ արարածովքս իմացեալ տեսանիւր անմարմնոց և մարմնաւորաց։ Որպէս ոչ առնու ինչ 'ի կենդանեաց, այլ տայ նոցա զկենդանութիւս, որպէս ոչ լոյս յաչաց՝ այլ 'ի լուսոյ լուսաւորի և տեսանէ զլոյսն, այսպէս և ա̃ծ կեցուցանէ և լուսաւորէ զարարածս իւր, զմտաւորս և զզգայնաւորս. և բաժանէ 'ի նոսա շնորհս որպէս և կամի։ Թէպէտ և բաժինք շնորհաց են, այլ ա̃ծ նոյն է՝ որ յաջողէ զա̃մ յամենայնի։ Եւ տուեալ պատիւ հրեշտակաց և մարդկան՝ իշխանական կամս, զի փառաւորեսցեն զբարեգործն ա̃ծ, որ յոչընչէ 'ի լինելութիւն էած, և զհանգամանս բարեպաշտութեանն ուսոյց գրովք սրբովք. զի կարասցեն խոյս տալ 'ի չարէն և առնել զբարին, և դարձեալ նորոգել փառաց 'ի փառս։

Յայտնի եղև 'ի Աստուծոյ սէրն 'ի մեզ, զի վասն մեր արար զերկինս և զերկիր և որ 'ի նոսա արարածք են. և այսու խնամով ցուցեալ զբարերարութիւն սիրոյ իւրոյ։ Սոյնպէս և արարածք ճշմարտեալ սիրով մերձեցին առ ա̃ծ հաւատով և յուսով և պատուիրանապահութեամբ. և լինի պարգևատու։ Զի յա̃մի դոհանալով զբարերարութեան խնամոց, և խոստովանողք և դաւանողք առ ճշմարտութիւն լինիցուք, և կացցուք 'ի հնազանդութեան հանդիսիցն՝ որ առ հաճոյս տէրութեանն իցէ. 'ի նեղութեան և յանդորրու անքակ մնալ 'ի սէրն որ առ ա̃ծ է՝ ա̃մ սրբութեամբ, հոգւով և մարմնով ասեմ միշտ։ Եւ ոչ զանուն արարչին՝ արարածոց կոչել, և ոչ զճշմարտութիւն մոլորեցուցանել 'ի սուտս։ Այլ առողջ անբիծ անարատ երախտեօք օրհնոյն կալ 'ի մտերմութեան միշտ։ Եւ այս ա̃մ յօրինուածք իրաւանց և արդարութեան կայ և մնայ արարչին առ արարածս միշտ։

Վասն այսորիկ լուեսցուք 'ի դատարկ և 'ի վայրապար՝ քննութէ, և զհետ երթիցուք խրատուց գրոց սրբոց հնոց և նորոցս։ Եւ չիք այլ ոք՝ որ պատմէ զիրաւունս. զի նովաւ կեամք և շարժիմք և եմք։ Նմա լուիցուք և 'ի նա յուսասցուք, որ փրկեաց զմեզ յամ վտանգից, և փոխէ յերկնից արքայութին։ « Արդ եկայք, որդեակք իմ, և լուարուք ինձ. և զերկիւղ տն ուսուցից ձեզ », ասէ 'ի սաղմոսերգութին. որ կոչէ զմեզ 'ի հնազանդութի հոգևոր օրհնացն։ Եւ զի « Որ պահէ զպատուիրանս իմ, ասէ տրն, նա է որ սիրէն զիս. և որ սիրէն զիս, սիրեսցի 'ի Հօրէ իմմէ. և առ նա եկեսցուք և օթևանս առ նմա արասցուք »։ Որպիսի՛ անճառ սիրով պատուեալք եղաք ։

Արդ մի՛ խոտան գտցուք յԱստուծոյ, զի մի՛ անկցուք յերանելի կենացն՝ զոր խոստացաւ սրբոցն ։ Զի արդարք ժառանգեսցեն զբարիսն, և մեղաւորք կրեն զպատիժսն։ « Որք Հոգւովն Աստուծոյ, ասէ, վարին, նոքա են որդիք Աստուծոյ. իսկ որ ըստ մարմնոյ կեան, հաճոյ այ ոչ կարեն լինել »։ Զի հոգևոր վարուք այսու կենօք վայելեսցուք յամ բարութիւնս յերկնաւորս։ Ո՛րքան է մեծութի աննման և անհամեմատ և անկշիռ այնր անվախճան կենացն. զի անպատում է. 'ի Հոգւոյն սրբոյ 'ի սիրոյ արարչին պատրաստեալ, որ ոչ լսի և ոչ իմանի, զոր տայ սիրողացն զնա. զի նորա կենարար սիրովն վայելեսցեն 'ի բարութիւնսն՝ որ 'ի վեր է քան զամ միտս և զխորհուրդս և քան զզօրաց երկնաւորաց. զի հանգուցանէ յանմահ կարգս՝ Որոց և ընտրութիք լինին յօթեւանսն ըստ արժանաւորութեն, անքննելին վայելչութի։

Զի որպէս հոգիք մտաւորք կենդանի են և անմահք, և չունին զպայման հասակին և զսահմանս գնացից, զի թէպէտ և քան զերկինս 'ի վեր բարձրանան և քան զծով անդր ելանեն յիշատակօք գիտութե իմաստութե՝ որ յառաջնորդութէ գրոց սրբոց, այլ որպէս յական թօթափել անդրէն ամփոփին 'ի կայանս մարմնոյն կենաց, այսպէս և մարմինք 'ի յարութիւն անդր՝ փոփոխին յանճառ և յանպատում կեանսն, 'ի բիւրակերպեան ճառագայթսն և 'ի կեն-

դանի լոյսն և 'ի փառսն . լուցանելին Հրով Հոգւոյն յանշիջանելի լոյսն : Եւ որպէս անարգ և տխմար է տեսիլ մարմնոյս քան զՀոգւոց կենդանեացն զանմահից, այսպէս ամ նշոյլք և Ճառագայթք ամ երևելի արարածոցս է՝ լուսաւորացս որ շիջանելոց է . զի ոչ համեմատի և ոչ մնայ . այլ կենդանի և անանց Ճառագայթս արեգականն արդարութեան փառաց զոր զգենլոց են սուրբք յանմահական կեանսն հասարակ Հոգւոց և մարմնոց . որպէս զգեցեալ էք զարեգականն զլոյսն բնականայ տեսանել յարևելից յարևմուտս, որ շիջանելի լոյս է ըստ բանին տն . « Արեգակն և լուսին խաւարեսցին, ասէ, և աստեղք ծածկեսցին, և արդարք փայլեսցեն իբրև զարեգակն յարքայութեան այ » : « Զի յորժամ Քս յայտնեսցի՝ կեանքն ձեր, ասէ Առաքեալ, յայնժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք փառօք » լուցեալք ածային Հրովն 'ի լոյսն անշիջանելի և սուրբ : Եւ յորժամ իւրով լուսովն անշիջանելեաւն զգենուցու զլոյսն արեգականն արդարութեն և փայլելէ 'ի պայծառութն սրբոցն, կայ մնայ միշտ կենդանի և լուսաւորեալ : Ի սրբ սիրոյն երանաւէտեալք և փառօք փառաւորեալ 'ի չափս և յանչափս կատարմանն Քսի, զի ոչ կարէ ասել ոք զայս . զի եղիցի այ ամ յամի : Լի է բարեօք անմահիւք ըստ բանին տն, որ խնդրէ 'ի Հօրէ . զի « Որպէս դու և ես մի եմք, այսպէս հաւատացեալք և սուրբք 'ի մեզ իցեն » : Զի այսպէս սիրեաց այ զմարդիկ, որ և զածութեն զպատիւ և զփառս շնորհեաց մեզ : Արար այ զաշխարհս զայս վասն մարդկան 'ի ծնունդ և 'ի սնունդ և 'ի կեանս իրաւանց և արդարութե . և առաքինութե հանդիսիւք պատուիրանապահութե զայն զանմահ և զանուշակ զածեղէն փառսն շնորհէ, փոփոխելով յանանց բարիսն և յանսպառ ուրախութիւնս :

Նու զայս զոր ասացաք, սուղ ինչ 'ի բիւրաւորացն բարեացն : Որպէս տղայք յորովայնի մարցն ոչ գիտեն յորպիսի հասակս փոփոխելոց են և տեսանել զարարածսն այ և վայելել, սոյնպէս և ոչ մեզ է իմանալ : Այլ ըստ բանի Առաքելոյն որ ասէ . « Փոքր 'ի շատէ գիտեմք և փոքր 'ի շատէ մարգարէանամք . այլ

յորժամ եկեսցէ կատարումն, փոքրիշատէս խափա-
նեսցի ո։ Զի առաւելեալ է յոյժ և անճառ, և ոչ
անմարմնոց է իմանալի, թող թէ մարմնաւորացս զմը-
տաւ ածել և ասել զօք կարասցէ։ Զի որպէս խաւար
'ի լուսոյ փախչի, այսպէս և երկրաւորքս յերկնաւո-
րացն և յանմահից կենացն։ Վասն այսր բարութեց
զամ բարութենն ջանս 'ի մեզ ունելով, և կալ մնալ
'ի մշակութեան հաճոյիցն Աստուծոյ՝ որ աւետեօք
բարեաց լիացեալ է։ Եւ փախիցուք յաղտեղի և 'ի
գարշ ցանկութեց և 'ի չարեաց, որ վշտագինս սպա-
նալեօք է պատուհասն. և զհետ երթիցուք հանդիսի
վերնոցն մաքուր վարուք։ Լինել երախտաւոր եղ-
բարց սիրով յոյժ 'ի պէտս կենաց. մշակել զբարի
զաւանդս 'ի փրկանս հոգւոց և մարմնոց. զի հրաւի-
րեալք և կոչեցեալք իցեմք յորդեգրութենն շնորհս։
Զի բարիս անկեալ 'ի մեզ Աստուծոյ, այլ և զիշխա-
նական կամս, եթէ կամեսցուք միշտ զբարին առնել։
Զի հոգևոր օրէնքն հաստատեսցի 'ի սիրտս մեր,
յոյս, սէր, հաւատ, այլովքն հանդերձ յանձնիշխա-
նական կամս հրեշտակաց և մարդկան։ Որպէս զի
ժառանգորդք լիցուք փառաւորեալ կենացն, և պա-
տուեալ յարարչէն երանութեքն՝ որ անճառելին է։
Եւ ես անձնիշխան արարածոցս երկուս դաս-
տիարակս որպէս որդւոյ, զպառնալիս և զաւետիս.
երկնչել 'ի սպառնալեացն և փախչել 'ի վնասակա-
րացն, և ցանկալ աւետաւոր բարեացն և երթալ
զհետ արդարութե։ Ի ձեռն ճշմարիտ սուրբ գրոց
խրատուց իրաւանց և իշխանութենն հնազանդել
յաղագս բարեձևութենն։ Զի վասն այսորիկ ետ ըզ-
մարգարէս և զառաքեալսն և զհայրապետսն վարդա-
պետս և ուսուցիչս, զի տեղեակ և հմուտ և հա-
սու առնիցեն բարի կամացն Աստուծոյ զմեզ. որ
զամ մարդ կամի՝ զի կեցցեն և 'ի գիտութի ճշմար-
տութե եկեսցեն, և երախտաւոր լեալ գործովք ար-
դարութե Հօրն երկնաւորի և Որդւոյն միածնի և
Հոգւոյն սրբոյ. որ տայ զկենդանութի արարածոց
իւրոց գործակից լինել նոցա բարերար կամացն Աս-
տուծոյ։ Այսու իրաւամբք և՝ արդարութեմբք է ած

եմուծ 'ի ժառանգութիւն աստուածութեան իւրոյ ըստ Առաքելոյ բանին. «Ժառանգք Աստուծոյ և ժառանգակիցք Քրիստոսի: Եթէ նմանակիցս Քրիստոսի լինիցուք, և փառացն կցորդ: Այսպէս մի հեղգասցուք 'ի կեանս մեր. այլ ուշ եդեալ 'ի կէտ կոչմանն անվեհեր փութով ստացուցանել և առնել զկամս նորա. զի մեծ կոչեցաք յարքայութիւն Աստուծոյ:

Իսկ այսու վարդապետեալս, որ արար և ուսոյց ընտրելոց իւրոց 'ի տնօրէնութեան իւրում, զի հայեցեալք յելս գնացից փրկչին մերոյ՝ նմանողք լինիցուք: Եւ մարդասիրութեամբ և առաքելական քարոզութեամբ և հայրապետութեամբքն ծանիցուք զՀայրն ամենակալ և զՈրդին համազօր և զՀոգին համագործ: Եւ ծանիցեն և գիտասցեն և ընդունեսցին հաճոյից արարածքն ուղղափառ հաւատովք. անքակ մնալ 'ի սիրոյ արարչին 'ի նեղութեան և յանդորրու. և արդարացեալք երախտաւորք կամօք բարերարին: Զվաստակս ճգանցն վկայս առնել առ Աստուած, և մտերմութեամբ օրհնել զՏէր զտուողն ամենայն բարեաց, և գոհանալով փառաւորել զնա: Այլ և Տէր ինքնին զիւր երախտիքն վկայ ունի իւր սիրոյն և բարերարութեանցն. զընտրեալսն և զկատարեալսն՝ որ 'ի նոսա զեղուն շնորհքն Աստուծոյ: Այլ և առ երախտացեալսն հոգւով ըղդարձելոցն յապաշխարութիւն խոստովանութեամբք՝ ներէ և խնամէ և բժշկէ ողորմութեամբ, և թողու զմեղս ըստ բազում գթութեան իւրոյ: Իսկ զամբարիշտս և զանիրաւս ամբարտաւանեալս չարութեամբ, որոց խաւարեալ են միտք և օտարացեալք 'ի կենաց սրբոց և արդարոց, և առ նոսա երկայնամիտ է, զի դարձցին 'ի զղջումն: Ապա թէ ոչ այսպէս, բարկութիւն և սրտմտութիւն կայ և մնայ 'ի վերայ նոցա յամենեցունց արարչէն ըստ բանի Առաքելոյն:

Այսպէս են արուեստք կենաց կենարարին և ըստացողին. և դարմանօք սիրոյն իւրոյ խնամէ զարարածս երևելեօք և աներևութիւքն հանապազ: Եւ յօրինէ բարերարութեամբն իւրով 'ի սնուցանել և 'ի դարմանել պէսպէս շնորհօք իւրովք գիտութեամբ և իմաստութեամբ, զի խելամուտս և հնարաւորուեստս արա-

ցէ պահպանութե պատուիրանի իւրոյ։ Եւ զօրութբ իւրով կարող և հաստատուն պահէ. զի զօրացեալք ընդդէմ կացցեն հնարից սատանայի, և անշարժ և հաստատուն կացցեն առ ճշմարտութիւն սիրով. յոր-դորել յառաքինութիւնս լաւութե և 'ի գործս պի-տանութե, որ 'ի փառս պսակէ։ Եւ այսպէս վայե-լեալքս 'ի բարիսն։ Զի վասն կենդանի աւետեաց ե-րանութեն առնուն զառհաւատչեայն ճշմարիտ հա-ւատով և յուսով զհանդերձեալսն ճաշակօք սիրոյն կենդանութե, որ անբաւն է և անքննելին. զի նովաւ 'ի նորա երանութիւնն վայելեսցեն, և ընուն նորա խնդու-թբն 'ի նորա ուրախութիւնն յանճառս։ Զի գթու-թբն իւրով խնամէ 'ի պէտս հոգւոյ և մարմնոյ ըստ մեծի ողորմութեն իւրոյ։ Զի զօրացեալք 'ի շնորհացն և յնծատուր պարգևացն յառողջութե և 'ի խա-ղաղութե վայելեսցեն։

Եւ այսպէս յերկայնամտութեան առ նորոգումն բարւոյն այ վերաբերեալ, յառաջադէմն նկըր-տի յերևելիս և յաներևոյթս. և սրբեալ յաղտոյ 'ի սրբոյն այ, ազատանայ և լուսաւորի 'ի փառս տիրա-կան ազատութբն, և անհպելի լինի թշնամւոյն. և զերծեալ 'ի մահուանէ մեղաց յուսով յարութեն լուսաւորեալ կայ մնայ անբիծ և սուրբ։ Եւ բարձրա-նայ խոնարհութեն փառօք, որովք ամբարտաւանու-թիւն կործանի՝ տեառն յարգանօք։ Զի խոնարհք և հնազանդք և հեզք բարձրանան, և ամբարտաւանք և խիստք և անհաւատք կործանեսցին առաջի աչի տեառն։ Եւ ճշմարտեալքն ամենայն ուղղութբ պսա-կեսցին և փառաւորեսցին յարարչէն յարքայութեն արդարոց։ Զի ամենայն բարբառք աւետեաց զհա-ւատացեալս և զլաւս և զառաքինիս 'ի դրունս ճըշ-մարտութեն հրաւիրեն 'ի նորա յարգանս և 'ի նորա պսակս փառաց վայելեն։ Զի ողորմութբ և գթութբ են խնամք, որք և կատարեալ ապաշխարութբ ըղ-թողութի 'ի միազօր տէրութեն առնուն։

Եւ [1] բարբառք ահաւոր սպառնալեացն զամբա-

1 Սկիզբն ընտիր օրինակին։

բիշտս և զանատակս և զցանկատեքս և զանհնազանդ դըս զանարգելսն 'ի մեզ՝ հրաւիրեն 'ի տանջանս յաւիտենից և յանմահ սատակումն և 'ի դժոխս ։ Զի արհամարհեցին զգութս և զխնամս արարչին, և հեռացեալ օտարացան 'ի սորա ապաշխարութենէն՝ որ սրբէր զնոսա և արդարացուցանէր և մերձաւորս առնէր կենացն անմահից ։ Եւ վասն այսորիկ ընկալցին զամօթն և զանշէջ հուրն զոր պատրաստեալ է սատանայի և դիւաց նորա ։

Եւ այս ամենայն 'ի բարերար կամացն Այ են կարգեալ 'ի պէտս և 'ի խնամս ։ Սուրբ և բարի կողմանն՝ խոստմունք աւետեացն որ 'ի տեառնէ ։ Իսկ չար և անհնազանդ կողմանն՝ զսպառնալիս բարկութեանն և սրտմտութե 'ի ձեռն հրեշտակի չարի զվրէժս ընկալցին ։ Զի թէ կամեցեալ էին, կարող էին զնիւթեալ բարկութիւնն շիջուցանել, և 'ի բաց ջնջել ուղիղ ապաշխարութբ ըստ մեծի ողորմութե արարչին ։ Եւ այսպէս խոստմամբք բարւոյն և սպառնալեօք մատակարարէ առ 'ի յուղղութի ․ զի զամենեսեան կամի՝ զի կեցցեն և արքայութեանն հասցեն ։ Այլ զի որ ընտիրքն իցեն 'ի մեզ՝ երևեսցին, ըստ արդարութե օրինացն կենցաղավարեալք ։ Զի այն որ բարին է բնութբ և իսկութբ յառաջ քան զյաւիտեանս, յորում չիք եկամուտ առ կատարեալ բարերարութիւն, այլ կայ մնայ միշտ բարի ։

Այլ որ ասի զԱյ ցասումն կամ բարկութի կամ սպառնալիք, զօրինացն զիրաւունսն ասէ ․ զի զանիրաւսն և զանզգամսն ածէ յուղղութի սպառնալեօքն՝ որ լին է բարկութբ ։ Զի չիք արատ կամ բիծ առ կատարեալ բարերարութին և քաղցրութին ․ ոչ 'ի նմանէ բուսանի, և ոչ եկամուտ ուստեք լինի 'ի նմա չար ․ զի որ նորայն է, իսկութբ բարի է ․ և չիք 'ի նմա նշխարք չարութե ։ Զի մեղքն մեր ցասուցանեն զԱծ ․ և նա խրատէ զմեզ պատժովք, և 'ի բարկութե զողորմութի յիշելով ․ զի խրատեալք՝ գտցուք զայցելութի յարարչէն ։ Զի արժան է մեզ ատել զմեղս, և սիրել զարդարութի և զբարութի և զճշմարտութի, որ ուրախ առնէ զարարիչն հանդերձ երկնայինն զօրօքն ։

Այս այս իսկ է սիրոյ նորա ցոյցք. որ խնդայ ընդ մարդկան ուղղութիւն և իրաւունս, որք դառնան 'ի չար վարուցն: Զի ինքն կեանք է և կեցուցիչ և սէր ամենայնից պարգևօք իւրովք. զի ոչ ոք կարէ ասել զարժանն զնորա զամենազօր մեծութիւն. ոչ ոք 'ի բիւրաւոր զօրացն երկնաւոր բանակացն, և ոչ 'ի մարդկանէ, յորոց հաճեցաւ օրհնութի առնուլ և երկրպագութի: Զի ամենայն հայհոյութիւնք դիւաց և հեթանոսաց և ամբարշտաց և մեղաւորաց ոչ հալին յանհպելի լոյս ա՟ծութեանն: Եւ ամենայն բանակք բիւրաւորք հրեշտակաց, որ կան յանդադար փառաբանութե, և ընտրեալ 'ի տեառնէ յորդւոց մարդկանէ՝ ոչ կարեն զարժանաւորն օրհնել զա՟ծ: Զի ա՟ծութիւն ոչ յարգի յումեքէ և ոչ անպատուի, զի ոչ փոխի յիւրմէ անտի փառացն. զի կեանք է և լոյս անփոփոխելի, որ ոչ անցանէ:

Բայց զարմանալի այս է, զի վասն առաւել սիրոյն իւրոյ անանուննն յանուն գայ. զի ոչ ոք էր ընդ անսկզբանն՝ որ կոչէր զանուն. այլ ինքն վասն բարերարութեան իւրոյ և բարերար կամաց իւրոց արարիչ արարածոց անուանի: Զի արարիչ և բարերար և լոյս և կեանք 'ի խնամս արարածոց զանուանս ունի. այլ զիւր անուն ինքն միայն գիտէ: Զի 'ի լուսոյ լոյս է անշիջանելի, և 'ի կենդանեաց կեանք, և հուր աննիւթ, և նիւթական հրոյ արարող: Այլ որպէս էրն և է և կայ յաւիտեան, ինքն միայն գիտէ. այլ սիրոյն իւրով յայտնեցաւ արարածոց, և խնամօքն իւրովք ծանուցեալ եղև:

Այլ և զարարածս կոչեաց յիւր բարերարութեան յաշակերտութի զազգ մարդկան. «Նախ զառաքեալըս, ասէ Պաւղոս, ապա զմարգարէս, ապա զվարդապետս» և որ զկնի այսորիկ: Յորս բաժանէ Հոգին սուրբ զշնորհս 'ի գործ կոչմանն որ հրաւիրեացն յարքայութիւն: Յայտնեաց զխնամս տեսչութե իւրոյ սիրոյն. զի լիցուք արդարացեալք 'ի հաւատոց անտի, որով մտանիցեմք 'ի փառաւորեալ ժառանգութիւն ք՟ի ա՟յ: Զի այգի իւր անուանեաց զհաւատացեալս. մշակ զհայրն երկնաւոր. այլ և զառաքեալսն մշակս,

ղով սրբին և ժողովքն 'ի հնծանման յաւիտենից։ Որ յառաջին ժամէն մինչև ցվերջին ժամն գործեցին, և ըստ յօժար կամացն զառաջնոցն առին զվարձս 'ի գետողէն։ Զի որ ոչ նմանեցին այ սիրոյն' որ ծագէ զարեգակն չարեաց և բարեաց, այլ խանտացան [1], ոչ որպէս զորդիս այ առին զվարձս։ Այլ սուրբքս ամենայն գործեցին զարդարութի և զհոգևոր մշակութին, և հասին աւետեացն' որ 'ի քս յս' ճշմարիտ քարոզութեան, որ 'ի փառս ամենասուրբ Երրորդութե։ Եւ լցին զտիեզերս կենաց բանիւն, և ջրովն և Հոգւովըն վերստին նորոգեցին զհաւատացեալս։ Այլ և խոստովանութբ և ապաշխարութբ զփրկութի քարոզեցին 'ի ձեռն շնորհաց Որդւոյն այ։

Օ ի Հայր է բնութեամբ միածնի Որդւոյ իւրոյ․ և 'ի կենաց կեանք, և 'ի լուսոյ լոյս, և 'ի բարւոյ բարի։ Այլ և մեզ ըստ շնորհի հայր անուանեալ, և լոյս' որ լուսաւորէ զմեզ հաւատովն, և կեանք' որ կենագործէ զմեզ։ Որպէս առ մարդիկ այս յօրինակ ճշմարտութեն երևի․ ոմանց բնութբ, և կիսոց խնամածութբ որոց հայր։ Այսպէս զմեզ մերձաւորս առնէ, այլ և նմանողս արարչական խնամածութեն, զմոլորեալս դարձուցանել յածգիտութի շնորհօք բարերարի Հօրն։ Այլ և բարերարութեցն նման նմա գթասիրութբն լինել։ Առ մեղուցեալսն ուսուցանէ, զի մի խաղաղ կորիցեն․ այլ խորագիտութբ ածել յուղղութի ածային օրինօքն, առ ուսանել գիտել ճանաչել զիմաստութի և զխրատ, և ուղղել զթիւրեալսն նշանօք և արուեստիւք։ Զաշակերտեալսն հաստատել 'ի հաւատս, և անշարժ մնալ 'ի ճշմարտութեն համբերութբ բազմաւ յամենայն փորձութիս։ Եւ ըստ օրինակի տեառն սիրոյն յորդորել 'ի նորա կոչման սէր․ գթութբ խնամ ածել և դարմանել․ բառնալ զբեռինս և զկարիս բազմաց, և կոչել առ շնորհս աւազանին և ապաշխարութե։ Եւ երկայնամտութբ և հանճարով զամենեսեան որսալ հոգևոր ուռկանաւ առ բարեպաշտութիւ։ Եւ լուսաւորել ըղ-

1 Միւս օրինակն խոտորեցան։

խաւարեալն միտօք և անիրաւութ՟ք. սրբել մաքրել
և ազատել 'ի ծառայութ՟է սատանայի, և նորոգել
զնորին՝ որ ըստ ա՟յն է՝ լուսաւորութ՟ն արդարութիւն
և ճշմարտութ՟ն, և մերկանալ զհին մարդն գոր-
ծովքն իւրովք չարեօք. որպէս զի արժանի լինիցին
պսակացն և փառացն:

Զայս արուեստ 'ի Հօրէ և յՈրդւոյ և 'ի Հոգւոյն
սրբոյ ուսեալք, որ միշտ գործակից առնէ իւր բարե-
րար կամացն ըստ ճշմարտութ՟ե աւանդից. որ զժո-
ղովուրդս հաւատով անվրէպ մերձ կացուցանէ յօ-
թեանս սրբոց: Եւ այսպէս աշակերտեալք յընտրու՟է
օրհնացն 'ի հաւատս և 'ի յոյս և 'ի սէր արդարութ՟ե
ըստ հանդիսից առաքինեացն և ճշմարիտ առաքե-
լոցն և մարգարէից և ուղղափառ վարդապետացն, և
որք 'ի նոցանէ ուսան վկայք զհամբերութ՟ի 'ի տան-
ջանս. խոստովանողք զժուժկալութ՟ի, ճգնաւոր կու-
սանք զսրբութ՟ի և զառաքինութ՟ի, ապաշխարողք
զթողութ՟ի: Եւ այսու ամենայնիւ ընտրեաց 'ի մարդ-
կանէ իւր ժողովուրդ ա՟ծ նախանձաւոր լինել 'ի
գործս բարութ՟ե, և առնուլ զպսակս անեղծութեան
յիւրմէ բարերարութ՟էն: Զի սիրեցին զարարիչն և
սիրեցան 'ի նմանէ. և շնորհօք իւրովք փառաւորս և
անուանիս արար յերկրի և յերկինս. որ կայ մնայ միշտ:

Զի թէ ոչ էր լեալ ընտրութ՟իք 'ի տեառնէ ըստ
արդարութ՟ե օրինացն, ոչ երբեք լինէր առաքինու-
թեցն մտերմութ՟իք և քաջութ՟իք, և խափանեալ
լինէր հանդէսք նահատակացն՝ որ յերանելի կեանս
տանի, և զրկեալք 'ի կենդանի երանութեցն ժառան-
գութ՟էն սուրբք, նա և զօրք հոգեղինացն որք կային
'ի սէրն ա՟յ: Զի որք յարարչին խնամոցն վրիպեցան,
ընդունին զպատիժս յահեղ դատաւորէն՝ որ ըստ ար-
ժանեացն հատուցանէ. զի երթիցեն արդարքն 'ի
կեանսն յաւիտենից, և մեղաւորքն 'ի տանջանսն
յաւիտենից: Երկաքանչիւրոցն ա՟ծային բանն յայտ
առնէ. «Եկայք, ասէ, օրհնեալք Հօր իմոյ. ժառան-
գեցէք զարքայութիւն ա՟յ». և «Երթայք յինէն, ա-
նիծեալք, 'ի հուրն յաւիտենից, զոր պատրաստեալ
է սատանայի և հրեշտակաց նորա»: Զի նախ յար-

դարէ և կոչէ 'ի բարի գործս. «Եկայք, ասէ, առ իս ամենայն վաստակեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ. առէք զլուծ իմ 'ի ձեզ, և ուսարուք յինէն զհեզութիւն և զխոնարհութիւն, և գտջիք հանգիստ անձանց ձերոց»: Եւ Առաքեալն ասէ. «Նմանեցէք ա̃յ որպէս որդիք սիրելիք, և գնացէք սիրով. որպէս և Քս̃ սիրեաց զմեզ, և զանձն իւր մատնեաց վասն ձեր պատարագ ա̃յ»:

Զի Որդին ա̃յ զորդիս մարդկան իւր ժառանգորդըս արար, և սփռեաց 'ի մեզ զշնորհս Հոգւոյն սրբոյ առատաբար: Զի բարերար բարբառովն կոչեաց յապաշխարութիւն զմեղաւորս խոստովանութ̃բ, և 'ի հնազանդութիւն աւետարանին կենաց. զի նորոգեսցէ զհաւատացեալսն լուսաւոր աւազանաւն յորդեգրութիւն իւրում Հօրն: Որ բնութ̃բ է Որդի, զի շնորհօք արար զմեզ եղբարս իւր: Եւ զարատ և զբիծ մեղացն լուծանէ զնորածնելոցս աւազանաւն 'ի Հոգւոյն, և ազատէ 'ի ծառայութենէ չարին: Զի որք 'ի Քս̃ Յս̃ մկրտեցան, զՔս̃ զգեցան, արու և էգ. եթէ հրէայ իցէ և եթէ հեթանոս, եթէ ծառայ իցէ և եթէ ազատ, ամենեքին մի են շնորհօք որդիք ա̃յ և ժառանգակիցք Քս̃ի: Որք իջին յարգանդ հոգեւոր աւազանին պարգեւօք ամենասուրբ Երրորդութեան. օրհնութ̃բք և քահանայական խորհրդածութ̃բք, օծմամբ և Հոգւով 'ի Քս̃ լուսաւորեալ՝ ըստ բանին տեառն, առէք զՀոգին սուրբ՝ յորդեգրութիւն Հօրն Քս̃ի: Զի նովաւ ունին իշխանութիւն քահանայք կապելոյ և արձակելոյ. զի զմկրտեալսն հրաժարեցուցանեն 'ի սատանայէ և մեռանել զմեղացն մահ, զի մի ևս այլ մեղօք կեցցեն յերկրի: Զի որպէս մեռեալն լռէ յամենայն արուեստից, նոյնպէս և մկրըտեալն եղիցի մեռեալ մեղաց և կենդանի արդարութեան. զի զկերպարանս Քս̃ի 'ի շնորհաց սուրբ Երրորդութեան առնու. յայնմ հետէ զվերինն խորհել ըստ ճշմարտութեան աւետարանին քարոզութեան, և հաճոյից անմահ թագաւորին. արդար և ճշմարիտ և սուրբ վարիւք հաստանել յօթևանս կենացն անմահից որ 'ի Քս̃ Յս̃: Զի այսպէս է վերստին ծնունդ հոգեւոր աւա-

զանելին, որ զախտաւոր ծնունդն վերստին ստանայ առանց ախտի շնորհօք և մարդասիրութք ամենասուրբ Երրորդութեն։ Որք ոչ յարենէ և ոչ 'ի կամաց առն, այլ յայ ծնեալ առ հաւատչեայ 'ի ժառանգութիւն քնի։ Զի այսպէս ծնեալքն որդիք այ 'ի կերպարանս Որդւոյն այ, և լինին քաղաքք ճշմարտութեն 'ի նեղութե և յանդորրու. և անսասանելի կան 'ի սէրն այ ուղիղ սրտիւ և ուղղափառ խոստովանութք. և որդիք կենարար Հօրն ընծայլին երկնաւորին անճառ շնորհօք։ Եւ յայնժամ հետևէ զգործ այ գործեն և զկամս նորա արասցեն ըստ երախտեաց բարերարին, և կցորդակից լինելին զօրաց երկնաւորաց առ սպասաւորութե մարդկան շնորհօք արարչին, այնոցիկ՝ որ ժառանգելոց են ըզփրկութի յաւիտենից, որ 'ի քն։

Եւ որպէս Որդին այ եղև որդի մարդոյ և զգեցաւ զմեր բնութիւս և կատարեաց զարդարութիւս ամենայն հոգւով և մարմնով, այսպէս և մեք զգեցցուք զուղղութի և կատարեսցուք զամենայն արդարութիւս 'ի քն. զի որդիք այ լիցուք, և ածք սիրով։ Զի մարմնացաւ Որդին այ կամօք, և յանձն էառ զամենայն կարիս մարդկային բնութեւս մերոյ բայց 'ի մեղաց։ Սոյնպէս և մեզ լիցի ածեղէն զօրութբն ընդ ամենայն կիրս անցանել առանց յանցման. զի կարող լիցուք հասանել 'ի չափ հասակի կատարմանն քնի. և այնպէս ճշմարտեալ 'ի կերպարանս այ, ժառանգեսցուք զարքայութիւն քնի։ Եւ պիտոյ է միշտ գաստիարակութե աւետարանին, որ հրահանգէ զմեզ 'ի լաւութե կարգս. զի յանձանձեալ 'ի շնորհաց Հոգւոյն սրբոյ ճշմարտութբ անձեցուսցուք զմտաւորս արդարութե սուրբ սրտիւ և ուղղափառ հաւատով յած։ Եւ 'ի տեսչութենէ նախախնամական սիրոյն այ արթունք և զուարթունք եղիցուք 'ի պատրանաց բանսարկուին միշտ. և հաստատուն յուսով և առաքինութբ, սուրբ վարուք, մաքուր հոգւով և մարմնով հասանել 'ի նաւահանգիստն խաղաղութե յաւիտենական կենանն, յանպատում կայեանսն, որ պատրաստեցաւ սրբոցն յանճառ սիրոյն այ։ Եւ որպէս արեգակնս այս որ լուսաւորէ զերկիր և որ 'ի նմա են

տարածք՝ որ երևելիքեն ծովու և ցամաքի, այսպէս հաւատոյ ճշմարտութեան բան և սրբութի լուսաւորէ զմիտս ցանկացողաց այ։ Եւ անձնիշխան կամօք երկնաւորք և երկրաւորք, մարդիկ և հրեշտակք, ճշմարտութեան վարդապետք եղեն 'ի շնորհաց սուրբ Հոգւոյն՝ ստոյգ գիտութե և անմոլար իմաստութե ըստ արդարութեան օրինացն։ Եւ այնպէս առաջնորդեալ լուսով Երրորդութեան ստոյգ պատմութիւնք արարչական էութեք՝ լցին զերկինս և զերկիր ճառագայթիւք որպէս զարեգականս լոյս 'ի կեանս և 'ի փառս երկնաւորաց և երկրաւորացս։ Իսկ սատանայ որ ածանալն կամեցաւ, տեսեալ զինքն 'ի պայծառութեան, և ամպարհաւաճեալ՝ որպէս կարծէր՝ վրիպեցաւ 'ի փառացն, և 'ի վայր կործանեցաւ 'ի պատուոյն, և զմարդիկ որսաց 'ի կորուստ, և մինչև յաւուրն ատերուբեալ հոգւով մոլութե ընկեց 'ի սիրոյն այ 'ի պէսպէս ցանկութիւս[1] ամպարշտութե։

Բայց թէ ասիցէ ոք, որպէս ներեաց ած սատանայի այնքան տարածել զմոլորութեան զանօրէնութիւս՝ իմացիր. զի իշխանական կամս է հրեշտակաց և մարդկան որ յայ պատուեալ[2]. զի որ ընտիրքն իցեն՝ երեւեսցին 'ի նոսա, և ըստ արժանեացն ընկալցին զհատուցումն 'ի դէպ ժամանակի զփառս և զտանջանս յարարչէն ամենայն արարածոց։ Զի որպէս մահ թագաւորեաց 'ի ձեռն յանցուածոցն Ադամայ, այսպէս և սատանայ 'ի վերայ մեղաւորաց տիրեալ։ «Զի սիրեցին, ասէ, մարդիկ զմոլորութի. վասն այսորիկ առաքեաց նոցա ած ազդեցութի մոլորութե, զի դատապարտեսցին. զի հաճեցան ընդ չարն»։

Սակայն ոչ իսպառ եթող զարարածս 'ի նախախնամական սիրոյ իւրոյ. այլ գալստեամբ Որդւոյն իւրոյ՝ որ եկն յաշխարհ փրկել զմեղաւորս 'ի ծառայութենէ սատանայի, հաւատովք յազատութի փառաց Որդւոյն այ. զի լուծաւ բռնութի նորա յորդւոց 'ի մարդկանէ, որ տիրէր մեղօք, յերևել փրկչին։ Եւ շնորհօք թագաւորեսցեն հաւատովք՝ որ 'ի սուրբ

1 Ծիւան յանտառոչութիւնս։ 2 Ծիւան պատրաստեալ։

Երրորդութեան․ և գտեալք զմիութիւն լուսաւորաւազանեան և մարմնով և արեամբն Քրիստոսի, ընդունելութեամբ Հոգւոյն սրբոյ՝ որ աղբիւրաբար բաշխեաց զշնորհս յարարածս։ Զի արդարացեալք ՚ի հաւատոց անտի, զխաղաղութիւն կալցուք առ Աստուած ՚ի ձեռն Յիսուսի Քրիստոսի առհաւատչեայ ժառանգութեան․ զի նորոգեսցի փառս անեղծութեան կամաւոր խաչելութեամբ իւրով։ Եւ մահուամբ եղծ զմահ, և յարութեամբն իւրով զմեզ ՚ի մեռելութենէ մեղացն յարոյց․ զի մեք ՚ի նորոգութեան կենաց կացցուք և մնասցուք յուսով յարութեանն ՚ի փառս ամենասուրբ Երրորդութեանն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից․ ամէն։

## ՄԻՏՔ ՀԱՒԱՏՈՑ

## ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

### Գ

ՃՇՄԱՐՏՈՒԹԻՒՆ հաւատոյ լոյս է աչաց մտացն, շարժմանցն խորհրդոց յիշատակացն, զգացեալ ընդ լուսն գիտութե՛ և զիմաստութե՛ շնորհաց Հոգւոյն սրբոյ։ Որ զառաջնորդական միտսն լուսաւորէ, և գրովք սրբովք յանդիման կացուցանէ զաներևոյթսն, որպէս տեսիլս աչաց զարեգական լոյս և զայլ ևս լոյսս․ այսպէս երևութանայ ա՟ծային տէրութեանցն մեծութիւնք անքննինք։ Զի աննման և անհամեմատ է, անպատում և անսահման, անհաս և անքաւ․ այլ հաւատով տեսանի և իմանի և օրհնի յարարածոց աներկբայ հաւատով 'ի նեղութե՛ և յանդորրու․ և զօրացեալ հաւատով՛ որ 'ի սուրբ Երրորդութի՛ն, կայ և մնայ անսասանելի առ մարտակից հաւատոցն։ Զի լուսաւորեալք ուղիղ հաւատովք յանսկիզբն էութի՛ն, 'ի մշտնջենաւոր լոյսն, 'ի կենդանարար կենդանութի՛ն, յանփոփոխ ճշմարտութի՛ն, մի՛ ևս խոտորեսցուք յունայնաբանութի՛ս՝ որ 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին հայհոյութիւնք։

ՆԱխ զգրաւական աւետեացն շնորհաց մի՛ իւիք թողցուք, զի հասցուք խոստացեալ երանութեանցն և անմահութեանց և անեղծութեանց։ Եւ զդարմանս սիրոյ բարերարութե՛ն միշտ ընկալցուք զտէրութե՛ն․ և զարքայութե՛ յոյսն 'ի սիրտս մեր հանապազ ունել, և զկենդանարար շնորհացն զպարգևսն ոչ մոռանալ որ 'ի տեառնէ․ և զխնամակալութի՛ն՝ մերոյ անգիտութե՛ս և տկարութե՛ս օգնական ունել ընդդէմ հնարից սատանայի, որ յամենայն ժամ է թշնամի։ Եւ զօրացեալ 'ի կենաց առաջնորդէն 'ի խրատուց, ըստ աճման հաւատոց 'ի կատարումն առաքինութե՛ եկեղե-

ցուք ։ Եւ յամենայն վարս զխրատ սրբոցն 'ի միտս ունել յերեւելիս և յաներեւոյթս ․ և այնպէս ծանիցես զճշմարտութիւն ։ Վասն զի ոչ 'ի քէն բաւես հասու լինել ածային մեծութեն փառացն, նա և ոչ հոգեղինացն զունդք հրեշտակաց, սերովբէիցն և քերովբէիցն ․ և ամենայն երկնաւոր զաւրութիւնքն անհաս են ածային փառացն ։

Մովսէս միջնորդ ծառայն այ զէութիւնն քարոզեաց մեզ, ոչ յինքենէ, այլ 'ի նորին իսկ յայ ։ «Ես եմ, ասէ, ած՝ որ էն »։ Եւ այսպէս սփռեաց յարարածս զլոյս ածային էութեն ․ զի անմոլար գիտութեն խոստովանեսցին զանբաւ մեծութի փառացն, զանծին իսկութիւն և զանսկիզբն էութեն ճշմարտութիւն, զանփոփոխ միշտնջենաւորութիւն և զանհաս և զանվրէպ զիմաստութիւն, զորս քարոզեցին օրէնսդիրք և օրինապահք ըստ իւրաքանչիւր շնորհի ։ Զի զդժընդակ և զաղտեղի և զխաւարակար ապերախտին խորլեացէ, և զլուսաւոր և զշահաւոր և զօգտակար զերախտին յորդորեսցէ մինչև 'ի վախճան ժամանակաց ։ Եւ այնու փառաւորեցան և պատուեցան արբանեակք բարերարին ։ Զի յորժամ առաքէր ած զՄովսէս առ ապերախտ ժողովուրդն, եցոյց զինքնմեզ իւրոց զքաղցրութե ․ զի ասէ ․ «Գթած եմ ես և ողորմած, երկայնամիտ և բազումողորմ, և զղջանամ 'ի վերայ արարածոց »։ Զի այսպէս ուղղեսցէ զվրիպեալսն 'ի շնորհէն, և նորոգեսցէ վերստին ամենակալ զօրութեն և ամենատես պարգևատու սիրովն ․ որ կոչեցան[1] յորդէգրութե շնորհ ։ Եւ այսպիսեօք ազատ առաքինութե յանարատ սրբութիւնն փափագանօք միացուցանէ լուսաւորս յաշխարհիս ամենասուրբ Երրորդութիւն, և յորդէգրութի կարգէ անփոփոխ ճշմարտութեն ։ Զի տէրն է այսոցիկ արուեստից արուեստաւոր ․ աշակերտս ստանալ և նահատակս առաքինիս և ճշմարտութե գործակիցս յիւրոց արարածոց ․ զի այս տեսուչք հոգւոց և մարմնոց լինիցին 'ի տէրն այ հեռաւորաց և մերձաւորաց ։

1 Միւսն կոչեցին ։

Արդ հաւատովք ճշմարտութեան և առաքինութեան հանդիսիւքն, արդարութեամբ և սրբութեամբ լցեալք հաստատեալք յաներևոյթ մեծութեան 'ի փառսն՝ որ անքննելին է և անպատում ըստ աւետեացն անսպառ և անճառ փառաւորութեանն։ Եւ անզեղջ սրտիւ և ճշմարիտ խոստովանութեամբ օրհնել զանքննելին արարիչն, և անշարժ մնալ 'ի յոյսն կենդանի և հանգստարար հանգիստն որպէս երևմամբք լինել. զոր ակն ոչ ետես, և ունկն ոչ լուաւ, և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց ած սիրելեաց իւրոց։ Զի անճառ է բարութիւքն զոր վայելեն սուրբքն բորբոքմամբ խնամոց և կենդանարար սիրոյն այ։

Ի վերայ այսր ամենայնի գոհանալ պարտիմք միշտ զարարչական խնամոցն, որ արժանիս արար այսքան բարեաց երևելեօք և աներևութիւք։ Եւ օրհնելով օրհնեսցուք զանմահ տէրութիւն 'ի տուէ և 'ի գիշերի անմեղկելի սիրով, մտերիմ կամօք և անսարատ սրբութեամբ. անմոռաց յիշատակօք զխնամս սրբութեան 'ի մտի ունել 'ի գովեստ փառացն այ՝ վկայութեամբ հաճոյից նորա։ Զի որպէս ճառագայթք արեգական յառաջ ընթանան և զկնի ծաւալին, այսպէս յառաջ ճշմարտութեան էութեանն, անփոփոխ իսկութեանն, որ անհաս է քան զմիտս և զխորհուրդս. որ պատմի նախ քան զարարածս և յետոյ քան զյաւիտեանս յաւիտենից. որ 'ի վերոյ քան զերկինս երկնից և 'ի խոնարհ քան զանդունդս ծովու. որ յանբաւութեան կայ և մնայ։ Զմիոյ անսկզբան էութեան բարերար կամացն ունին զայցելութիւն յարարչէն արարածք. զի այնպէս անհասանելի է և անկշիռ, անբաւ և յստակ աղբիւր, և ամենազօր և ամենակալ։ Կեանք է և կեցուցիչ, լոյս մշտնջենաւոր, ահեղ, հզօր, ամենիմաստ և յառաջագէտ, բարերար և տուող բարեաց, գթած և ողորմած, ներող և երկայնամիտ, սուրբ սրբոց և մաքրութիւն ամենայն արարածոց։ Զի եթէ բիւրաւոր զօրք անմարմնոցն և լուսաւորք երկնից և որ երևին և որ ոչն երևին և որդիք մարդկան և որ 'ի յերկրի են և 'ի ծովու անբաւ կենդանիք և որ այլ են 'ի նոսա անշունչք արարածք 'ի լեզուս գայցեն, բան գովութեան

ոչ բաւեն ըստ նորա մեծութեան փառացն գովութիւն մատուցանել զարժանն իւր ։

Արդ որ այնքան անհունն է մեծութեամբ փառօք, և բարձրագոյն քան զամենայն իմանալիս և տեսանելիս, այլ խոնարհի յարարածս, և իմանի և տեսանի ըստ մերում զօրութեան և խնամոց իւրոց ։ Եւ հրեշտակք որ քան զմիտս մարդկան սրագոյնք են, ոչ բաւեն հասու լինել մասին, զիարդ կարասցուք մեք երկրաւորքս հասու լինել փառացն ։ «Զի ոչ ոք գիտէ, ասէ, զՀայր, բայց Որդի ․ և ոչ զՈրդի և զՀոգի, եթէ ոչ Հայր» ։

Իսկ խնամք բարերար կամաց սիրոյն Աստուծոյ բազմարուեստ դարմանօք, որ յանսկզբն էութեան և յանփոփոխ միշտնջենաւորութեան, անօրինակ յարարածս 'ի հովուել և 'ի խնամել, ամենասուրբ Երրորդութիւն՝ որ լին է ամենարուեստ բարուք ։ Զի բազմառատ շնորհօք իւրովք և կենարար առաքինի ընտրեալ առաքինութեան յերանելի հանգիստն ժողովէ և փառօք պսակէ 'ի միշտնջենաւոր և յանուշակ պարգևսն ։ Զի վասն այսորիկ ստեղծ արարիչն զզօրս հրեշտակաց և զմարդիկ յանձնիշխան կամս, զի ընտրութեամբ հոգեւոր օրինացն փոխարինութիւն առցեն ․ 'ի փոքրկութենէ ըզմեծութիւն, յանարգութենէ զպատիւ, յապականութենէ զանապականութիւն, 'ի մահկանացուացս[1] զանմահութիւն աստուածութեան՝ որ 'ի Քրիստոս Յիսուս ։ Ուր չիք փոփոխումն ժամանակաց և հանումն բարեաց տուելոց յարքայութեան Աստուծոյ ։ Միշտ 'ի միշտնջենաւոր երանութիւնս վայելել 'ի փառս ամենասուրբ Երրորդութեան Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից ․ ամէն ։

1 Յերկոսին օրինակսն 'ի մահկանացուացս ։

# ՑԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆ ՄՈԼԱՐ ՄՏԱՑ ԵՒ ԸՆԾԱՅՈՒԹԻՒՆ ԱՍՏՈՒԱԾԳԱՇՏՈՒԹԵԱՆ

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

### Դ.

Ով անհամեմատ ամենակալ[1] ամենասուրբ Երրորդութիւն է. և յանսկիզբն էութեան և 'ի մշտընջենաւորութեան հաստատեցան քո արարածք երևելիք և աներևոյթք: Երկինք և երկիր և քո որ 'ի նոսա, 'ի միոյ արարչէն արարան ամենակարող զօրութեամբ, ամենալոյս լուսովն և կենդանարար տերամբն. զի լի են արարածք քո փառօք նորա: Որ ամենիմաստ և ամենագէտ և ամենատես բարերար կամօքն իւրովք խնամէ զարարածս իւր, զոր յոչընչէ և 'ի չգոյէ գոյացոյց. զհոգևորս և զմարմնաւորս, զշնչաւորս և զանշունչս: Եւ զտարերս քո չորիւք յեղանակօք յարդարեաց, բարձրութեամբ և խորութեամբ, լայնութեամբ և երկայնութեամբ: Եւ զորս արար կենդանիս և անմահս, մտաւորս և բանաւորս. որ են գունդք հրեշտակաց և երկնաւոր զօրք, որ կարգեալ են 'ի պատիւ և 'ի պաշտօն և յանդադար փառաբանութեան ամենազօր տէրութեան: Կացոյց և լուսաւորս յերկինս յառաջնորդութիւն և 'ի փոփոխումն աւուրց և ժամանակաց, 'ի սընունդ մարդկան և քո կենդանեաց և բուսոց և տընկոց: Նա և զհուր և զջուր, զամպս և զհողմս յարդարեաց 'ի պէտս ազգի ազգի բուսոց և տնկոց, որ 'ի պէտս մարդկան արարան իւրաքանչիւր: Եւ որ 'ի ջուրս են զողակք[2] և ձկունք. ազգք զազանաց պէսպէս բնութեամբք և զանազան կերպարանօք 'ի ծովու և 'ի ցա-

1 Մերն հաստող:    2 Մեւան բաղադիւնք:

մաքի, մեծամեծք և փոքունք, քաղցունք և դառինք, շայեկանք և անշահք։ Նմանապէս 'ի տունկս և 'ի բոյսս որ 'ի պէտս արարան մարդկան, և ոչ արարչին։ Արար և ոսկի և արծաթ և պղինձ և երկաթ, և պատուական քարինք և անարգք 'ի պէտս մարդկան 'ի վկայութիւն մեծին այ արարման։ Եւ 'ի չորից նիւթոց զերեւելիսս եցոյց. խոնաւ և ցամաք, ցուրտ և ջերմ յայ կազմեցան։

Եւ 'ի նոյն նիւթոյ արարեալ զմարդն, և ընչեաց 'ի նա հոգի կենդանի և անմահ, մտաւոր և բանաւոր։ Եւ խառնեաց զհոգևորն ընդ մարմնաւորն. զի զհանդէս իւրոյ մտերմութեան ցուցցէ առ արարիչն. ժուժկալեալ հոգևոր սիրով պահիցէ զպատուիրանն անհիւտեառն. զի հաճոյացեալ այ՝ ժառանգորդ լիցի անվախճան երանութեանցն. զի «Արար, ասէ, զմարդն 'ի պատկեր իւր, և տէր ամի կացոյց զնա, և ըստ պատկերի իւրոյ արար զնա». որ ըստ Քնի մարմնանալոյն է իմանալ։ Եւ անձնիշխան կամօք մեծարեաց զմարդիկ որպէս զհրեշտակս, և ելից իմաստութեամբ և գիտութեամբ, և տեղեակ ամ հանդամանց և խրատու հոգևորաց առ 'ի հաճոյս տէրութեան իւրոյ. զի լիցի տեսուչ արարչին արարածոց ըստ պատուիրանի նորա։ Եւ զամ տարերս 'ի գործ արկցէ արուեստիւ հանճարոյն մարդոյ առ 'ի շինութիւն աշխարհի ըստ գաւառաց և քաղաքաց։ Այլ և կահս և կազմուածս և անօթս ըստ արուեստիցն կազմեսցէ առ 'ի պէտս վարուց աշխարհիս, որով պէտք անօրինին։

Եւ չնչաւորաց անասնոց և գազանաց և թռչնոց ետ բարս և ուշ առ 'ի պէտս։ Որոց ուշն զբարսն շարժէ առ 'ի ներգործութիւն. և բարուց նոցա վարդապետ զմիտս մարդկան առ 'ի պէտս իւրաքանչիւրոցն և 'ի մերոյ սպասաւորութեանս։ Եւ 'ի նոսին են մանունք և մեծամեծք, անարգք և շայեկանք, պիտանիք և անպիտանք, զազիրք և գեղեցիկք. զի երևեսցի լաւն 'ի վատթարէն և անարգն 'ի պատուականէն։ Որպէս 'ի խաւարի լոյս երևի, և 'ի գազանաց գգօնն, և 'ի թիւնաւորաց անմեղանչականն, և յանշայեկանէն շայեկանն, նոյնպէս է և 'ի տունկս և 'ի բոյսս, այ-

լադայք[1] և հոտովք և համովք, քաղցր և դառն, անոյշ և անհամ. զի երևեսցի լաւն 'ի վատթարէն, որ առ դարմանս և առ բժշկութիւնս կարգեցան ըստ ներգործութ՟են ո՟յ: Եւ են որ անծանօթք են, և են որ ծանուցեալք ըստ տեղեաց տեղեաց. Է ինչ և 'ի տողունս՝ իրաց ինչ 'ի պէտս. որպէս յօձիցն առէ ըղթերակէն:

Զի այսպէս յօրինեալ արարչէն զնախախնամութիւն յարարածս իւր, որ երևին և որ ոչն երևին, այսր ա՟մի տ՟ր և իշխան և ժառանգաւոր արար զմարդն երևելեացս արուեստաւոր մտօք: Զի յոչընչէ արար զամենայնս և թագաւոր կացոյց զմարդն և մեծարեաց. զի նովաւ ծանիցի արարողն և փառաւոր լիցի միշտ. և մարդն ծանիցէ զինքեան զպատիւն որ յանպատուութ՟է 'ի պատիւ վերաբերեաց յա՟մ արարածոց: Որ արուեստաւոր խելամտութ՟բ որ յարարչէն՝ կարասցէ 'ի գործ արկանել զշնչաւորս և զանշունչս. զի երևեսցի գործ իմաստութ՟ե ըստ ա՟մի որք ընդ հնազանդութ՟բ են անկեալք 'ի տեառնէ 'ի գործ պիտոյից, և կամ առ շինութ՟ի և 'ի զարդ, կամ առ այլ ինչ փարթամութ՟ես: Ցայսոսիկ վայելելով իշխանական ճոխութ՟բն՝ փառաւորեսցէ միշտ զբարեգործողն: Զի այսքան պատիւ տուաւ մարմնաւորացս որպէս և հոգեղինացն և անմարմնոցն և անմահիցն. և արար ընտրողս և գովողս արարչութեան, որ միշտ օրհնեսցեն զնա 'ի ձեռն օրինաց եղելոց. զի իւրեանց իշխանական կամօքն հաստատեսցին 'ի հաւատս ճշմարտութեանն, և ընտրեսցեն զարարիչն և զարարածս 'ի միմեանց, զդարմանիչն և զդարմանաւորսն, զկեցուցիչն ա՟մ կենդանեաց. որով լնու զպէտս պիտոյից ա՟մ արարածոց:

Եւ զի արժան է յա՟մ ժամ կարդալ առ նա, և խնդրել զայցելութիւն հոգևորաց և մարմնաւորաց, և գործակից լինել բարերար կամաց նորա, և անվընաս մնալ առ երախտաւորն ա՟ծ: Եւ այսու օրինակաւ փոխել 'ի վատթարէն 'ի լաւն, յանարգանացն 'ի պա-

1 Այդպէս յերկոսին օրինակսն:

տիւ, 'ի ծառայութենէ յազատութիւն Որդւոյն ա̃յ, և յընդանութիւն ճշմարիտ հաւատոցն՝ որ'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ. ժառանգաւոր լինել երկնից արքայութեան և անվախճան երանութեացն: Զի նա է արարիչ ա̃մի, որ արար զպաշտօնեայս իւր հոգիս և 'ի բոց հրոյ, զվերին զօրսն: Եւ զմարդիկ յերկրէ ստեղծեալ, անտաստին և զկեանսն ունի դարմանօք: Որք և 'ի հրեշտակաց դաստիարակեն 'ի հոգեղինացն վարս ըստ նախախնամութեան ա̃յ, որ զօրէնսն յօդնականութիւն ետ, որ 'ի հրեշտակաց քարոզեցաւ:

Այլ և 'ի մարդկանէ հաճեցաւ ա̃ծ քարոզ լինել ճշմարիտ աւանդիցն. որք հաւատարիմ գտան առ պատուիրանս նորա և հաճոյացան ա̃յ, և զբազումս 'ի մարդկանէ դարձուցին յա̃ծգիտութիւն և յուղղութիւն ըստ կամաց արարողին կենաց: Եւ որք արհամարհոտք գտանին ա̃յ և նանրացեալ 'ի խորհուրդս իւրեանց և խաւարեալ անմտութեամբ սիրտք նոցա, որպէս ասաց Առաքեալ, զրկեցան յամենառատ բարերարութեացն: Զի ոչ միայն զխնամս արարչին արգելին իւրեանց անհնազանդ բարուքն և յետսընդդէմ գնացիւքն, այլ և զբարկութիւն ա̃յ յինքեանս շարժեցին յարդար և 'ի մարդասէր դատաւորէն: Որ անկան 'ի փառաց և 'ի պատուոյ, 'ի նախախնամութենէ բարերար կամացն, և 'ի հրեշտակաց դաստիարակութենէ՝ որ զօրավիգն էին:

Այլ որք մտերմութ̃բ կացին մնացին համբերութ̃բ յա̃մ նեղութիւնս, 'ի նորին խնամսն վայելեն աստ և 'ի հանդերձելումն: Եւ որք մոլորեցան 'ի ճշմարտութենէ անտի, բարկութիւն ա̃յ կայ մնայ 'ի վերայ նոցա: Զի զտարերս ա̃մ աստուածս արարին, զշնչաւորս և զանշունչս, զջուր և զհուր: Զի ջուրն 'ի պէտս կենդանեաց արարան յա̃յ, որ արբուցանեն զերկիր. և դարձեալ ապականին նեխելով և նուազելով: Եւ հուր առ 'ի պէտս մեր արարաւ, որ դարմանօք վառի և սպասաւորէ մեզ. և 'ի պակասել կերոյն[1], շիջանի և ապականի: Նոյնպէս և հողմք և ամպք 'ի պէտս են այլ

1 Միւս օրինակն կերակրոյն:

արարածոց արարան, և ոչ ինքեանք եղեն. և ապականացուք են յորդելով և պակասելով օգտել և վնասել, զիւրեանց տկարութիւն ցուցանելով: Եւ երկինք և երկիր ոչ ինքնին եղեալք, և որ 'ի նոսա զեռունք իցեն և անշունչք, այլ յայ՟ արարան, և ապականացուք են: Երկինք լուսաւորօք և երկիր կենդանեօք և բուսովք և տնկովք, և ամ՟ ձեռագէտ արուեստից, որ ստեղծանեն պատկերս յարարածոց այ՟ աստուածս, սուտ են և ապականելին. որպէս իմաստնոց է քաջայայտ: Նա և ոսկի և արծաթ և ակունք պատուականք և պղինձ և երկաթ 'ի մարդկանէ ճարտարաց 'ի պէտս ինչ իրաց կազմեցին, և կամ 'ի զարդ ինչ նիւթոյ հասարակաց արարչին առնելոյ իմաստութեան այ՟ նախախնամեալ: Զի երկինք և երկիր և ամենայն զարդ նոցա յայ՟ արարան յոչընչէ. և չեն աստուածք տարերքս ամ՟, այլ արարածք հասարակաց արարողին:

Արարածք են այ՟ և լուսաւորք՝ արեգակն և լուսին և աստեղք ամ՟, որք իւրեանց փոփոխմամբն ցուցանեն զիւրեանց սպասաւորութիւն ըստ սահմանելոյն այլ և ս արարածոց: Եւ յայտ առնեն մեզ եթէ արարածք են օգտելով և վնասելով, ամարանի ջերմամբքն և ցըրտութ՟ ձմերանոյ, մանրապատում իմն շահիւք և վնասակարութ՟, որպէս իմանալի է: Զի որպէս մարդիկ ոչ կացին 'ի պատուիրանապահութեան այ՟ և ըստ հրամանի դարմանողին յօգտակարսն վայելեցին՝ այլ նանրացան, այնպէս և դարմանիչ արարածք փոփոխեցան յօգտակարացն[1] 'ի վնասակարս: Որպէս ձմեռն ոչ միայն զովացուցանէ, այլ և սպանանէ. և ամառն ոչ միայն ջեռուցանէ, այլ և խորշակահար առնէ. և հուր ոչ միայն ջեռուցանէ և զպէտսն ընու, այլ այրէ և ապականէ. և ջուր ոչ միայն արբուցանէ զերկիր, այլ և ողողէ և վնաս առնէ: Այնպէս և ամ՟ դարմանքն. որպէս իւղ և մեղր և գինի և այլն ամ՟ ըստ նմին օրինակի: Եւ չափով խնամք են դարմանոցն, և անչափն տանջանք և մահ. զի սանձեաց զժպիրհ և զյանդուգըն կամս ապահութեան և զանձնիշխան կամացն զհա

1 Միւսն յաւելու 'ի ձեռագիրն Ն:

սութեամբ և 'ի վայր ցնդութեամբ անառակութեան և անխնայ չարութեան, որ է Ճանապարհ անդորր[1], որ տանի 'ի կորուստ։ Եւ նեղ և նուրբ Ճանապարհ՝ և սիրոյ և արդարութեան օրինացն, որ տանի 'ի կեանսն յաղագս սրբութեան և ճշմարտութեան, որ ընթացուցանեն զճանապարհորդն 'ի դուռն կենաց և փրկութեան։

Զի այսպէս երևելեօքս և աներևութիւքն ահիւն այ սանձահարեալ զանձն 'ի զգաստութիւն, և զգժպհութեան և զյայրատութեան անձնիշխան կամացն լուծանել 'ի չարէ և 'ի բարիսն շարժել և յորդորել ըստ օրինացն։ Կշռել և խորհել, ասել և առնել որ 'ի հաճոյս այ աւարտի ճշմարիտ վկայութեամբ սուրբ գրոց։ Եւ մի անկանել 'ի բազմախոյզ խնդիրս՝ որ վրիպեցուցանեն 'ի ստոյգ հաւատոց։ Զի ճշմարիտ գիտութեան իմաստից կենարար շահիւքն լցուցանէ միշտ. և ամրացեալ պահպանութեամբ պատուիրանին 'ի հոգևոր վարդապետութեան կայ մնայ անսասանելի։ Այլ և զամուրս նմ քակէ զհպարտացեալս 'ի վերայ գիտութեան այ, և ածէ 'ի հաւանութեան հաւատոցն։

Զի մինչ մարդն հնազանդէր օրինացն այ, և գազանք թռչնաւորք հնազանդէին մարդոյն որպէս տեառն և թագաւորի։ Որպէս Դանիէլին՝ որ եկաց 'ի պատուիրանին, և որպէս երեք մանկունքն 'ի հնոցին, և որպէս ծովն՝ Պետրոսի. նա և նմ սրբոց արարածք հնազանդեցան 'ի կամաց այ։ Եւ որք ապստամբք են 'ի պատուիրանէն այ, և նմ արարածք շնչաւորք և անշունչք հակառակս յառնեն. և երկիրս նմ տնկովք և բուսովք յապականութի դառնան։ «Արար, ասէ, զերկիրն պտղաբեր՝ յաղտաղտուկ վասն չարութեան բնակչացն»։ Եւ որքան ջանք և հնարք եղեն սրբոցն զմարդիկ ածել յուղղութի օրինօքն և աւետարանաւն Քի, սոյնպէս և մարդկան ըստ այ շնորհին հնարիւք ածել 'ի հնազանդութի ըդ-գազանս և զանասունս և զթռչունս արբանեկել զպիտոյսն, և զերկիր 'ի գործ արկանել 'ի պէտս։ Եւ առ հուր և առ ջուր և հողմ հնարիւք սպասաւորս առ-

1 Մերն անդոյրր։

նել մեզ՝ իմաստութեան նորա առաջնորդեալ։ Եւ նախախնամութիւն արարչին աներևութաբար ներգործէ 'ի մեր հնազանդութիւն գազանաց և անասնոց և թռչնոց և սողնոց և զեռնոց, որ 'ի ծովու և որ 'ի ցամաքի են։ Զի եթէ ոչ էր ահ մեր 'ի վերայ, ամենեքեան զմեզ սատակէին։ Եւ ուր ուրեք վնասիցեն զմեզ, յերկիւղ նորա շարժեն. զի վերաբերեալ 'ի հեղգութենէ յառաքինութեան վարս փութացուցք միշտ։ Զի և գազանք ոչ եթէ բնութեամբ եղեն չարք, որպէս ընդդիմութիւն ցուցանեն առ թովիչսն. և առիւծ և ինձ և արջ հնազանդին մարդկան, որպէս եզն և շուն և այլ նման՝ որք ընդ լծով անկանին և շողոքորթեն, և առ անընդդիմելսն գազանանան, և մահ գործեն անծանօթիցն և վէրս։

Այլ որպէս 'ի պատճառէ իմեքէ կատաղութիւն 'ի խելսն անկանի և հանէ 'ի դարմանոց, և յընտանութենէ 'ի վարագութիւն[1] մոլորեցուցանէ և 'ի կորուստ ինքեան և այլոց եւս, նոյնպէս և առ ուսմունս մոլորութիւն 'ի խելս միտացն անկանի և ցնորեցուցանէ որպէս զկատաղին, անծանօթս առնէ 'ի ճշմարտութենէն ամբարիշտ և այլանդակ վարուք. որք ելանեն ընդ սահմանս բնութեանն, բայց թէ բժշկի ուրեք որպէս կատաղի։ Վասն այսորիկ պիտոյ է յոյժ զգուշութիւն՝ պահելով զլսելիս և զմիտս յայնպիսեաց անտի վնասուց, և խորհել յօրէնս նորա 'ի տուէ և 'ի գիշերի, որ փրկութեամբ լի է և կենօք։ Զի և մարդն միտաւոր և բանաւոր՝ շնորհիւ նորա անշարժ կացցէ 'ի լաւութիւն մտերիմ հաւատով և անարատ վարուք։ Փոփոխել 'ի վնասակարացն 'ի լաւագոյնսն. արժանաւոր լինել հոգևոր առողջութեան և ամբիծ սրբութեան երախտեօք ճշմարիտ սիրոյն նորա. և ընդունել շնորհս առաքելութեան, մարգարէութեան, վարդապետութեան, քահանայութեան շնորհի հաւատականն կամօք արժանի լինել, և լուսաւորել զմիտս խորհրդովս միտաց լուսով գիտութեան և իմաստութեան. արժանաւոր երախտաւոր վարուք հասանել 'ի նաւահանգիստն կենաց։

Այլ յաղագս անձնիշխանական կամաց ունի զօ-

[1] Այսպէս յերկրորդն օրինակին։

րութիւն մնալ 'ի մտերմութեան սուրբ սիրոյն 'ի նր, և կամ յանհնազանդութեան հոգևոր օրինացն և 'ի բարեացն 'ի վայր կործանել 'ի խորս չարեաց, և զանարգանաց անուն ժառանգել և զանառակութե և զամբարշտութե զանօրէն և զչար և զպիղծ: Սոյնպէս և անմարմին զօրացն է իշխանական կամօք կալ 'ի հրամանի արարչին, և կամ ստունգանել նմ: Որպէս իմանալի է, հոգեղինացն կալ մնալ 'ի սէրն այ միշտ յանդադար փառաբանութե արարչին իւրեանց: Այլ և զապստամբսն 'ի նոցանէ իսկ արար զսատանայ. և որք ընդ նովաւ զօրք՝ այսք պիղծք և չարասէրք անուանին: Արդ այսպէս յանուանէն ունին ըդհանգամանս բնութեցն բարւոյ և չարի, յայտնել մեզ զլաւն և զանարգն: Եւ զիւրաքանչիւրոցն ծանուցեալ զպատիւ և զանարգանս, զհետ երթիցուք բարւոյն և ատեսցուք զչարն. զի լուիցուք բարբառոյն երանելի որ ասէ. «Ազնիւ, ծառայ բարի և հաւատարիմ, որով 'ի սակաւուդ հաւատարիմ եղեր, 'ի վերայ բազմաց կացուցից զքեզ. մուտ յուրախութի տն քո»:

Իսկ որք հիւանդքն են և ստոյգ ապաշխարեսցեն, և նոքա փրկութեն հասանիցեն՝ որ 'ի Քս Յս: Զի ոչ է պարտ հիւանդացն 'ի դարմանս արդարոց վայելել, և վատացն առ քաջսն, և մեղաւորացն ընդ անմեղսն, և անսրբոցն ընդ սուրբս հաւասարել: Այլ մնալ յիւրաքանչիւր կարգի ուսման, ոմն ուսուցանել և ոմն ուսանել: Զի այսու շնորհիւ հրաւիրանօք կոչեաց զամենեսեան յիւր արքայութիւն. և կանուխ գիտութեն ընտրեաց զառաքեալսն 'ի սպաս պաշտաման Ճշմարիտ քարոզութե հասարակաց արարչին: Եւ նոքօք ած զբազումս 'ի ժառանգութի ածգիտութե: Եւ վասն այսորիկ բարերար կոչի և թագաւոր թագաւորաց և տր տերանց. որ միայն ունի զնախախնամութի 'ի վերայ մտերիմ ծառայից առաքինեաց 'ի նեղութեան և յանդորրու. զի ցուցանէ զօգնութի յապաւինեալսն իւր: Զի դատաւոր արդար է 'ի վերայ օրինաց[1], և բժիշկ հիւանդաց՝ որք

1 Միւսն անօրինաց:

ախտացան 'ի զանազան ախտս և 'ի ցաւս, յորժամ դառնան յապաշխարութիւն խոստովանութեամբ։ Այլ և դարմանք հոգևորք պատրաստեալ կան, խրատք առողջութեան 'ի սուրբ գիրս և աւետիք թողութեան և հանդերձեալ երանութեանն՝ որք կամիցին։ Զի որպէս ամպ երբեմն կարկտիւ և հրով շրջի և երբեմն քաղցրր անձրևով, այսպէս հրամանն տ՟ն շարժի 'ի վերայ անարժանիցն բարկութեամբ և արժանաւորացն քաղցրութեամբ ըստ արդար դատաւորութեանն։

Նաև արարիչն ա՟ծ և հաստիչն տ՟ր 'ի գործոց անտի իւրոց ունի զփառաւորութիւն և զկենցուցիչ անուանսն զերախտեաց իւրոց, զբարերարն և զողորմածն և զգթածն, զսուրբն, զերկայնամիտն, զատոյգն, զճշմարիտն, զաներևոյթ զզօրութիւնն երևելեօքս 'ի հանդիսի կացուցեալ 'ի խրատ և յառաջնորդութիւն աներևոյթ զօրաց հոգեղինացն և երևելի որդւոց մարդկան ըստ ընտրութեան լաւութեան առաքինութեան գործոցն սրբութեան։ Եւ փառաւորեալք են արարչին կենարար արուեստիւք, որ գործակիցն է իւրովք շնորհօք։ Եւ զնոյն անուանս ստանայ արարածն զարարչին իւրոյ. և նոքիմբք մեծարեալ մնանէ 'ի ժառանգութիւն Որդւոյն ա՟յ և մարդասիրի, և 'ի բարութիւս վայելէ յանվախճան և յանսպառ երանութիւնն ընդ անմահ արքային յաւիտեանս միշտ։

Շնորհալից մտաց և հաւատացելոց սակաւ բանք խրատուց բաւական են յուղղութիւն. իսկ անհաւատիցն և անշնորհիցն և յոլովից բանք խրատուց ոչ ինչ օգուտ գործեն, որոց խաւարեալ են միտք իւրեանց և օտարացեալք 'ի շնորհաց անտի։ Այդ յուշ լիցի ամենեցուն ա՟ծեղէն խրատն, որովք լուսաւորիմք իմանալ լուսոյն որ անստուերն է, և չէք 'ի նմա խաւարի մասն։ Արար զմեզ բանաւորս և մտաւոր, զի ծանիցուք զարարիչն և արասցուք զհաճոյս նորա. որ յոչընչէ 'ի լինելութիւն եած և 'ի չգոյէ 'ի գոյ։ Եւ մատակարարեալ 'ի մարմնի վերափոխէ զկացեալսն 'ի պատուիրանին պահպանութեան յա՟ծեղէն փառսն ք՟ի։ Զի որք ասեն եթէ ընդէր այսպէս արար զմեզ ապականացուս և ոչ անապականս, միթէ ասիցէ ստեղծուա֊

ծըն ընդ ստեղծիչն իւր Թէ ընդէր այդպէս արարեր զիս ։ Զի ուսցուք զմեզ ինքեանս ըստ իշխանական կամաց մեղուցեալս և ապականեալս, և անմեղս և անապականս ։ Որոց իւրաքանչիւրոցն է պատրաստեալ, մեղուցելոցն մահ, և անմեղացն կեանք յետ աստեացս վճարելոյ . որոց կենաց և մահու փոփոխումն չիք ։ Որ անփոփոխն է կենդանի երանութիւն 'ի սիրոյն այ կազմեալ. «Զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լըւաւ, զոր պատրաստեաց ած սիրելեաց իւրոց », ասէ ածային Առաքեալն ։

Այլ յայնժամ 'ի կատարածի յայտնի 'ի յայտնութեան աւուրն և 'ի յարութեան, յորժամ լինիցի ահաւոր ատեանն յերևել փառաց Որդւոյն այ. զի երկինք և երկիր անցցեն, և նա կայ միայն անմահ և մշտընջենաւոր և անսպառ յաւիտեանս յաւիտենից ։ Զի անհնազանդից և անհաւատից, ամբարշտաց և մեղաւորաց կազմեցան տանջանքն անվախճանք, որպէս սատանայի և դիւաց նորա ։ Զի յերկրի որպէս 'ի ծովու ծփեցան հողմակոծեալ և մրրկեալ մեղօք ։ Այլ հաւատարիմքն և լուսաւորեալքն շնորհօք անսասանելի մնացին 'ի պատուիրանի արարողին . զի լուսաւորեցան վարք նոցա . և որք տեսին զգործոնց բարիս, փառաւորեցին զհայրն որ յերկինսն է՝ ըստ բանի աւետարանին ։ Այլ արարչին բոլորից և ամենեցուն տեառնն ոչ ոք կարէ հասու լինել և բաւական յասել զամենարար զօրութեն նորա զմեծութի և զիմաստութի ։ Այլ ըստ իւրում բարերարութեն եկաց զդուռըն կենաց արարածոց իւրոց հաւատացելոց 'ի ձեռն Յսի Քսի և սրբոց իւրոց ։ Որոց աշակերտեալք 'ի նոյնսըն գնասցուք հաւատով և սիրով և յուսով . զի ընդ նոսին ժառանգեսցուք զանսպառ բարութիւն 'ի Քս Յս 'ի տէր մեր . որում փառք յաւիտեանս յաւիտենից . ամէն ։

## ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ ՃՇՄԱՐՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆ ԿԵՆԱՐԱՐ ԽՐԱՏՈՒՑ

## ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ ԱՍԱՑԵԱԼ

### Ե

ՅԱՅՏՆԻ Է իմաստնոց սրբոց որ ունին զգիտութիւն 'ի գրոց մարգարէից և առաքելոց և վարդապետաց, թէ մի է բնութիւն ամենասուրբ Երրորդութեանն զօրութեամբ և փառօք և միշտնջենաւորութեամբ: Անսահման էութիւն, անսկիզբն իսկութիւն, անփոփոխ ճշմարտութիւն, կեանք և կեցուցիչ կենդանեաց: Հայր է հայրն միածնի Որդւոյ, և բխումն Հոգւոյն սրբոյ. պատճառ նոցունց իսկութեացն 'ի նոյն բնութիւն: Երրորդութիւն կատարեալ և մի ա՟ծութիւն, փառաւորեալ միշտ 'ի զօրաց երկնաւորաց և 'ի մարդկանէ որպէս զա՟ծ և զարարիչ գոլով: Զի յոչընչէ արար զաստս և զամենայնս որ երևին և որ ոչն երևին և յերկինս և յերկրի: Եւ հոգեղինացն և բանաւորացս տուեալ զինքնանական կամս, որով երևեցին պատուեալք, և ցուցցեն զլաւութիւն մտերմութեան առ արարիչն, փառաւորելով զտ՟րն փառաց և առնել զհաճոյս նորա, և արուեստից նորա տեղեակ և աշակերտ լինել անարատութեամբ և սրբութեամբ: Եւ երախտաւոր լինել առ դարմանս որդւոց մարդկան. հովուել և բժշկել և առաջնորդել յերևելի և յաներևոյթ պէտս ըստ ամենայն օգտից գործակցութեամբ Հոգւոյն ըստ օրինացն: Բարի կամօք և բարի խորհրդով և բարի գործովք ցուցեալ զգործ պիտանութեան: Զի եղեալք և հաստատեալքս 'ի բարի՝ 'ի նոյնս կացցուք: Զի աղբիւր է Ա՟յ բարեաց և կենդանատու սուրբ խրատուց. որ զամենեցուն միտս լուսաւորէ 'ի գործակցութիւն կամաց իւրոց բարեսիրաց խելամտութեամբ գործոց սրբոց՝ մտանել 'ի ժառանգութիւն արքայութեանն, որ առ ան-

վախճան կեանսն տանի ։ Այս է բարերարութեան նորա հանդէսք, աննախանձ և առատ առ արարածս իւր. զի զամենեսեան կոչէ յիւր փառսն և յերանութիւնս գործակցութ̃ ըստ իւր բարերար կամացն ։

Իսկ զի արարածոց կամք հաղորդեալ իցեն ընդ նորա բարի կամացն 'ի ձեռն օրինացն եդելոց, և լիցին աշակերտք բանին կենաց ։ Զի նախ նորա միայնոյ ամենակալ զօրութեանն և բարերար կամացն և ամենագիտ սիրոյն գործ երևեցաւ, զի յոչընչէ արար զերկինս և զերկիր և որ 'ի նոսա արարածք իցեն, որ երևին և որ ոչն երևին ։ Երկրորդ լաւութ̃ մտաւորացն և բանաւորացն և որք 'ի նոյանէ ըղգործս մտերմութե և հնազանդութե և սիրոյ ցուցանեն, յայլ պատիւ փոխեցին յանուն և 'ի փառս հրեշտակաց և հրեշտակապետաց, սերովբէից և քերովբէից և զուարթնոց և ա՛ծ երկնաւոր զօրացն՝ որք փառաւորին ։ Իսկ երկրաւորացս տուեալ շնորհս առաքելութեան, մարգարէութե, քահանայութե, աւետարանութեան, ճշմարիտ վարդապետութե, մարտիրոսութե, կուսութե, սրբութե, կատարեալ ապաշխարութե ։ Զի երկոքին կողմանքն միոյ բարերար կամացն արբանեակք են և աշակերտք, վերին զօրք և մարդիկ ։ Զի մի է ա՛ծ Հայր, յորմէ ամենայնն. և մի տէր Յս Քս, որով ամենայնքս. և մի սուրբ Հոգի նորոգող. Երրորդութի սուրբ ։ Զի Բանիւ ա՛ն երկինք և երկիր հաստատեցաւ, և Հոգւով բերանոյ նորա ա՛ծ զօրութիւք նորա, որպէս ասացաւ 'ի մարգարէէն. որ միշտ օրհնի յարարածոց ։

Ի զանազանութի կարգաց և պատուիրանաց յա՛յ 'ի հրեշտակս և 'ի մարդիկ ըստ իւրաքանչիւրոց յօժարութե և սիրոյն որ առ ա՛ծ ։ Զի յանուանցն ուսուցանեն մեզ երկնաւորք և երկրաւորք կալ 'ի մըտերմութե և 'ի բարիխորհրդութե 'ի բարի գործս. յորդորել և զայլս 'ի բարին և 'ի հաճոյսն ամենազօր տէրութեն, և խափանումն առնել աղտեղի բարուց շարժմանց ։ Զվերինսն խորհել զհրեշտակացն, զի ըղնոյն փառս և զպատիւ առցուք, և լինել սպասաւոր բանին կենաց և արարչին կամաց ճշմարիտ քաղաքութ̃ . զանմոլար գիտութի սփռել 'ի լսելիս մարդ-

կան, զարթուցանել 'ի գործ բարեաց, և ունել զերասանակս անձնիշխան կամաց 'ի պահպանութիւն պատուիրանին և յիրաւունս ն̃ն ։ Ով զայս արասցէ, քերովբէի նմանի, և զնոյն պատիւ առցէ յարարչէն ։ Եւ որ զհակառակաւէր և զդժնդակ վարս ուղղէ 'ի հնազանդութիւն և 'ի հեզութ̃ն և յանարատ սրբութ̃ն, խլեւլով 'ի մտաց և 'ի մարմնոց զանիրաւ բոյսս որոման չարութ̃ն, ապիրատութ̃ն, խորամանկութ̃ն, խարդախութ̃ն և ա̃մ փնասակարաց, և ցանկացողս առնէ ա̃ծային օրինացն արդարութ̃ն, զսերովբէի զկարգ ունի և զպատիւ ։

Իսկ որ արթունն կայ 'ի հանդէս առաքինութ̃ն սուրբ և անարատ, և ոչ պղերգանայցէ յօգտակարացն, 'ի հոգևորացն կամ 'ի մարմնականացն, ըզզուարթնոցն զկարգ ունի, զփառս և զերանութիւն ։

Իսկ որ զկորուսեալն գտանէ և զգտեալն պահէ, և զամբարշտեալն բարկութ̃բ և ամբարտաւանութ̃բ՝ զիջուցանէ 'ի խաղաղութ̃ն և 'ի խոնարհութ̃ն և 'ի հաշտութ̃ն, նմանեալ լինի Որդւոյն ա̃յ և ժառանգակից ըստ իւրում բանին. «Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք ա̃յ կոչեսցին» ։

Իսկ որ զօտարսն ընդանեցուցանէ, և զգլորեալսն 'ի մեղս՝ կանգնէ, և զհիւանդացեալսն անհաւատութ̃բ և երկմտութ̃բ՝ բժշկէ ուղղափառ հաւատով և բարի գործովք, և զաղտեղիսն հոգւով և մարմնով ախտացեալս սրբէ սուրբ խոստովանութ̃բ ըստ աւազանին շնորհի, և զայս յապաշխարութ̃ն, գործակից լինի Հոգւոյն սրբոյ, և նորին բնակարան, ըստ բանին. «Դուք տաճար ա̃յ շինեալ իրաւամբք և սըրբութ̃բ. և Հոգի ա̃յ, ասէ, բնակեալ է 'ի ձեզ» իւրովք ա̃ծային փառօքն 'ի սրբեալսն ։

Իսկ որ զանյոյսսն յուսով նորոգէ 'ի յոյս կենացն յաւիտենից, և զհարթուցեալս և զհեռացեալսն համադարտեցուցանէ և զետեղէ երկայնմտութ̃բ 'ի համբերութ̃ն, և գթած խնամովք յանձնանձէ, և շնորհօք ողորմութ̃բ ուղղէ 'ի լաւագոյնսն 'ի լուսաւորութ̃ն ա̃ծգիտութեան և մաքուր վարուց, ժառանգորդ լինել ք̃ի և արքայութ̃ն երկնից ։ Որ նմանեցաւ նորին մարդասիրութ̃ն ըստ ա̃մի, և 'ի խնամս սուրբ

Երրորդութեն վայելեսցէ յերանելի կեանսն։ Զի ա͞յ երախտեացն 'ի փոքուն հաւատարիմ եղև հոգեւոր դարմանոցն և մարմնաւոր. զի «Քաղցեայ, ասէ, և ետուք ինձ ուտել. ծարաւեցայ, և արբուցէք զիս» և որ այլն ևս։ Զի որովհետև արարէք միում 'ի փոքըրկանց, ինձ արարէք, ասաց։ Զի այսպէս են խընամք սիրոյն 'ի մեզ։

Իսկ որ ծուլանան առ բարի գործս, և արհամարհանօք արհամարհեն զօրհնութիւնս, և որոշեն զանձինս 'ի տեառնէ հպարտութբ և անհաւատութբ, ապստամբեալ 'ի բանէն կենաց, ամբարտաւանեալ ընդդէմ ներող տէրութեն ամենակալ զօրութեն, և լինին յոլովից կորստեան պատճառք, վրիպեալք յաւիտեանցն բարեաց և յերանելի յուսոյն, սատանայի են նմանեալ և զնոյն պատիժս տայցեն յաւիտենից տանջանացն։ Որք աստէն են գրաւեալք 'ի ներքոյ ահաւոր սպառնալեաց արդար դատաստանին յաղագս ապախտաւոր և անառակ գործոյ չարեաց։

Իսկ որ ստահակեն և մոլին 'ի չարիս, և նենգելով լինին բանսարկու 'ի մոլորեցուցանել յուղիղ հաւատոյ և 'ի սուրբ վարուց, և նախանձին ընդ բարեգործս, և լինին խռովարարք և բարկացողք և պղտորիչ պարզամտաց[1], զդիւաց զկամս ունին, և նոցին լինին ժառանգորդ 'ի յաւիտենից տանջանսն. եթէ յանմարմնոց իցէ և եթէ 'ի մարմնաւոր հոգեղինացս։

Իսկ որ անխտիրն է յաղտեղութիս, լկտեալ յանառակութե և վարեալ 'ի պէսպէս ցանկութիս պատիր պատճառաւ, բազմանայ անօրէնութիք 'ի գողանալ, 'ի ստել, յերդնուլ, և բազմարմատ դժընդակութիք պատճառք լինի բազմաց 'ի կորուստ, այնպիսին զպիղծ և զաղտեղի անուն ժառանգէ. հրաժարեալ 'ի կենդանի լուսոյն և 'ի սրբութե փառացն ելանէ 'ի խաւարն արտաքին հրախառն. որ որդն նոցա ոչ վախճանի և հուրն ոչ շիջանի, և լինի 'ի տեսիլ ա͞մ մարդկան։

Իսկ որ անխնայ են 'ի չարութե և լի են անիրա-

1 Միւսն պարզմտաց։

ութեան յերևելւոյ և յաներևոյթս, յանառակութենէ և յանզգամութենէ, 'ի հարկանել և 'ի զրկել, 'ի նեղել, 'ի սպանանել և 'ի կորուսանել, այնպիսին զան-ողորմ չարագործացն պատուհաս ընդունի. զի չարք չարաչար կորիցեն :

Իմացար ըստ իւրաքանչիւրոց խորհրդոց և գործոց զհատուցումն արդար Այ կշռոցն : Զի եդաւ պատուիրան մարդկան' կալ հաստատուն յանարատ սրբութեն, և գործել զարժանին և զիրաւն, և կալ մնալ անշարժ 'ի լաւագոյնսն, որպէս ասացաւ : Զի այսպէս կարեն ընդունակ լինել շնորհաց մարգարէութեան, և խորհրդակից լինին բարերար կամաց տէրութեն Ճշմարիտ քարոզութեն, և զարթուցանել զմեր միտս 'ի քնոյ յակնկալութեն յուսոյն, տպաւել կենդանի աւետեացն խոստացելոց, և ժառանգաւոր լինել անքննին փառացն' որ արդարոցն է :

Իսկ որք հրաժարեն 'ի պատիր խաբէութեն մարմ-նաւոր վարուցս' լուացեալ զմիտս 'ի խղճէ չարեաց շնորհօք սուրբ զղջմամբ ապաշխարութեան արտասուօք, ատել զչարն և սիրել զբարին, խափան լինել մոլար խաբէութեն ունման, և ընծայաբեր լինել Ճշմարիտ հաւատով ամենասուրբ Երրորդութեանն, որք այսմ արժանի լինին, առնուն զանուն առաքելութեան աւետեաց նորոց կտակարանաց, և ժառանգաւոր լինին արքայութեն երկնից : Եւ որք նախ զառնեն ընծայեցուցանեն ըստ ուղիղ քարոզութեն. զի որոյ գործք իւր վկայեն քարոզութենն, ապա և լսողացն ընդունելի են առ 'ի խափանումն սուտ և պատիր խաբէութեն մտացն շարժմանց : «Զի որ քրիստոսեանքն են, ասէ Առաքեալ, զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին կարեօք և ցանկութեամբք հանդերձ» : Եւ այնպիսիքն են բնակարան Աստուածութեն, և վկայք Ճշմարտութեն ամ հաւատացելոց :

Իսկ որ միամտութեամբ սրբութեամբ ընդդրին սրբեալ ըզմիտս և զմարմինս յամ խղճէ չարէ յերևելեաց և յաներևութից, արժանի[1] սյ Հոգւոյն կոչմանն' առաքինեալք որպէս զքաջ Նահատակս, անարատ սըր-

1 Միւս օրինակն յաւելու 'ի լուսանցս ընթն :

բութեամբ յանդիմանել զմարմնաւոր բարուցն միշտ ընդ-շարժմունս, և քակել զկիրս մարմնաւորս և շինել զհոգևորսն, զամբծութիւն և զնմին արդարութիւն փա-փաքանօք և անմեղկելի 'ի շահաւոր գիւտս և 'ի փըր-կութիւն մերձաւորին և հեռաւորին: Զի որք այսպի-սի վարուք հանդիսանան, նոքա են արժանի Հոգւոյն սրբոյ օծմանն, և քահանայանալ Աստուծոյ և ընծայել ժողո-վուրդ նորա նախանձաւորս գործոց բարեաց և պաշտօ-նեայ սուրբ Երրորդութեան 'ի ձեռն շնորհաց սուրբ աւազանին և մարմնոյ և արեանն Քրիստոսի կցորդ ըստ որ-դեգրութեան. և 'ի բաց ընկենուլ զհին մարդն, և ըզ-գենուլ զնորն որ ըստ պատկերին Աստուծոյ է, արդար և սուրբ, մեկնեալ 'ի չարեաց: Իսկ որք կամին զանց առ-նել զանցաւորօքս, և առնուլ զմշտնջենաւորսն 'ի ժառանգութիւն, ատեսցեն զվարս մարմնաւորս, և սի-րեսցեն զվարս հոգևորս, նահատակեալք բազում առաքինութեամբ. զի առցեն զանուն խոստովանողաց և վկայից սուրբ մարտիրոսաց, որ երանութեամբ պսակին:

Իսկ որ զգեցեալ են զանարատ սրբութիւն կուսու-թեան, և զմիամտութիւն բարերար կամաց հաճոյիցն, և ըստ արդարութեան օրինացն և կրօնից սուրբ հարցն, նոքա են որ մտանեն յառագաստն լուսոյ և վայելեն 'ի փառս անմահ Թագաւորին: Իսկ որք անկեալ են 'ի փորձանս մեղաց աղտեղութեան և դժնդակութեան 'ի խաբս սատանայի, և յիշեսցեն զբանն կենդանի որ ասէ, «Դարձարուք առ իս 'ի մեղաց, և խոստովան լերուք և ապաշխարեցէք. և ես դառնամ առ ձեզ յողորմութիւն շնորհօք 'ի բժշկել 'ի փրկել 'ի կեցու-ցանել», զի զօրացեալ 'ի նմանէ՝ յաղթեսցէ սովորա-կան ցանկութեանցն և չարին խաբէութեանց՝ որ ըստ հո-գւոյ և մարմնոյ է մարտն բռնացեալ: Եւ հանդիսա-ցեալ յառաքինութեան մրցմունս, յաղթեսցէ և յա-մօթ արասցէ զիշխանն մեղաց առհաւատչեայ յու-սոյն և աւետաւոր յարութեամբն: Զի 'ի ձեռն մարմնոյ և արեանն նորա ազատեալք լիցուք 'ի տանջանացն, և լիցուք ժառանգորդ արքայութեան: Զի «Փառք և պատիւ և խաղաղութիւն, ասէ, որ գործէ զբարի. և բարկութիւն և նեղութիւն և տանջանք, որ գործէ ըզ-չար»: Տեսանես, յետ այնչափ ընդրութեանցն և քննու-

թեց ոչ դառնայ յողորմութե՟ ՚ի խնամել զարարածս իւր. այլ զմոլորեալս դարձուցանէ, զանկեալն յարուցանէ, զգլորեալն կանգնէ, զաւեկեալն պատէ, զհիւանդս բժշկէ, զաղտեղեալսն մաքրէ արտասուօք, զերկմիտսն հաստատէ ՚ի հաւատս, և զամենեսեան լուսաւորէ։

Արդ ո՞վ բաւական է բարեաց բարերարին գոհութիւն մատուցանել, որ յա՟մ կողմանց փոյթ է կեցուցանել զարարածս իւր։ Զապաշխարողսն որպէս հուր վառէ ՚ի վերայ ամբարշտաց և մեղաւորաց, անսրբոց և պղծոց, զի դարձցին ՚ի չարեաց և ապրեսցին ՚ի բարկութե՟ն որ գալոցն է։ Եւ զաւետիսն որպէս ըղլյս ծաւալեցուցանէ. զի զարթուցեալ և օթափեալ որպէս ՚ի քնոյ ՚ի բարիսն ժամանեսցեն, և զկենդանի բարութ՟իս ժառանգեսցեն յարարչէն։ Իսկ որք ոչն դառնան և ապաշխարեն, պատրաստեցաւ նոցա տանջանք ՚ի տ՟նէ ըստ իւրաքանչիւրոցն։ Զի որպէս գթած է անուանն ՚ի խնամել և ողորմած է շնորհացն և երկայնամիտ ՚ի ներելն և սուրբ առ ՚ի սրբելն և լյս առ ՚ի լուսաւորելն, այսպէս և Ճշմարիտ անուն է նորա արդար դատաւոր. որ ըստ իւրեանց օրինացն հատուցանէ ըստ բարեաց գործոց և չարեաց։ Արդ զորոյ զգործն ունի և զկամս, և զանուն և զփառսն ժառանգէ, կամ զանարգանս՝ ըստ չարեացն զպատիժս յարդար դատաւորէն։ Զի որպէս զերկրաւոր դատաւորս իրաւարարս ասեմք, որ զչարագործս և ըղպիղծս և զանիրաւս ՚ի բանդս և ՚ի կապանս և ՚ի տանջանս և ՚ի սատակումն մարմնոյ մատնեն, զի խաղաղութի առցէ աշխարհս, և ինքն փառաւորեսցի, այսպէս իմանամք և զա՟յ դատաստանն։

Այլ մի ոք երկմտեսցէ թէ ո՞վ գիտէ զայս՝ եթէ են պատիժք մեղաւորաց ՚ի մարդասիրէն ա՟յ պատրաստեալ։ Ի սոյն յիշեսցէ զսատակումն՝ որ ՚ի ջուրցն հեղեղէ. ա՟մ շունչ կենդանի ապականեալ կորեաւ, բայց ՚ի տապանէն՝ որ ցուցաւն յա՟յ։ Ապա թէ այսմ անհաւատ լիցիս, երթ ՚ի Սոդոմ և ՚ի Գոմոր ընդ հինկ թագաւորացն տունս, և զանցման տեսցես զաղետիցն ըստ պատմութե՟ն. որ տեղեաց տ՟ր ՚ի տ՟նէ հուր և ծծումբ յերկնից, և այրեաց զմարդ և զանասուն, զթռչունս երկնից և զձկունս ծովու, զքար և զհող և զջուր և զանտառս։

Իսկ եթէ զայս հեռի համարեսցիս, արդէն իսկ ընդ ժամանակս ժամանակօ զսով եւ զսուր եւ զգերութիւն եւ զմահս տարաժամս եւ զմահս անասնոց, այլ եւ զհարուածս եւ զցաւս եւ զհիւանդութիւնս չարաչարս, այլ եւ խռովութիւն հօր առ որդի, եւ որդւոց անհաւանութիւն, եւ եղբարց եւ սիրելեաց առ միմեանս ատելութիւն, եւ դառն հարուածք եւ մահ. վասն մեղաց զայսոսիկ բացայայտեն ա͞ծային գիրք մեզ։ Զի գիտութիւն ճշմարտութեան եւ իմաստութեան եւ խնամք արուեստից ըստ բարուց շարժեալ յամենակալ Հօրէն եւ յարարչէն եւ 'ի փրկիչ Թագաւորէն՝ մատակարարի յարարածս ա͞մ։ Զի նա է աղբիւր կենաց եւ տուիչ բարեաց եւ վարդապետ եւ շինիչ երեւելեաց եւ աներեւութից։ Եւ իմաստք 'ի մարդիկ 'ի նմանէ յառաջագոյն պէսպէս արուեստից եւ հնարագիտից։ Զի նախ 'ի միտսն գանձին հնարք արուեստիցն, եւ ապա յիշատակք իւրացն վարդապետին 'ի զգայութիւնս։ Ճշմարիտ տեղեկութիւն տացեալ 'ի շնորհաց տուողին. որպէս եւ Բեսելիէլին եւ նորին ընկերացն առ շինութիւն խորանին. զի Հոգին սուրբ ազդէր 'ի նոսա զազգի ազգի հանգամանս արուեստից։ Զի նախ նոքա եղեն ճարտարագործք արուեստից 'ի պարգեւաց Հոգւոյն, եւ ապա այլք 'ի նոցանէ աշակերտեալք մինչեւ ցայսօր ժամանակի։

Օ՛չ որ զդարբնութիւն ուսեալ կամ զոսկերչութիւն կամ զայլ արուեստս՝ 'ի միտ ունել զհանգամանս իւրացն եւ զկահոյսն զկազմս, եւ հոգայ միշտ՝ զի կարասցէ գեղեցկագոյն յօրինել զէնս կամ զարդս եւ կամ այլ ինչ յօրինուածս՝ որ ըստ աշխարհիս է իմացեալ։ Նոյնպէս եւ բժիշկք որ երակօքն իմանան զցաւս, եւ դեղովքն զառողջութիւն շնորհեն 'ի շնորհացն ա͞յ։ Այլ եւ հանդերձարարք եւ շինողք եւ հողագործք եւ խորտկարարք, եւ որ այլ են արուեստք 'ի պէտս մարդկան ընտանութեան, ո՞չ ապաքէն յա͞յ շնորհացն ունին զմտաւորութիւն. որ գովութեան եւ պատուի արժանի են եւ վարձուց, որք առնուն։ Իսկ որք ծուլութեամբ եւ արհամարհանօք յանցանեն ըստ հնարագիտութեան արուեստիցն, անպիտանս զնոսա առնեն. ապա եւ զուշն 'ի յիշատակաց արուեստիցն աստանդեցուցանեն 'ի ծուլու-

թէն, և տգեղութին և խանգարումն երևութանայ, որ-պէս անհանճարից. և արուեստքն անկանին 'ի հնա-րագիտութէ իմաստից[1], և գործն անարգի և անպի-տան լինի, և արուեստագէտքն անգոսնին և ամօթա-լից լինին, և անկանին 'ի տոյժս և 'ի տուգանս և 'ի տանջանս՝ անարգեալք յամենայնէ:

Այնպէս և կարգ քրիստոնէութե և ա̃ծպաշտու-թե է զգուշալի. զի ա̃մ իմաստութք և հնարագիտութք ուղղեսցէ զքարոզն և զզգայարանսն 'ի լաւագոյնսն վար-դապետութք հոգևոր օրինացն և ըստ հաճոյից բարե-րար կամաց արարչին: Զտիւ և զգիշեր 'ի կամս տեա-ռըն խորհել, և յուշ առնել մտացն և զգայութեցն զերկիւղն ա̃յ. զի առ ա̃մ պէտս բարի գործոց պատ-րաստ իցեն միտքն խորհել և առնել զբարիսն առաջ-նորդութք վերնատուողին. և 'ի հնարս մտեալ առ 'ի գրաւել 'ի յինքն զյիշատակս ա̃ծգիտութե: Յա̃մ ժամ 'ի կամս տեառն նայել, 'ի նորա սէրն և յեր-կիւղն կալ միշտ. զի կարող է զանգոյսն 'ի գոյ ածել, և զանարգսն պատուականս առնել, և զմեղսն լուծա-նել. տոյգ խոստովանութք և ապաշխարութք, և ի-մաստութք առաջնորդել ըստ արուեստից արդարու-թեն: Համապազ կալ 'ի միակութե հաճոյից ամենա-կալ տէրութեն անշարժ հաւատով և ամբիծ վարուք: Անկալութք յուսոյն կենաց զամենայն անդր գան-ձել, ուր ոչ ցեց ուտէ և ոչ ժանգ ապականէ և ոչ գողք ականս հատանեն յա̃ծային պահպանութէն:

Իսկ քաղցր յիշատակօք ուրբք սիրոյն անքակ կալ 'ի նմանէ անարատ սրբութք: Այլ և երախտաւոր լի-նել առ հեռաւորս և մերձաւորս, 'ի նեղութե և յան-գորրու կալ միշտ 'ի ճշմարտութեն: Խլել 'ի մտաց և 'ի զգայութեց զսուտ և զպատիր խաբէութեց զշարժ-մունս զեկամուտս նենգաւոր չարին աղտեղի ցանկու-թք և խիստ ամբարտաւանութք: Եւ զղջմամբ և ա-պաշխարութք լուացեալ զսիրտս 'ի խղճէ չարեաց, և ստացեալ կամս բարիս առ ա̃մ մարդ: Եւ փութալ և պահել զպատուիրանսն, և ընդ ա̃յ սիրոյն կապիլ միշտ. և անդ զմիտսն ամբառնալ, և զնորա գութն 'ի մեզ

1 Մխան արուեստից:

ձգել կենդանի խնամովք իւրովք։ Եւ ահիւ նորա զգուշանալ, և զգաստանալ մտերիմ սիրով և հաւատով, և արթուն և պատրաստ լինել, և յամ երկբաւա- բայց 'ի բաց կալ, որ խափանիչ և վրիպիչ է. շահաւոր օգտութեանցն։ Ոչ խօսել զվնասակարսն զոր չէ արժան. այլ խօսել զճշմարիտն և զօգտակարսն։ Եւ ոչ լսել ըզլուրն խարդախութե. այլ որ յածայինսն յորդորէ 'ի սուրբ գրոց այ։ Եւ ոչ նայել ուր չէ արժան՝ 'ի շուայտ մարմնոյ զբօսանաց ախտի։ Եւ ազատամիտ լինել յագահութէ, և առատանախանձ բարերար առ ամենեսեան, և օգտակար տկարաց հոգևորականաց և մարմնականաց։ Եւ ոչ է արժան զաղանդամն խուզել, և 'ի նոսա դեգերել 'ի կորուստ։ Եւ զգուշանալ յամենայն անիրաւութէ, 'ի բարկութէ, 'ի հարկանելոյ, 'ի զրկելոյ, 'ի թշնամանաց, յերդմանէ, 'ի ստութենէ, յոխակալութէ, 'ի չարախօսութէ, 'ի նենգութէ, 'ի յանշահ չարէ. զի մի բարկասցի տէր և կորուսցէ՝ որք այսպիսիս ունիցին վարս։

Իսկ որք ընդդէմ այսոցիկ զառաքինութիւնն բերիցեն, մեծարանօք և պատւով և պարգևօք 'ի տեառնէ, և զերանութիւնն յաւիտենից ժառանգեսցեն։ Զի զամ [1] շարժմունս արուեստից որ 'ի մարդիկ՝ 'ի կամացն շարժին 'ի լաւն կամ 'ի վատթարսն, զի իշխանականն ունի զերկաքանչիւրոցն զկամս բարւոյն և չարին։ Բազմադիմի են սերմանք բարւոյն 'ի մարդիկ. զի աներևելի սիրոյն այ երևելի ցուցցէ զարմտիս բարւոյն։ Եւ առաւելեալ բարեօք փառաւորեսցի 'ի պարծանս որոցն, և վայելեսցէ կենաց աւետեօքն։ Իսկ դժնդակ վարուց և աղտեղի՝ որ 'ի սերմանէ չարին որոմն բուսանի, յայտնի է ծիրցն՝ աներևութիցն յերևելիս գոլով, ոչ ընկալեալ զսերմն բարւոյն ըստ ընդրութե օրինացն. որք զհատուցումն ընկալցին 'ի տեառնէ զանշէջ հուրն անմահ որդամբքն. զի ատեցին զբարին և սիրեցին զչարն. զի ընդրութիւք են յայ բարւոյն և չարին ըստ իրաւանցն։ Զի որոց կամքն շարժին զգայութիւքն 'ի բարի կամ 'ի չար, ըստ նոյն և հատուցումն ընդունիցին։

1 Այսպէս յերկրորդն օրինակն։

Սիրոյն այն սրբութիւն հաստատի. բարեխորհրդութիւն, ուղղահաւատութիւն, բարեգործութիւն, արդարադատութիւն, Ճշմարտութիւն, եղբայրսիրութիւն, հեզութիւն, խոնարհութիւն, հնազանդութիւն, գործասիրութիւն, միամտութիւն, և որ այլ ևս են առաքինութիւն շահաւոր օգտիւք պահպանեալ երևելեօք և աներևութիւք։ Զգըթութիւն բարի կամօք սիրել. զողորմութիւն քաղցր շնորհօք, զերկայնմտութիւն զուարթ յօժարութեամբ, անձանձրոյթ յօժարութեամբ յաղօթս, պահովք պնդեալ։ Զայս սիրել, զայս պահել, յայսոսիկ զփոյթ ունել միշտ, և յայսոսիկ բարւոք ցուցանել զհանդէս մտերմութեան սիրոյն՝ որ առ Հայրն երկնաւոր և Որդին միածին և Հոգին սուրբ համագործութեան։

Իսկ որ սոցա հակառակ է, ատել զգժնդակսն, զչարեացն զցանկութիւնս և զչար խորհրդածութիւնս և զչար գործս անօրէնութեան, զխաբեբայ մոլորութիւն և զպիղծ[1] անառակութիւն, զսուտ պատիր նենգութեան երդմունս, զանհամբոյր բարս անհաւանս, զապստամբութիւն 'ի բարկութեան[2] շարժեալ, զատահակութիւնն 'ի թըշնամանս, զանհնազանդութիւն յամառ, զծուլութիւն և զմեղկութիւն, զպայրատութիւն և զխեղկատակութիւն, զլկտութիւն և զանառակութիւն, զոխակալութիւն և զնախանձ, զորովայնամոլութիւն և զարբեցութիւն, և զփառասիրութիւն և զամբարհաւաճութիւն հանդերձ ամբծիւք և անխնայ չարեօք և անխտիր աղտեղութեամբք, որ անպարգանօք լի է։

Այսոքիկ են դժնդակ վարք և վտանգաւոր որոմանս սերմանք. զի առանձինն բնութեամբ՝ չարն չար ոչ է, և ոչ բարին բարի. այլ 'ի միտսն ունի բարի և չար լինել. զի սիրոյն այն սիրել զբարին և ատել զչարն՝ բարի հաստատի. և ատել զբարին և սիրել զչարն՝ չար է. նախանձել ընդ բարիսն և լինել բարի՝ բարի է, և ընդ չարսն՝ չար է. և նախանձն նոյն է։ Բարւոյն ցանկալ բարի է, և չարին չար. և ցանկութիւն նոյն է։ Սոյնպէս և առ ամենայն բարիս և չարիս է իմանալ զնախանձ և զցանկութիւն։ Զի ամենատեսաւն բարեբարի զբարին սերմանեալ 'ի մարդիկ, և յիշխանական կամսն

1 Ոմանք պղծութեան անառակութեան։ 2 Ոմանք 'ի բարկութեան։

թողեալ՝ որք կամեցին վարել՚ի բարի և՚ի չար։ Արութիւն՚ի հանդէս բարեպաշտութեան, և հեշտութիւն՚ի չարն հակամիտէ միշտ։ Եւ կառավար բարուցն բարութեանց աստուածսիրութիւն է և եղբայրսիրութիւն. զի սէր ոչ խորհի զչար։ Իսկ չարեացն է անաստուածութիւն և անձնասիրութիւն կառավար. ըստ Առաքելոյ բանի օտարանալն յայ և առնել զկամս մարմնոյ և զմտաց, և լինել որդի բարկութեան։ Եւ դարձեալ ասէ. «Կենդանի եմ ոչ ես, այլ կենդանի է յիս Քս». այսինքն հաճոյքն Քսի. արդարութիւն, սրբութիւն, ճշմարտութիւն։ Եւ դարձեալ ասէ. «Լալով ասեմ զթշնամեաց խաչին Քսի, և զկատարածն կորուստ. որք զերկրաւորս ևեթ խորհին և խօսին և առնեն զչար, զլցեալսն ամ անիրաւութեամբ և դժնդակ չարեօք»։ Իսկ ընդդէմ չարեացն զբարիսն գործել՝ պսակաց և փառաց և պատուի արժանի է ընդ սուրբս։

Իսկ որ զամ սիրել ասէ՝ և ատէ զեղբայրս, այնպէս է, որ գտանէ և կորուսանէ, և որ լնու և հեղու. զի յամ ժամ զբարեաց զհետ երթիցուք, և ընդդէմ կացցուք չարեացն մարտից։ Որ առիթ լինի չարին, զփոխարէնս չարեաց առցէ. նոյնպէս և բարեացն առիթ՝ բարի ընդունի յամենակալ տնէն և ժառանգէ զերանութիւն։ Զի խափանիչք բարւոյ և չարասէրք՝ յանշէջ հուր գեհեննին ընդ դևս պարտաւորեալ տանջին։ Եւ յերկուցունց վերայ ատէն իսկ անսուտ բանն Քսի զդատաւճիռն առնէ. «Երթիցեն արդարքն ՚ի կեանսն յաւիտենից, և մեղաւորքն ՚ի տանջանսն յաւիտենից, զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակացն նորա»։ Զի ասացեալ է վասն Նեռինն «Մարդն անօրէնութեան, որդին կորստեան հակառակորդն, որ հոգւով բերանոյ իւրոյ սատակէ զչարն՝ Քս»։ Նոյն պատիժք որ զնոյնս առնեն, զդժնդակ վարս և զգազիր գործս։ Զորս սպանանել հրամայէ Քարոզն՝ զմեղացն անդամս, զցանկութիւս չարեաց ամի, որպէս ասէ. որ է մեղաց մարդ և կորստեան որդի և ժառանգ յաւիտենից տանջանացն։ Իսկ ստացեալ զվարս սուրբս և զանարատս ըստ պատուիրանին այ, մարդ կոչի արդար և սուրբ և ճշմարիտ ամ առաքինութեամբ կատարեալ՚ի Քս, ժառանգաւոր լինել երկնից արքայութեան և անանց բարեացն։

Արդ զայսպիսի խրատ միշտ 'ի մտի ունել և չթո-ղուլ 'ի մտաց. որպէս անդեղեայ[1], որ զցաւս ոգւոց և մարմնոց բժշկէ, և առողջութիւն շնորհէ հակառա-կացն՝ որք վնասեն զերևելիս և զաներևոյթս յուզ-ղութիւնս: Արդ զգոյշ լեր այսոցիկ յուսուցանել, 'ի լսել և 'ի յառնել միշտ զխրատս կենաց, որ մաշիչ է ամբարշտութեան և անօրէնութեան և աղտեղութեան մարդկան. և կանգնէ զգլորեալսն 'ի մեղս, և զար-դարսն պահէ միշտ: Զի որ զպտուղ իւր 'ի ժամու տայ, եղև նա որպէս ծառ, որ տնկեալ է 'ի գնացս ջուրց՝ 'ի հոգևոր խրատս. և զա̃մ ինչ զոր առնէ, աջողեսցի նմա, ասէ: Եւ լսիցէ 'ի քէն. ծառայ բա-րի և հաւատարիմ, որովհետև 'ի սակաւուդ հաւա-տարիմ եղեր, մուտ յուրախութիւն տ̃ն քո, որ պատ-րաստեցաւ քեզ ըստ վաստակոց քոց: Որ ունի ա-կանջս լսելոյ, լուիցէ հոգևոր խրատուցս շնորհօքն ա̃յ 'ի Ք̃ս Յ̃ս 'ի տ̃ր մեր. որում փառք յաւիտեանս. ամէն:

1 Ցերկոսին օրինակին անգեղեայ:

# ՅԱՆԴԻՄԱՆՈՒԹԻՒՆՔ ԽԱԾԿՈՒԹԻՑ ԻՐԱՑ ՈՐ ԶԱՆԵՐԵՒՈՅԹՍ ՅԵՐԵՒԵԼԻՍ ԱԾԷ

## ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

### Զ

Ո՛չ է Հայր ծնեալ ուստեք, այլ Որդի ծնեալ 'ի Հօրէ և ոչ արարեալ. և ոչ Հոգին սուրբ ստացեալ, այլ բղխեալ։ Մշտնջենաւորք, միաբան իսկութեամբ ընդ Հօր և առ Հօր և 'ի Հօրէ։ Որպէս բոց և ջերմութիւն 'ի հուր. որպէս լոյս և տապ յարեգական. որպէս ջուր և բղխումն յաղբիւրէ. որպէս բան և հոգի 'ի մտաց։ Շարժեալ առանձնաւորութիւնքն, այլ միաբանութիւն մի է բնութեան, և ոչ եկամուտ յանձնաւորութիւնն միշտ։

Այս առակք ճշմարիտ Երրորդութեանն։ Իսկութիւն անսկիզբն, կեանքն կեցուցիչ, ամենագիտ սէր և ամենակալ զօրութիւն, Հայր և Որդի և Հոգի սուրբ։ Երեք անձինք և մի բնութիւն և կամք. արարիչն և բարերարն և հաստիչն։ Աստուած էր և է. էր անսկիզբն յիւրում փառսն, և մշտնջենաւոր անվախճան առ խնամս արարածոց։ Եւ ճշմարտութիւն էր և է. էր յիւրում անփոփոխմանն, և է հաստատութիւն արարածոց։ Անվրէպ ամենաշահ գիտութիւն էր, և է յիւրում անբաւութեանն և առ լուսաւորութիւն արարածոց։ Անհաս իմաստութեանն իրաւունք էր, և է յիւրում անճառելի նախախնամութեանն յարարածս իւր։ Կենդանարար ամենագիտ ամենաշահ խրատիւք յանփոփոխ հաւատարմութիւն իւրոյ էութեանն էր, և է յաւէժ փրկական շնորհօքն յազգս մարդկան առ մերձաւորութիւն հաղորդութեան կենդանական սիրոյն։ Ամենակարող զօրութիւն էր յիւրում գոյութեանն, և է առ 'ի զօրացուցանել զանզօրս 'ի մարտս հոգևոր պատերազմիս յերևելիս և աներևոյթս լինել։ Կենդանի երանութիւն սիրոյն իւրոյ էր, և է բոլորաքամամբ բարեաց

'ի խնամել և 'ի պահել զարդարս, և 'ի զղջումն ածել զմեղաւորս։ Լուսաւորեալ և փառաւորեալ սրբութիւքն էր, և է 'ի պայծառացուցանել 'ի փառաւորել 'ի նորոգել զարարածս բազմանշոյլ շնորհօք և լուսաւոր աւազանաւն։ Գթութեցն խնամքն էր, և է անպատում բարերարութբ առ խնամածութի արարածոց երևելի և աներևոյթ. զի հասցէ 'ի նաւահանգիստն բարեաց, աւետեացն խոստացելոց երկնաւոր կոչմանն, որ լին է կենդանի երանութբ 'ի կեանս։ Ողորմութե շնորհքն էր, և է իւր անպատում բարութբք և ամենառատ պարգևօք 'ի տալ և 'ի ցուցանել զարդիւնս մարդասիրութեն և զկոչումն ընծայութե յորդեգրութեն շնորհա։ Երկայնամիտ և ներող էր, և է քաղցրութբ և բարեբար կամօք անյիշաչար երևեալ, և ոչ ատէն զամենեան պատժէ. զի դարձեալ 'ի մեղաց կեցցեն։ Ամենասուրբ Երրորդութեն բարերարութիւքն դարմանօք իւրովք էր և առ արարածս իւր, և է յանպակաս լրութե, որ ոչ պակասի, ոչ կշռի և ոչ պարփակի երևելեօք և աներևութիւք առ ողոքանս և խոշտանկանս ըստ հնարագէտ մատակարարութեն։ Զի զշահաւորն և զօգտակարն ստացին արարածք իւր. և զեկամուտն 'ի բանաւորս և 'ի մտաւորս ածցէ 'ի լաւագոյնս ամենիմաստ էութեն իւրոյ և 'ի ժառանգութի կենացն, քաջաւէտք առաքինութբք պսակեալ յարքայութեն երկնից։

Ո՛յապիսի յուսով հաւանել և հնազանդել՝ որոց աշակերտ եղև ածային վարդապետութեն, որ բարին է և հաճոյն և կատարեալն. զի մշտնջենաւոր և անեղծ կենացն հասցէ, որ էն և է և կայ յանբաւութեն իւրում. և բարւոք բարերարութբն իւրով խնամէ զարարածս ամ. որ աննուազն է և անբաւ և անսահման. որ 'ի վեր է քան զարարածս ամենայն անքննին մեծութբք և փառօք. որ կենաց և փառաց և լուսոյ է տուող ամենաշահ կենարար երանութբքն։ Նմքն յինքենէ բաւական առ ամենեսեան. որ արդարացուցանէ և լուսաւորէ և փառաւոր առնէ։ Որ է Հայր միածնի Որդւոյ և բղխումն Հոգւոյն սրբոյ։ Եւ նոցա բարերար կամօքն և ամենաշահ սիրովն ժա-

ուանգաւորս առնէ զմարդիկ անմարմնոցն դասուց և արքայութենն երկնից և անապառ բարեացն ։

Իսկ պատիր խաբէութ՟ի ստութենն բանսարկութ՟ե, ուսուցի կորուստ ոչ էր 'ի սկզբանն՝ մինչ ոչ էր մոլորութենն յառաջագայիլ և վրիպեցուցանել 'ի չարն ։ Եւ այժմ ոչ զօրէ ատելեացն զչար, որ լսէ աւետաւոր քարոզութենն և հաւատոյ, և վերստին ծնանի 'ի Ջրոյ և 'ի Հոգւոյ, և այլ ոչ ևս դառնայ յապականութ՟ի և յապաշխարելոյ պէտս ։ Մահ ոչ էր, մինչ մեղք ոչ էին. և այժմ լուծեալ է լուսաւոր Ք՟սի յարութ՟ն, և անարգի 'ի սրբոցն ա՟յ ։ Ամենապատիր խաբէութ՟ի և խորամանկ կեղծաւորութ՟ի և ամբարտաւանութ՟ի ոչ էր նախկին, մինչ ոչ էր բանսարկեալ սատանայի. և այժմ տկար է և ոչ է յերևել Ճըշմարտութենս ։ Անհաւատութ՟ի և ցանկութ՟ի չարեաց ոչ էր 'ի սկզբանն, մինչ ոչ էր հակառակասէր ա՟ծամարտն 'ի վայր կործանեալ. և այժմ ոչ է յերևել հաւատոցն և օրհնացն ընդդրութ՟ե և ա՟ծասիրութ՟են ցուցումն ։ Անհնազանդութ՟ի և ստահակութ՟ի ոչ էր նախ, մինչ ոչ էր անհաւանեալ ա՟յ սատանայ և մարդն. և այժմ ոչ է 'ի հնազանդել Ք՟սի մերոյս, և ուղղել զմեզ 'ի նոյնս ։ Խաբէութ՟ի և նենգութ՟ի ոչ էր նախ, մինչ ոչ էր խորամանգեալ չարն. և այժմ ոչ է 'ի Ք՟սի Ճշմարտեալ ։ Նախանձ և քէն ոչ էր, մինչ ոչ էր մախացեալ չարն և 'ի քէնս մտեալ. և այժմ ոչ է ըստ Ք՟սի քաղցր և աննախանձ կամացն 'ի մեզ շնորհացն ։ Ատելութ՟ի և բարկութ՟ի ոչ էր, մինչ ոչ էր 'ի չարէն և 'ի մէնջ լուեալ. և այժմ ոչ է ըստ բազում սիրոյն հեզոյն և մարդասիրի փրկչին ։ Ամբարտաւանութ՟ի և անձնասիրութ՟ի ոչ էր, յորժամ ոչ էր հպարտացեալ չարն և պարտաւորեալ զմեզ. և այժմ ոչ է յերևել խոնարհին և զմեզ սիրողին, յասելն, «Ուսարուք յինէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ. և գտջիք հանգիստ» ։ Ցասումն և Թշնամանք ոչ էր նախ. և այժմ ոչ է, յորժամ գութք ողորմութ՟ե շարժի 'ի խնամս ։ Անյագութ՟ի որովայնամոլութ՟ե և ագահութ՟ե ոչ էր. և այժմ ոչ է պարկեշտից սրբոց և արհամարհողաց զերկրաւորս ։ Անժոյժ աղտեղութիւք ոչ էին, մինչ ոչ էր մաքրութեն

լուծեալ. իսկ յորժամ ծագեցին սրբութիւք սրբութեց ածայլին շնորհացն, լուծաւ գարշութիւն ախտի :

Եւ ամ մեղք և անխնայ չարութիւք երևելիք և աներևոյթք ոչ էին գործակցաւն իւրեանց սատանայիւ 'ի սկզբանց անտի. այսոքիկ յետոյ 'ի ներքս մտին 'ի հակառակորդէն՝ որ 'ի նոցայն զմեզ ընկեաց. և այժմ ոչ է յորժամ կենարար գառնն նուիրեցաւ պատարագ 'ի վերայ խաչին վասն քաւութեան մեղաց և հաշտութեան Հօր ընդ արարածս. և վերստին ծննդեամբ աւազանին և փրկական խորհրդովն, որ կենագործեաց զհաւատացեալս 'ի սուրբ Երրորդութիւն : Եւ զամբարիշտս, զհպարտս և զամբարտաւանս կործանեաց, և բարձրացոյց զխոնարհս առ հաւատչեայ յուսովն : Եւ լուծաւ եկամուտ մեղքն, և այն՝ որ զիշխանութիւն մահուն ունէր, այսինքն է սատանայ : Զի կեցուսցէ զմեռեալսն 'ի նմանէ 'ի նորա կամսն՝ երևելի շնորհօք և մարդասիրութեամբ իւրով :

Յորոց բազումք երևեցան ընդ իւրք 'ի սկզբանէ վկայք կենսաբեր գալստեանն, որ նորոգեալցն է 'ի յԱբելէ արդարոյ. զի զանուն արդար յանարատ վարուցն առաւ : Որպէս Ենովս յուսովն, և Ենովք հաճոյից այ և փոխելովն, և Նոյ կատարեալ արդարութեամբն, և Աբրահամ հաւատովն, և Իսահակ աւետեացն Որդւոյն այ, և Իսրայէլ տեսող մարտի առաքինութեան, և Յովսէփ պարկեշտութեամբն, և Մովսէս օրէնսդրութեամբն, և Դաւիթ ուղիղ և հեզ՝ թագաւորութեամբն : Նա և այլ սուրբ մարգարէքն և մակաբայեցիքն և երեք մանկունքն 'ի հնացին մինչև ցՅովհաննէս՝ որ ճրագն էր արեգականն արդարութեան, որ լուսաւորէ զամ մարդ եկեալ յաշխարհ լուսով ածգիտութեամբ և իմաստութեամբ և արդարութեամբ՝ Քս փրկիչն, որ եկն յաշխարհ փրկել զմեղաւորս, և լուսաւորեաց զհաւատացեալս զիւրոս բարերար կամօք արարչին մերոյ, պտղաբեր լինել ըստ արդարութեան օրինացն և իրաւանցն և հաճոյից տէրութեան ամենակալի : Եւ արքայութեան յուսովն անարատ վարուք

¹ Մխւան հեղոսլ :

ընկճանալ 'ի կետ վերլին կոչմանն . և լիցուք կատարեալք, որպէս և Հայրն մեր երկնաւոր կատարեալ է։

Որ խնամօք բարերարութեան իւրոյ լնու զամ արարածս, և յորդորէ զամ միտս 'ի գործակցութի բարերար կամացն։ Որ յերկնից յերկիր խօսէր զբարերարութիւն՝ զդարձ ապաշխարութե մեղաւորաց. խոստովանելով զյանցանսն, և զզջանալով վասն որոց գործեցին, և պտուղս արժանի ապաշխարութե առնել. որ զզօրս հրեշտակացն ուրախացուցանէ ըստ բանին տն։ Զի եթէ վասն միոյ մեղաւորի որ դառնայ յապաշխարութի, ուրախութի է հրեշտակաց 'ի յերկինս, զի՞նչ պարտ է վասն արդարոցն ասել, առաքելոց և մարգարէից և մարտիրոսաց և վարդապետաց և ճգնաւոր[1] կուսանաց և պարկեշտ ամուսնացելոց. որ ոչ ունին զաղտեղի շարժմունս և զվնասակարս ոգւոց, և զամբարտաւանութի և զբարկութիւն, զատելութի և զնախանձ և զորովայնամոլութի. և մշակել 'ի ջանս բարեպաշտութեան և խլել 'ի միջոյ զչար սովորութիւն յորդորմամբ սուրբ սիրոյն որ սիրեացն զմեզ։

Ոչ ի սատանայութի ոչ էր, մինչ ոչ էր հակառակեալ չարին բարւոյն։ Զի յետ վեց աւուր՝ մինչ ոչ էր ստացեալ զամբարշտութե զմիտս, վկայի 'ի տեառնէ՝ թէ զամ զոր արար ած, բարի են յոյժ. զի թէ 'ի բնէ չար էր, ոչ զբարւոյ վկայէր ածն ամենակալ։ Եւ յաւետարանսն 'ի տնէ առ աշակերտսն ասի. «Ո՞չ ես ընտրեցի զձեզ երկոտասանս. և մինդ 'ի ձէնջ սատանայ է»։ Զի ոչ զրպարտեաց զնա արդարն դատաւորն նախ, մինչև եղև երևոյթ չարին և չար կամաց շարժեալ 'ի չար անդր. և ապա զսատանայ անուն առնու և քակի 'ի սուրբ պաշտամանէն, և 'ի կենդանարար սիրոյն որոշի, և անյոյս լինել՝ 'ի մահ զինքն ձգէ, որպէս դևքն 'ի ծովակն խողիւքն, որք ասէին «Զի՞ կայ մեր և քո, Որդի այ. յառաջ քան զժամանակն եկիր կորուսանել զմեզ, սուրբդ այ»։ Գիտեն և նոքա զժամանակս դատաստանին իւրեանց և մեր, և ըստ արժանեաց զհատուցմունս անօրինաց և

1 Մերն ճգնաւորաց։

տնհնազանդից, անսրբոց և պղծոց։ Զի սատանայ ոչ էր, մինչ ոչ էր ամբարշտեալ. և այժմ անզօր է ըստ ասելոյն տեառն՝ թէ «Իշխան աշխարհիս այսորիկ դատապարտեալ է, և ընկեցի արտաքս»։ Զի խաւար ոչ էր և ոչ է. զի ստուեր է տարերց և ոչ էութի ինչ։ Զի ածուղ սեաւ է քան զստուեր և որ այլ ինչ սևութիւնք իցեն. և 'ի ծագել արեգական և լուսաւորացն նոյնպէս կան սևութիքն։ Բայց ստուեր որ է խաւար, 'ի գալ լուսոյն լուծանի և ոչ ևս կայ ընդդէմ։ Եւ մահ ոչ էր, մինչ ոչ էր պարտական լինել մեղօք. և այժմ ոչ է'ի յայտնել կենաց և յարութեն որ 'ի մեռելոց. և երկոքին հրաժեշտ առին մահ և խաւար 'ի ծագել լուսոյ և 'ի գալ կենացն։

Այլ այս ամ յօրինուածք իւրաց և օրինաց 'ի տեառնէ են։ Եւ յաղագս այսորիկ որ քաջքն և պիտանիքն իցեն, պսակին ըստ լաւութե առաքինութեն, և թագ 'ի գլուխ մոցեն 'ի հանդիսան լուսոյ և կենացն յաւիտենից։ Եւ որ վատքն իցեն և ծոյլք և արհամարհոտք այ պատուիրանին, ընկալցին զպատուհասիցն պատիժըս յանշէջ հուր գեհենին՝ որ կազմեցաւ նոցա։ Զի առանց երկբրանաց է արդար դատաւորին իրաւունք, որ առաջի Ճշմարտութեանն փակեալ կան երկոքին կողմանքն լաւացն և վատթարացն, որ փառացն է յոյս՝ և որ թշուառութեն և տանջանացն ակնկալութի։ Եւ երկաքանչիւրովքն խրատէ. բարեաւն յորդորէ և ահիւն զկծեցուցանէ, զի մի ոք զրկեսցի յաւիտենիցն խոստացելոց։ Զի զերկոսին կողմանսն սիրովն խնամէ. զքաջսըն՝ զի մի յերկուանացին 'ի յուսոյն կենաց, և զվատսըն՝ զի ահիւ տեառն ժամանեսցեն ապաշխարութե յանկարօտ լւութի շնորհացն ընդ այնոսիկ՝ որ պարծանօք 'ի փառսն վայելեն։ Զի երևեսցին շնորհքն տեառն 'ի վերայ սիրողացն, որք ծառայեցին տեառն ահիւ և սիրով. զի ընկալեալք 'ի տեառնէ ընդ մեծարեալսն և ընդ փառաւորեալսն, որդէգրութեն արժանաւորեալք, յանապառ բարիսն Քսի վայելեսցեն ընդ ամ սուրբս։ Զի ամենակալ ամենատուրբ Երրորդութեն բարերարութեն խնամէ զարարածս ամենագիտ սիրովն իւրով և ամենաշահ հրախտօքն իւրովք և անփոփոխ Ճշմարտութեամբն՝ որ յերևելիս և որ

յանհերևոյթս ուղղէ, և ոչ Թողու քայքայել որ'ի մեզ բարին մատակարարի 'ի մշտնջենաւորն: Ջի անեղծ է և անապական. ոչ ինքն փոփոխի, այլ զայլսն փոփոխէ 'ի լաւն. և զկենդանութի ստեղծուածոց զարմանալի յօրինուածովք իւրովք՝ և զչգոյսն 'ի գոյ երևելի ածէ, և զանարգսն առնէ պատուականս իւրովք յարգանօք և հանդիսիւք լաւութե̃ն 'ի գործ անդր. և զանյարմարսն յարմարէ պէսպէս յօրինուածովք 'ի բարիսն. և զվրիպեալսն յերկմտութե̃ փոխէ 'ի հաւատարմութի իւր. և զստութի և զերդմնահարութի զմեքենայս չարին ածէ 'ի ստուգութի:

Նաեան կազմեաց ա̃ծայինս խրատուց սուրբ գրովք 'ի լուսաւորութիւն ա̃մ̃ անձին. հնարագիտութեամբ կենդանարար և կատարեալ իմաստիւք բարւոյ մասինն հաղորդել: Եւ զերկամուտ քաղն չար կամացն և չար խորհրդոցն և չար գործոյն խլել խոստովանութե̃: Եւ զխոպանացեալ միտսն 'ի ծուլութիւն և յարհամարհանս՝ ուղղել և 'ի գործ ածել բարւոյ և զգուշանալ և զգաստանալ: Եւ զկամակորութի մտացն և մարմնոցն ածել 'ի հնազանդութիւն հոգևոր կարգաց և կրօնից. խլել և 'ի միջոյ 'ի բաց բառնալ զչար սովորութի ահիւ և սիրով: Եւ զն̃մ շարժմունսն յածայխնան բերելով, և'ի շահ եղբարց մեծաւ Ճգամբք և վաստակօք մշակել յառաքինութիս. և ցուցանել զհանդէս մտերմութե 'ի կանոնս և անազանս, որպէս զի երևեսցի պտուղ բարի: Որպէս լոյս ոչ փոխի 'ի խաւար՝ այլ զխաւարն լուսաւորէ, և ոչ կեանք 'ի մահ այլ զմահացեալսն կենագործէ 'ի տէր, այսպէս զանարգսն Թողուլ և զլաւն մեծարել շնորհօք ամենակալին, երևեալք որպէս լուսաւորք յաշխարհի՝ զբանն կենաց ունելով յանձինս և յառաջնորդութի բազմաց՝ և կեալ անբիծ:

Ի հանդէս բարեպաշտութե ցուցանել զայս ևս ժամանակս ըստ արդարութե կարգացն, անարատ սուրբ և ճշմարիտ վարս ստացեալ գործակցութե̃ բարերար կամօք արարչին: Մտերիմ և քաջախորհ հաւատով զանարժան իրս հալածել և արժանաւոր օգտիւք զշահսն ժողովել, ուստի անուն քաջութե և պարծանաց յերկրի Թողուլ. և յերկինս ամբարել ըղ-

յաւիտենականն՝ ուր փառք և անսպառ բարիքն պատրաստեալ կան յուսացելոցն ։

Որք զաստիսս արհամարհեցին , կենդանարար սիրովն և անձառ երանութեքքն յուսով որ 'ի տէր՝ և վայելուչ ազատութեան թագաւորեալք 'ի փառս բարձրելոյն , և առ ընկուսին թշնամւոյն և 'ի բարձրանալ ընդրելոցն ։ Որք հաւատով պարտեցին սատէն զհանապազորդ թշնամին , և անդ զուարճացեալ ընկերին անանց ուրախութեքքն և անձառ բարութեքք որ են 'ի Հայր և յՈրդին և 'ի Հոգին սուրբ ։ Ուստի մերժեալ են տրտմականք ն͞մ , և ընկեալ են պէսպէս բարիքն՝ որ կան և մնան 'ի վայելումն կենացն անվախճանից ն͞մ որբոց ի͞ւ ըստ երանութեան սիրոյն սրբոյ , 'ի կոչումն հրաւիրանաց ուրախութե հարսանեացն ։ Որք ըստ կամաց երկնաւոր Հօրն պատրաստեցին զանձինս , որք և պսակին լուսաւոր պսակօք 'ի գովեստ փառացն ի͞ւ յանվախճան խնդութիւն ։ Այս առեալ զառհաւատչեայ յուսոյն կենաց , և անդ կարգեալք ընդ երախտաւորսն 'ի ժառանգութի արքայութեն երկնից ։ Այս ազատեալք յամօթոյ անարգանաց , և անդ 'ի վշտաց սպառնալեաց արդար դատաստանին 'ի պատուհասից տուժից և տուգանաց դառն տանջանացն ։ Եւ գգուեալ արդար անուամբ սուրբ և ճշմարիտ պարգևօքն մեծացեալ , և յարգանօք և պատուով փառաւորեալ պարծանօքն , և այնպէս զերծեալք 'ի սպառնալեաց գեհեննին և տանջանացն . հաւատացեալ 'ի բանն՝ որ 'ի վերայ ամբարշտաց և մեղաւորաց ասացաւ 'ի տեառնէ . « Երթայք , ասէ , անիծեալք յանշէջ հուրն յաւիտենից , ուր լալ աչաց է և կրճել ատամանց . որ պատրաստեալ է սատանայի և արբանեկացն նորա » ։ Եւ առ հաւատարիմսն ասէ . « Եկայք օրհնեալք Հօր իմոյ յարքայութիւս , որով 'ի սակաւուդ հաւատարիմ եղէք , 'ի վերայ բազմին կացուցից զձեզ . մտէք յուրախութի տեառն » 'ի մշտընջենաւոր կեանսն ընդ սուրբ հրեշտակս առ թագաւորն փառաց , որ ասացն . « Ուր եսն եմ , անդ և պաշտօնեայն իմ եղիցի » ։ Որ կենդանի ուրախութեն ուրախ առնէ զսիրելիս իւր ըստ իւրաքանչիւր վաստակոց ։

Օ՜ի խուրեանց ճգամբք մեծացան 'ի տեառնէ յանպատում յանքննին յամենագիտ սիրոյն ժառանգութե, յանմահ և յանհամեմատ յանմահն և յանկշիռ լուսոյն ժառանգութե. զարթուցեալք[1] յերկրաւոր իրաց և 'ի զբօսանաց մարմնաւորաց. զմտաւածել զհնարս զամենագիտաս զգուշութե և զգաստութե, որ 'ի յերկրի. զտիւ և զգիշեր անհատ խնդրովք ընդ տեառն զարմանալի լուսաւոր գեղն առնուլ ջերմեռանդն սիրով և յիշատակօք խոստացեալ որդէգրութեն. անձկաւ 'ի նորա բարիսն փափաքել, և գրաւել ևս ընդ իւր զկամս շարժմանց մարմնոյն: Հիւթ առեալ 'ի տեառն սուրբ օգնականութենն՝ զի անարատ կայցեն. արտաքոյ լինել քան զամենայն ծուփս մարմնաւորս, և ներքոյ վարագուրին մնալ սուրբ և անարատ 'ի հոգևոր օրինացն պահպանութե, ամրացեալ և զգուշացեալ 'ի կամս տեառն: Եւ սուրբ զգաստութե զարթուցեալ 'ի վերին կոչմանն աւետիս, առնուլ զգրաւական սիրոյն զմխիթարութե անարգել սուրբ շարժմամբք: Եւ բորբոքմամբ սիրոյն յորդեալք 'ի կեանս անուշակս կենդանարար բանին, հաղորդութե սուրբ խորհրդոյն, յիշատակօք անճառելիցն, նայել ընդ գեղ խոստացելոց աւետեացն: Որպէս զմեղուացն է իմանալ. որ 'ի ծաղկանցն զկարևորսն 'ի մեղուոցն բերեն, և նոքօք գործեն զքաղցրութի զանուշացուցիչ ամ դաժանն և դառն ճաշակաց: Այսպէս և 'ի կենարար խրատսն ժրացեալք, և յայնցանէ ընկալեալք զօգտակարսն իմաստութեամբ, առաջնորդեալ յամ բարեգործութիս առ 'ի պատրաստութի հաւատոց և ճշմարիտ սուրբ վարուց. քաղցր յուսովն ընթանալ զանմոլար ճանապարհն՝ որ տանի 'ի կեանսն յաւիտենից, և հասանել յօթևանս կենացն 'ի դուռն փրկութե: Մեծաւ ցանկութե և սաստիկ ծարաւով ճաշակել զանուշակս քաղցրութեն զբարերարին զխընամսն, և 'ի նոյին վայելել միշտ զանճառսն մտաւոր իմաստութեն 'ի քս, սուրբ խանդաղատանօք 'ի նորոգութիւն մերձեցեալ: Ընկալեալ զառհաւատչեայ կեանսն, և 'ի նոյին կալ մնալ անկարօտ յերանութեան

[1] Միւսն զօրացեալք:

անսպառ միշտ յանձնառումն և յանբաւումն լինել. անձանձրոյթ զուարթութբ յափշութենէ [1] աշխարհիս զբօսանաց, որ շարժէ զմիտսն 'ի մոլորսն, և զմարմինսն 'ի հարուածս ցանկութեն. որ ամօթոյ և անարգանաց արժանի է 'ի պատիժս:

Այլ պարտ է 'ի յերկրի ուշ ունել և զվերինսն խորհել պատրաստութբ հաճոյից նմ: Ի վեր ունել զմիտսն առ այն՝ որ 'ի վեր քան զվերինս [2] և զներքինս է. որ պատճառք է մեր կենացս և փրկութեն. որ գործակիցս արար զմեզ իւր բարերար կամացն առ 'ի գիւտ կորուսելոցն և առ 'ի պահպանութիւն լաւացն: Եւ առաջնորդել 'ի բարիսն, և մերձաւորս առնել զհեռաւորս, և ընդանեցուցանել զօտարս. խնամօք մարդասիրութբ հովուել ամենեցուն 'ի փրկութիւն և 'ի կեանս հեռաւորաց և մերձաւորաց: Պատրաստ ունել զկամս 'ի սպասաւորութիւն եղբարց առ ամ պէտս բարւոյ: Մերկանալ զցանկութիւս չարին և զամ վնասակար խարդախութիւս: Սուրբ սրտիւ և անբիծ վարուք և ուղիղ հաւատով ըստ ամենայնի յառաջանալ 'ի տէր, և սիրել զնա 'ի բոլոր սրտէ, և անքակ կալ 'ի ծառայութիւն նորա սուրբ. և 'ի նորա քաղցրութենէն լուսաւորել զամենայն զգայարանս, որպէս երկիր յարեգական ճառագայթից: Սոյնպէս և յիշատակք նորա փակեալ և ամրացեալ 'ի խնամակալ սիրոյն և նորա տեսմանն կցորդ լինել սրբոց 'ի լաւ անդր յորդորելով: Օգնական ունելով միշտ զշնորհս բարերարին. և յամենայնի գոհանալով օրհնել միշտ զամենակալն և զտուողն բարեաց Ած, և փառս տալ՝ որ արժանի արար գործակից լինել իւրոյ բարերար կամացն:

Եւ մեք ցուցցուք 'ի նեղութեն և յանդորրու զհանդէս մտերմութեն մերոյ առ տէրն. և նա անսուաղ զիւր շնորհսն պարգևէ. զի զամցուն կամի զկեալ և ժառանգաւոր լինել անանց փառացն և մեծութեն որ 'ի Քս Յս 'ի տէր մեր: Եւ մեք որ նովաւ եղեաք փրկեալք իւրաքանչիւր վաստակօք և առաքինութբ և սրբեալք 'ի չար ցանկութեց, և առիթ լինել բազ-

1 Այլումն յափշտակութենէ:

2 Այլումն վերինս:

մեզ փրկութիւն, և ճշմարտեալ[1] վարուք փոխել յերկ-
րէ յերկնաւոր հանգիստն յանուշակ յարքայութիւնն,
միշտ ընդ Քրիստոսի լինել և 'ի նորա երանելի բարութեանն
վայելել։ Եւ որպէս անդամօք կանգնի հասակ, այս-
պէս բարի գործովք կանգնին հաւատք, և հաւատով
սատուցի յոյս, և յուսովն հանդէպք։ Եւ այնպէս յոր-
դորել յաստուածայինն սէրն, ընդունել զշնորհս Հոգւոյն
սրբոյ և 'ի վերագոյնս լինել երկնայնոցն, անմահից
կենացն լինել ժառանգորդ. 'Ի քնակարանս որբոցն 'ի
կենարար սէրն ծաղկեալ գեղեցկագոյն փառօք յան-
ճառելիան 'ի մշտնջենաւորան՝ փառաւորել միշտ զա-
մենասուրբ զերրորդութիւն յաւիտեանս յաւիտենից.
ամէն։

1 Միւսն ճշմարիտ։

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՎԱՍՆ ՅՕՐԻՆՈՒԱԾՈՑ ԱՐԱՐԱԾՈՑ

### Է

ՅՈՐԺԱՄ բազմացաւ իմաստութիւն յաճումն չափոց հաստակեր արարածոց, և եհաս տղայութիւն յայր կատարեալ, զի բաւականասցի լսել բանիցն ճշմարտութեան, որ պիտոյ եղև քարոզութեան մարգարէիցն զանմահալար գիտութիւն սփռել 'ի լսելիս մարդկան. զի հաւատով ընկալցին զանմահալար իմաստութեան զխորհուրդն, և գիտութեան արարչին և հաճոյիցն տեղեակ լիցին, 'ի ձեռն ճշմարիտ հոգւոր օրինացն և պահպանութեան պատուիրանացն անմիտս կալ առ դժնդակ վարս, և հանդիսանալ 'ի բարի վարս, և պատճառ օգտից լինել հեռաւորաց և մերձաւորաց 'ի փրկութե։

Իսկ այս ամ յանհաս իմաստութէ արարչին մատակարարի յարարածս ամ. որ լուսաւոր ճառագայթիւքն զիմանալիսն լուսաւորէ. զի նորոգեսցէ զզգայարանս հոգւոր խորատուն. զի անկորուստ պահպանեսցի ածային կամացն հաճոյութի։ Եւ արդարակշիռ իրաւամբք յառաջանալ 'ի հանդէսն բարեաց. վկայ լինել արդարութեան և ճշմարտութեան աւանդիցն։ Եւ այս ամ 'ի շինութի հոգւոր մասինն ժառանգաւորաց արքայութեան երկնից, և կարգաց աշխարհիս երևելեաց և աներևութից. և տեղեակ լինեալ ամ լաւութե կարգաց, և բնութե արարածոց հաստատ լինել։

Զի կարգեաց ած զաշխարհս որպէս դպրոց. զի ուսցին արարածք զխնամս արարչին յանձինս և 'ի կազմելն, և միշտ նախախնամութբ նորա դարմանեալք որ երևին և որ ոչն երևին։ Զի յոչընչէ անտի սկիզբն արար միոյն՝ և ած մինչ 'ի հազարս և 'ի բիւրս զբիւրաքանչիւրսն. զի լաւութեամն հանդիսիւք առա-

քինեացեն։ Եւ 'ի գլուխ ելեալ ամ վարքն առաքինութեան, 'ի վախճանի աշխարհիս պարգեւէ զանմահութեան զպարգեւսն յանփոփոխելի եւ յանհամեմատ յածեղէն մշտնջենաւոր արքայութեան երկնից 'ի Քս։ Զի նախ 'ի սկզբան զմտացն խնդրէ զուղղութիւն օրինադիր բանն. եւ ապա 'ի մշակութի կացուցանէ առնել զօգտակարսն, եւ 'ի բաց կալ 'ի վնասուց։

Նա եւ զքննուածն արարածոց յօրինեաց որպէս զգիր դպրութեան եւ եդ անուանս, զի անուանքն զքննութիւն տայցեն զգրոյն 'ի միմեանց զորոշումն. եւ զգիրն զբարս անուանն կարդացէ։ Զի երկուս երկուս յօրինեաց, զի մին միւսոյն քարոզիչ իցէ. եւ բնութեանցն երկուց՝ երկու անուանք պիտոյանան, որ որոշեն զնոսա 'ի միմեանց. եւ անուանցն՝ բնութիւքն պիտոյ են, որ կայքն ունէին զանուանսն. զի «Էր, ասէ, աներեւոյթ եւ անպատրաստ երկիր ամիւ»։ Եւ սկիզբն արարեալ[1] բանիւ յօրինել զարարածս, կոչեաց, ասէ, զլոյսն տիւ, որ յայտնիչ է արարածոց կազմածոց. զի զոր բանն յօրինեացէ, լոյսն զյօրինուածսն ցուցանիցէ. զի աներեւոյթն եւ անկազմն ծածկեալ ունէր որպէս խաւար զերկիր։ Որպէս կոչեաց զլոյսն տիւ, սկիզբն արար կարգելոյ պատմութեան, զի 'ի թիւ անկցին։ Եւ եթէ ոչ էր խաւար, լոյս իւր անուանէր տիւ, եւ կամ խաւարն գիշեր։ Դարձեալ քաղցր եւ դառն ասէ՝ որ համահամ[2] քմացն ճաշակի. եւ յանուանէ որոշի քաղցրն եւ դառնն. եւ այս 'ի տեսչութէ արարողին է հաստատեալ։ Եւ լոյսն զմարդիկ յորդորէ յամ պէտս օգտի. զի ամ գիւտք աշխարհիս՝ գործոց կամ արուեստից՝[3] իւր աշխատութեան գինք իցեն աշխատութի. եթէ դարբնութի, եթէ մշակութի, եթէ ճանապարհորդութիւն եւ եթէ այլ ինչ պէսպէս արուեստք շահից, զոր ետ ած 'ի պատիւ անձնիշխան կամացն որպէս որդւոց 'ի խնամակալութի. եւ զգիշերն ետ 'ի հանգիստ քնոյ՝ դարման աշխատութեան, զի տկարութիւնն զօրասցի, եւ նորոգեալ հանգըստեամբն անդրէն 'ի տիւն դարձցի 'ի գործսն՝ որ օ-

1 Միւսն նորգէալ։
2 Միւսն 'ի համահամ։
3 Միւսն արուեստից աշխատութիւնք է, իւր աշխատութեն գինք իցեն 'ի լուսանցսն գիտաք իցեն։

գուտ և շահ ստանայ։ Որպէս քաղցրն և անուշն և դառն և կծուն 'ի պէտս բժշկաց տնօրինելին, և որ այլն եւս։ Որպէս զհամեմոցն է գիտել առ զանազան խորտիկսն անուշել. զի սոքա յարգեսցին նոքօք, և նոքա սոքօք։

Այլ և անուանս ունին. զի որպէս հանգիստ և աշխատութիւն կարօտ են միմեանց, զի աշխատութեան շահիցն 'ի հանգստեանն վայելեսցէ, այսպէս է իմանալ զամ խառնուածս արարածոց 'ի միասին։ Որպէս ցուրտ և տօթ, որ միմն զովացուցանէ և միւսն ջեռուցանէ[1]. երկաքանչիւրոցն պիտոյացեալ գեղեցիկ խառնուածովք ըստ բարեաց արարողին՝ և ոչ 'ի պատիժս ինչ շարժեալ 'ի սահմանէն. զի «Սահման եդ, ասէ, որ ոչ անցանենն»։ Զի մարդ հնարագէտ է 'ի խնամակալութեան արարչին առ 'ի պէտս իւրոյ փըրկութեան և վայելելոյ 'ի բարութիւն անձնիշխան կամօք։ Զի որպէս որդի 'ի հօր խնամս վայելիցէ. և ոչ որպէս ծառայ ընդ հարկօք, որպէս և այլ արարածք իցեն։

Դարձեալ օդք՝ են որ ցամաքեցուցանեն, և են որ խոնաւեցուցանեն զերկիր և զծովս. են որ յօգուտ մատակարարին, և են որ 'ի վնաս, ըստ նախախնամութեան այ 'ի միմեանս խառնեալ. այլ և անուանս ունին։ Սոյնպէս և առողջութիւն և ցաւք. զի առողջութիւն 'ի գործ մշակութեան առաքինութեան յորդորէ և յարուեստս շահիցն. և ցաւք՝ բժշկաց կարօտին այ և մարդկան։ Այլ և համբերութեամբ զթողութիւն սխալանացն գտցէ, և վարձս եւս, որպէս և Յոբ. և 'անուանս եւս ունին։ Սոյնպէս տրտմութիւն և խնդութիւն յորժամ ըստ իրաց աշխարհիս իցէ, մահ և ապականութիւն գործէ. իսկ ըստ այ լինել, մխիթարութիւն ընձեռէ, և յուսով զխնդութիւն ըստ խոստացեալ բարեացն. և անուանս ունին։ Սոյնպէս լռութիւն և կարօտութիւն միմեամբք յարգին[2]. զի լռութիւն կարօտութեամբն վայելէ, և կարօտութիւնն զհանդէս ժուժկալութեան ցուցանէ, և ժրութիւն մշակութեամբն ամենարուեստ. և միաբանեալք օգուտս ունին և անուանս

1 Միւսն ջեռուցանէ։ ըստ աստիճանի հասանելոյ միւսոյ օգնեա-
2 Մերն յորդորէն. եզաւ ըստ կէն։

ըստ երեւմանցն ։ Սոյնպէս երկիւղ և անհոգութի̃․ զի երկիւղ անհոգութե̃ ցանկայ, և անհոգութի̃ երկեղըն․ որ զգուշացուցանէ 'ի կամս մեր, և ոչ թողու յապիրատութի̃։ Եւ 'ի միմեանս խառնեալ ըստ պատուիրանին՝ զօգտակարսն 'ի մեզ ամբարեն ըստ անուանն կոչմանս։ Սոյնպէս փառաւորութի̃ և անարգութի̃ միմեանց տեղի տալով 'ի սահմանին կան մնան․ այլ թէ եղանեն ըստ չափոյն, վնաս առնեն 'ի հոգեւորս և 'ի մարմնաւորս․ որպէս և ամենեցուն քաջայայտ է այս․ և յանուանցն ծանիցուք զիրսն։ Սոյնպէս և բարիք և պատիժք ոչ են մի, և երկոքին պիտոյանան․ մին յորդորէ 'ի բարի գործս, և միւսն զհամարձակեալն 'ի մեղս արգելու․ և խոշտանգանօք լուծցեն զվարսն և դարձցին 'ի լաւն։ Եւ բարեգործք մի մոռասցին զբարերարսն և զերանելի ժառանգութիւնսն և զաւետիսն խոստացեալ, որ առաւելու 'ի բարիսն․ և այնպէս զանուանսն առնուն։

Եւ ազատութի̃քն ազատ են 'ի մէջ մեղաց և փառաւորեալ յամի․ և նկուն մեղքն 'ի մէջ արդարոց․ զի ցանկացեալ արդարութե̃, և յիշեսցեն զապանալիս մեղաւորացն, և փութասցեն յապաշխարութի̃ խոստովանութե̃, և ապրեսցին 'ի բարկութե̃ն որ գալոցն է 'ի վերայ անօրինաց և անհնազանդից, անսրբոց և պղծոց․ և լիեալ յարդարութե̃՝ կեցցեն ։ Իսկ արդարքն որ ունին զառհաւատչեայ ազատութի̃ն որդէգրութե̃ն 'ի Ճշմարտութենէ անտի՝ յաւելցեն յարդարութի̃ն, զի լցցին կատարեալ որպէս և Հայրն երկնաւոր․ և միմեամբք զանուն առին։ Եւ տնանկութի̃ կարօտ է մեծութե̃, որ զեղու 'ի նոսա զլիութի̃․ և մեծութի̃՝ կամաւոր տնանկութե̃, որ ամբըծութե̃ և անարատութե̃ հասցէ անանց մեծութե̃ն։ Այլ և արդարակորով մեծութե̃ն ոչ զրկի 'ի մշտընջենաւոր մեծութե̃ն․ որ միմեամբք զանուանսն առին մեծութե̃ և տնանկութե̃։

Եւ տկարութի̃ և զօրութի̃ ձեռնտու լիեալ միմեանց՝ գովելոյ արժանի են։ Զի տկարութե̃ զխոնարհութիւն և զքաղցրաբարութի̃ [1] ուսուցանէ, և

[1] Միւսն փաղ. ցրաբանութի̃ ։

յուսով կեալ առ հրաւունս արդար դատաւորին Քսի. Իսկ զօրաւորքն ճշմարտեալք՝ բերդ ամուր լինել տկարացն, և օգնական և տուիչ բարեաց, որք ընդունելոց են զանեղծութիւն և զանանց փառսն. որք միմեամբք զանուանման անունն և զհատուցումն յարարչէն:

Եւ յիմարութիւն և իմաստութիւն պիտոյ են յերկրաւոր վարս: Յիմարն զհաւանութիւն և զհնազանդութիւն առ իմաստունն ունի, գիտել առ 'ի նմանէ զլաւն. զի իմաստութիւն զառաջնորդական միտս բուսուցեալ ունի, որ խրատէ և ուղղէ յարդարութիւն, որ հաւանութիւն մնացէ յարքայութիւնն. զի յիմարն այ իմաստնագոյն է քան զիմաստունս աշխարհիս: Իսկ այ իմաստութիւնն նախ զի սուրբ է, և ապա խաղաղարար. լի բարեօք և արդար պտղովք. որ 'ի վերինսն տանի 'ի փառսն, և ոչ ըստ օձին խորամանկեալ և պատժեալ. այլ ըստ անուանցն ծանուցեալք յանմեղութիւն իմաստիւք:

Յաջողութիւն և տխմարութիւն առ միմեանս օգուտս գործեն. միոյն շահս աջողութիւն[1], և միւսոյն կատարումն պիտոյից յոր ինչ ցանկութիւն է. Եւ երկոցունցն հարկաւոր է հաւատարմութիւն ըստ գործոց արուեստին և վարձուցն՝ որ 'ի կամս նախախնամողին լիցի, և որ զանուանումն առցէ:

Եւ կեանքն կենդանի են յարդարութիւն կեցեալ. և մեռեալքն մեղօք և տարակուսանօք 'ի մահ, որոց տանջանքն մթերեալ կան: Եւ կենդանիքն որ 'ի սէրն այ և 'ի սրբութեան և 'ի հաւատս ճշմարտութեան և 'ի յոյսն հաստատեալ կան յառհաւատչեայ կեանսն՝ զնոցայն ոչ մահ, այլ կեանք 'ի դրոց իմանալի է. և քուն, զոր Քրիստոս յարուցանէ բանիւ 'ի ձեռն հրեշտակապետացն փողոց: Որոց զբարիսն գործեալ են՝ փառք և անմահ կեանք, և որոց զչար արարեալ՝ տանջանք և անմահ մահն որ յաւիտենից: Եւ այսր ամի աշակերտ արար զմարդն, զի անձնիշխան կամօք խնդրէ զօգտակարսն և որոշէ 'ի վնասակարացն, և 'ի հարկի կալ առաքինութեանցն՝ յուսով որ 'ի տր: Զի

1 Միւսն առողջութէ:

առցեն զանուն եղբայրութեան որ 'ի Քս, և վայելեսցեն 'ի նորա բարիսն, և զերկուսին կողմանս յօդուած կազմեալ։ Զի արդարակորովքն՝ երանութիւնքն պսակին ըստ առաքինութեան. որ պարծանօք ըստ համբերութեան գովին 'ի Տնէ, և անվիշտ ունին յազատութեանն զհամարձակութիւն յիրաւանց արդարութեան. և վայելեն 'ի բարութիւնն ըստ արժանաւորութեան, և երանութիւնք պսակին։

Արար Ած զերևելի արարածս զգայականս դարմանիչ մարդկան կենաց։ Որպէս երկինք ամպովք և ցօղովք և լուսաւորօք խնամէ և հասուցանէ զպտուղս բուսոց և տնկոց։ Որ և հողմոց պիտոյանան ըստ ժամանակի հովուց և ջերմութեանց. որ սնուցանէ և անվնաս պահէ. և ջրով ոռոգանէ զերկիրս և արբուցանէ զմարդիկ և զանասունս, զգազանս և ըզթռչունս և զամենայն զեռունս և զսողունս և որ ունին շունչ կենդանի։

Այլ եթէ դառնան մարդիկ 'ի ստահակութիւն կամակար մտօք, նովին դարմանօքն որով խնամէր՝ տանջէ և խրատէ անբերութեամբ և բարկութեամբ զանդարձսն։ Զի նոյն արարածք որ դարմանիչք առնին ըստ իրաւանց վայելել 'ի բարութիւն, յորժամ յղփանայ և ելանէ արտաքս քան զսահմանն, օրինադիրն յայնժամ զնոյն դայեակ զայրացուցանէ և նոքօք խրատէ. զի սովով և նուազութեամբ ամենայնիւ յողջախոհութիւն ածէ։ Այլ և ցրտով և ջերմաւ զտունկս և զբոյսս ապականէ, և զանձրևս 'ի կարկուտ և 'ի ձիւն դարձուցանէ, և զցօղ եղեամբ վնասակար, և զառողջութիւն 'ի ցաւս զանազանս, և զխնդութիւն 'ի տրտմութիւն, և զփառս յանփառութիւն։ Եւ ամենայն յաջողուած բարեաց 'ի թշուառութիւն, և զօգտակարսն 'ի վայելել բարեաց՝ 'ի դժնդակս և 'ի վշտագինս [1] նեղութեան։ Եւ զխաղաղութիւն և զշինութիւն որ պարսպեալ ունին խնդամտութեամբ, 'ի խռովութիւն և 'ի տարակուսանս դարձուցանէ և յանհնարին չարիս. խռովութիւն ընտանեաց և օտարաց, ծառայից և տերանց և 'ի պէսպէս չար համբաւս. զի այսոքիւք դարձցին 'ի զղջումն։

1 Միւսն 'ի վշտագնի։

Ապա եթէ 'ի նոյն յամառեալ կայցեն 'ի չարիսն , և ոչ դառնան խոստովանութեամբ յապաշխարութիւն , խրատէ մեծամեծ պատժօք արդար դատաւորն ։ Որք պղծեն զսրբութիւնս անսուրբ վարուք , և արհամարհեն զօրէնս և զիրաւունս տնանկաց և զողորմութիւնս կարօտելոց , և զճշմարտութիւնն անիրաւութեամբ ունին , և անտես առնեն զարտասուս նեղելոց , և ձայնի զըրկելոց ոչ լսեն , և որ այլ ես իցեն չարիք ։ Եւ յաղագս այսորիկ մատնէ արդար դատաւորն 'ի սով և 'ի սուր և 'ի գերութիւն և 'ի կորուստ ։ Եւ որպէս ասաց տէր 'ի ձեռն օրինաց և մարգարէից դառնալ յամբարշտութենէ և ոչ լուան , և աղաղակեցին առ տէր և ոչ լուաւ 'ի նեղութեան իւրեանց , որպէս ասացաւ 'ի գրոց սրբոց ։ Զի կամք անձնիշխանականք որ ոչ գտին յիրաւունս արդարութեան և 'ի դարմանս աղքատաց և տնանկաց՝ պատժին ։

Բայց բարերարն տէր ըստ բազում սիրոյն իւրոյ որ սիրեաց զմարդիկ , խրատելով խրատէ և 'ի մահ ոչ մատնէ , և ոչ սատակէ և ոչ բառնայ զյիշատակս ստահակաց և անզգամաց ։ Այլ զի ոչ գիտացին գոհանալ զպարգևացն[1] տեառն և հնազանդել օրինաց նորա , մատնէ զփառս նոցա և զպղծութիւն 'ի ձեռս թըշուառութեան ողբոց և արտասուաց արժանաւորս ։ Զի խրատեսցին և ճշմարտեալք սրբեսցին և մտցեն ընդ խնամօք բարերարին , գործել միշտ զբարիս առաջի նորա . և 'ի բաց կացցեն 'ի դժնդակ և յանառակ վարուց , և մի՛ զերախտաւոր կարգս յապախտաւորս փոխեսցեն , և զժամանակն խաղաղութեան և անդորրութեան 'ի դառնութիւն և 'ի հարուածս չարաչար ախտից ։ Եթէ փոխեն զդժնդակ վարսն 'ի լաւութիւն , դառնայ և ժամանակն 'ի խաղաղութիւն . զի գործակից են տէրութեան խնամոց և համառօտ դատաւորութեան ։ «Փառք և պատիւ և խաղաղութիւն գործողացն զբարին , ասէ Առաքեալն երանելի . և բարկութիւն և սրտմտութիւն և նեղութիւն , ասէ , 'ի վերայ ամենայնի՝ որ գործէ զչար» ։ Արդ բարեգործքն բարեկեցիկք են 'ի բարութեան նորա , և ժառանգիչք դարմանոց

1 Միւսն զպարգևողին ։

նորա և խնամոց և աւետեացն որ 'ի Քս ։ Զի յերկ-
րի 'ի խնամս նորա վայելեն, և յուսով ըստ անսուտ
խոստմանցն ժառանգեն զանապառ բարիսն ըստ ար-
դարութեան ։ Իսկ անհնազանդքն և անառակքն գոր-
ծակից են սատանայելեացն նմա. որ փոխեն զքաղցր ժա-
մանակ խնամոց նորա 'ի դառն հատուցման տուժից
և տուգանաց և պէսպէս հարուածոց ։

Տես որչափ իշխան է մարդն. զի և զնոյն 'ի կամս
իւր ած է յառաջնեան զբարիսն ։ Զի «Ոչ կամիմ, ասէ Տէր
մարգարէիւն, զմահ մեղաւորին. որպէս զդառնալ
նորա 'ի չար ճանապարհէն և կեալ» ։ Զի արդար
դատաւոր է և ըստ արժանեացն դատի, որ ինչ գոր-
ծէ մարդ յաւուրս իւր՝ եթէ բարի և եթէ չար ։ Եւ
իշխանութիւն է մեզ փոխել զժամանակն՝ բարի գոր-
ծով 'ի բարիս ։ Եւ դարձեալ 'ի չար, եթէ մեղա-
նչելք լիցուք ։ Զի մեզ է զխոշտանգանս 'ի գգուանս
դարձուցանել. և դարձեալ զնոյն սէր՝ 'ի բարկութիւն ։
Զի ոչ 'ի բաց թողու 'ի սահմանէն. այլ նորէ, զի դար-
ձեալ զզջասցին և հնազանդեսցին ընդ ամենագութ
խնամոց բարերարին Այ ։ Զի ասէ. «Ոչ եկի կոչել
զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն. և ոչ է
պիտոյ բժիշկ ողջոց, այլ հիւանդաց» ։ Եւ դարձեալ
մարգարէիւն ասէ. «Արդարութիւն արդարոյն 'ի վերայ
նորին եղիցի 'ի կեանս. և անօրէնութիւն անօրինին 'ի
վերայ նորին եղիցի 'ի մահ, եթէ մնասցէ 'ի նմին» ։
Եւ եթէ դարձցի արդարն 'ի մեղս, մահու մեռցի. և
մեղաւորն յարդարութիւն, կելով կեցցէ ։

Վասն զարդարդատաստանն արդարոց և մեղաւորաց
'ի տնտեսնէ ։ Որպէս զիարդ և կամիմք, կարեմք փո-
խել զաւետիսն 'ի սպառնալիս և 'ի պատուհաս ։ Կա-
րող եմք և զկեանսն մեր փոխել 'ի մահ, և զմահն 'ի
կեանս. և զարկեալ սահմանն Այ որպէս կամիմք՝ շըր-
ջեմք 'ի բարի և 'ի չար. որ Այ միայն է կարողութիւն ։
Ըստ մարգարէին որ ասէ. «Եթէ ախորժեսջիք և լը-
ւիջիք ինձ, զբարութիւնս երկրի կերիջիք. և եթէ ոչ
կամիցիք լսել ինձ, սուր կերիցէ զձեզ. զի բերան տեառ-
ըն ամենակալի խօսեցաւ զայս» ։ Եւ Առաքեալ ասէ.
«Ամենայն ինչ վասն ձեր է. եթէ մահ, եթէ կեանք,
եթէ աշխարհ, եթէ անաշխարհ, եթէ բարձրութիւն,
եթէ խորութիւնք. դուք Քի, ասէ, Քս Այ» ։

Այլ զի ասաց՝ ամ ինչ ձեր է, որ 'ի կեանս իւրեանց նորա կենդանի սիրովն և կամօք յաշխարհի վարին : Զի որպէս բուրուառն որ անուշահոտ խնկովք ուրախ առնէ զմերձաւորս զմեծամեծս և զփոքունս, այսպէս դաւանութեն մերոյ հոտ և մաքրութեն բուրեսցի առաջի քոյ հանապազ : Եւ զի ասէ՝ եթէ մահ, զի մահն մեր որ վասն քոյ՝ վկայ լիցի սիրոյն նորա . այնպիսի մահուամբ փոխեսցուք յանմահական կեանսն անեղծութենն, որ 'ի քս Յս : Զի ոչ միայն այնոցիկ է պատուական մահ, որ զվկայութեանն աստիճան առին 'ի ժամանակի հալածանաց սրով և հրով և ջրով և կամ այլ[1] ազգ ինչ չարիւ, այլ ամենեքեան որ 'ի քս մկըրտեցան և զքս զգեցան, զհին մարդն մերկացան գործովք հանդերձ, և զգեցան զնորն նորոգեալ որ ըստ պատկերի այ է յարդարութեան և 'ի սրբութեն և 'ի ճշմարտութեն . որք մեռանին մեղաց, և կենդանի են միշտ արդարութենն : «Զի որպէս յարեաւ քս 'ի մեռելոց փառօք Հօր, նոյնպէս և մեք 'ի նորոգութիւն կենաց շրջեսցուք» ասաց : Զի մեռանելն մարմնով և մնաց մարմնաւորաց և կեալ սրբութբ և անարատ ըստ արդարութեն օրինաց աւետարանին քոյ, կարասցէ ասել. կենդանի եմ այսուհետև՝ ոչ ես, այլ կենդանի է յիս քս : Զի եթէ այս աշխարհ որով զհանդէս առաքինութեանս ցուցանեմք, և եթէ հանդերձեալքն, ամ նովաւ և 'ի նորա խնամս և 'ի փառս կատարի, որ զամ յամի լինու 'ի խորութեն և 'ի բարձրութեն :

Դարձեալ խորութի զտկարութի մարմնոյս է իմանալ յերկրի, և քոյին վերանալ 'ի բարիսն : Իսկ բարձրութի՝ զզօրութի հոգւոյ ըստ երկնայնոցն և անմահիցն որ 'ի քս : «Ամենայն ինչ, ասէ, քոյ ձեր է. և դուք նորա 'ի փառս Հօր և Հոգւոյն» : Յորժամ զբանս նորա պահեսցուք և մնասցուք 'ի սէրն նորա և յանարատ վարս, այնուհետև ոչ ևս է զմեզ մարմնով իմանալ, այլ հոգւով . զի որ Հոգւովն այ վարին, նոքա են որդիք այ և ժառանգակիցք քոյ : Զի եթէ չարչարանացն կցորդիմք յերկրի, և փառացն հաղորդ լինելոց եմք յերկինս, որ կան և մնան : Զի թէպէտ

1 Ոմանք այլ ազգի ազգի չարիւ :

և գիտեմք յաղագս փրկութ՟ն և կենաց, այլ արդ ոչ ևս նոյնպէս գիտեմք։ Այլ ա՟ծ ա՟մ յա՟մի անճառելի, որ սիրոյն խնամէ զարարածս ա՟մ, և խոստացեալ է տալ զարքայութ՟ին և զանսպառ բարիսն՝ որ 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ։ Որում փառք յաւիտեանս։

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՅԱՆԳԻՄԱՆՈՒԹԻՒՆ ԴԺՆԴԱԿ ՎԱՐՈՒՑ ԵՒ ԸՆԾԱՅՈՒԹԻՒՆ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ ՀԱՆԳԻՍՒՑ

### Ը

ՊԱՐՄԱՆՔ մարգարէից և առաքելոց քարոզութիւք յառաւելութի բարեաց զմեզ ընթացուցանեն ըստ լաւ մասինն որ 'ի Ք̃ս ։ Եւ զկիսաւորելով յառաւելումն յորդորեն, որ դրունք են ա̃մ բարութեանց և երանութեանց ․ և ընդ նոսա մտանեն աւետիք խոստացեալ պարգևացն ա̃յ 'ի հոգևոր դարմանսն ։ Այլ և 'ի մարմնաւորսն լրութի և առատութի և խաղաղութի այլովքն հանդերձ հարկաւորօք ։ Եւ բարութիք յաւտոյն կենացն յաւիտենից և շնորհք աներևոյթ սիրոյն՝ որ են գանձք գիտութե և իմաստութե, որով գիտէ ընտրել զլաւն 'ի վատթարէն, հաստատեսցի 'ի մեզ որ հոգւով վարեսցուք ։ Եւ այս վասն ընտրութիս առնելոյ 'ի միմեանց առաքինեացն հաւատացաւ ․ և անհաւատիցն լքումն տայ առ 'ի յընտրել զբարի հաւատ ա̃ծգիտութե ։ Եւ արդարքն մի վրիպեսցեն 'ի փրկութե յաւտոյն ։ Այլ և զդժնդակ վարսն զամենաչարն և զամենաչխտան սանձել, որ դրունք են բարկութե և սրտմտութե, սովոյ, սրոյ և գերութե և պէսպէս չարի ։ Զի որ աղբիւրն է ա̃մ բարեաց և արարիչ ա̃մ արարածոց, երկնաւորաց և երկրաւորաց, հոգևորաց և մարմնաւորաց, ամենազօրն ամենակալն երախտաւորն ա̃մ կենաց, ասէ ․ «Ես եմ տէր ա̃ծ ձեր․ զպատուիրանս իմ պահեցէք և կեցջիք» ․ զի զամենեսեան կամի զի կեցցեն և 'ի գիտութի ճշմարտութե եկեսցեն ։ Եւ այսպէս զամենեսեան կոչէ 'ի կեանս իւր․ որ կենաց տուիչ և դարմանիչ է ամենահնար բարերարութեն ։

Պարտ է զնա սիրել յա̃մ անձնէ և 'ի զօրութե և

'ի մտաց, այլ և զընկերս իբրև զանձն ամ սրբութբ. զի ապրեսցուք յաշխարհէ ատոի չարէ ըստ շնորհացն տյ որ'ի մեզ։ Եւ սանձահարել զզգօնդակ բարսն, և զանհաստատութի մտաց 'ի հաստատութի յուսոյ 'ի նեղութե և յանդորրու։ Եւ ատել զանառակութիս՝ որ զմտութիւն շարժէ և պղտորէ, և 'ի պոռնկութի և 'ի շնութի հակամիտէ։ Զի պոռնկութի ստերիւրէ 'ի պէսպէս անարժան հրապոյրս մտասուց. և վրիպեցուցանէ 'ի հաւատոց և 'ի սուրբ վարուց 'ի պատրանս մեղաց, յանառակութիս աղտեղիս։

Որդ փախիցուք 'ի պոռնկութե 'ի մօրէն չարեաց, որ յորդորիչ է ամ չարեաց. զի զբազումս կորոյս Ջրով և հրով և այլ և այլ ազգ պատուհասիւք պէսպէս, որպէս ասեն գիրք։ Զի որ շնայ կամ պոռնկի, կորուստ անձինն ստանայ. և 'ի տեառնէ 'ի բաց եկաց անսուրբ անձն։ Զի տաճար են սուրբք ամ ամենասուրբ Երրորդութեն. և տաճար դիւաց են պոռնիկք և շունք։ Զի զկայսս ապականէ և մերժէ 'ի տեառնէ, և զամուսնութիս քակէ և ընդ բազում չարեօք առնէ։ Զի վասն պոռնկութեան զկախարդս յօգնութի պղծութե ըստ հրապուրանաց սատանայի առնուն կաշառօք։ Վասն պոռնկութե նախանձու զչարն և զզազիր խորհուրդ աղտեղութե միշտ ունին։ Վասն պոռնկութե ոխութիք և այլանդակութիք 'ի կորուստ արանց և կանանց լինի։ Վասն պոռնկութեան դժպհութիք և երդմնահարութիք և ստութիք և գողութիք։ Վասն պոռնկութե հեղգութի աղօթից և պահոց և պղերգութի առ 'ի գործ։ Վասն պոռնկութե բազմաճնաս նենգութիք նիւթին և քէնք առ օտարս և ընտանիս։ Վասն պոռնկութե խորամանկութիք և պէսպէս մահք յայտնիք և գաղտնիք։ Կէսք յորովայնի ճմլեն և տարաժամանցուցանեն զմանկունս, և կամ դեղովք ապականեն յորովայնի. և է որ զծնեալսն սպանանեն։ Եւ է զի մնոյ տէրն և սեղեխն 'ի միմեանց մեռանին, կամ յայտնի մարտիւ կամ գաղտ իւիք չարիւ։ Եւ է զի հոմանիքն 'ի միմեանց խողխողին 'ի վերայ բոզիցն։ Եւ է որ բոզքն խաղս ինչ ուսանին 'ի կախարդաց, զի սպանցեն զարսն վասն հոմանեաց ցանկասիրաց։

Սու բազում չարիս ունի ախտիցն ցանկութիւն յարս եւ 'ի կանայս, զոր տեսլն կամ լսելն զազիր է մաքրեցելոցն[1] մտաց եւ սրբեցելոց։ Այլ զասացեալսն եւ զոր տեսլոցս եմ, լուիցեն որք յայտոսիկ 'ի սատանայէ ըմբռնեալ են։ Զի արբեալ է ախտիւ պոռնիկն. վասն որոյ մարգարէն ասէր. «Վայ որ արբեալք էք 'ի ցանկութէ եւ ոչ 'ի գինւոյ»։ Զի ամ չարեաց պատճառ պոռնկութիւն է եւ մայր մեղաց եւ դուռն ամ չարեաց նստելոց 'ի մեղս։ Զի վասն այսորիկ գայ բարկութիւն այ 'ի վերայ երկրի, սովոյ եւ սրոյ եւ գերութեց եւ պէսպէս ախտից. խռովութեց ընտանեաց եւ օտարաց, ծնողաց եւ ծննդոց, ծառայից եւ տերանց. յորս կագք եւ կռիւք եւ մահք։

Սա՝ եւ չարագոյն քան զասացեալս է ախտիցն գարշութիւք. որ եւ քան զանասունս եւ զգազանս եւ զսողունս անարգել են յախտս, որ յանասունս եւ յարուս պղծին. Թողեալք զպէտս իգութե արուացն եւ իգացըն, բորբոքեցան ցանկութեմբ իւրեանց յանասնելի աղտեղութիւս. զոր եւ ոչ է տեսանել այլ 'ի շնչաւորս զգարշութի ախտիցն։ Ո՜վ չարեացն եւ անարգել ախտին. որ արտաքս ելանէ քան զսահմանն, եւ գլուխ է ամ դժնդակ չարեաց։ Առաջին օրէնքն քարկոծ առնէին եւ կամ հրով այրէին. եւ նորա՝ արտաքս ունի յեկեղեցւոյ եւ 'ի ժողովրդոց. մինչեւ բազում լալով 'ի տուէ եւ 'ի գիշերի 'ի խորգ եւ 'ի մոխիր պահօք ապաշխարեսցէ, անհատ աղօթիւք եւ աշխատութեամբ բեկեալ սրտիւ։ Զի թէ տէրն զհայելն 'ի կին պարտաւոր առնէ շնութե, վասն այլ գարշութե ախտիցն զի՞նչ պարտ է ասել զպատիժսն։ Եւ դարձեալ ո՛րքան[2] երանէ զմաքուրսն. քանզի ասէ. «Երանի որ սուրբ են սրտիւք, զի նոքա զած տեսցեն հոգւով»։

Ո՞վ բաւական է ասել զսրբոցն զհատուցումն, զած տեսանել եւ յանպատումն վայելել։ Զի եթէ զարեգակն տեսանեմք յետ գիշերային ցրտութե 'ի ջեռուցանել 'ի լուսաւորել՝ խնդամք, որ փոփոխելի եւ անցաւոր է. իսկ զանճառելի լոյսն զնորա արարչին եւ

1 Մխաւն մոփոար նու ոտորբ մտացն։ Այլ։

2 Մերին ոչ բան . . 'ի ընթացացանէլ։

զմեր զի՞նչ պարտ է ասել զանհամեմատ բարերն Ա͞ծ : Որ լցուցանէ զորբոցն անձինսն շնորհօք և վայելեցուցանէ յանբաւ բարիսն և յանվախճան երանութիւն և յանսպառ ուրախութիւնսն Ջի ոչ զնմանութի ինչ կայանիցն և զանճառիցն հնար է ասել. բայց որ սուրբքն են սրտիւք և անարատք անդամօք մարմնոց, նոցա երևի Քս անճառապէս : Բայց եթէ անսուրբք իցեն հոգւով և մարմնով, ապաքէն 'ի սըրտէն առնու զհանգամանս գործոց մարմնին. զի 'ի սըրտէն, ասէ տէրն, ելանեն չար խորհրդոցն չարիքն, և մարմնով պղծի : Եւ զի ասէ, "Եթէ ակն քո կամ ձեռն կամ այլ ինչ անդամ գայթակղեցուցանէ զքեզ, հատ զնա և ընկեա 'ի քէն ». և այս հրաման ոչ զանդամոցն հատանելն ասէ, այլ զցանկութի շարժման ախտիցն որ 'ի նոսա գործի 'ի կորուստ անձինն. զի լուցկիք է պոռնկութի անշէջ հրոյն ա͞մ չարեօքն հանդերձ :

Եւ յորժամ փրկիչն զառաքեալսն յաշխարհ առաքէր սերմանել զբանն ճշմարտութե յանդս մտաց հաւատացելոց, և նովաւ ածել 'ի կարգ ուղղութե, նախ զփուշն խլել զցանկութի բուսոցն հրամայէ, ըզկամս մարմնոյ և զմտաց, և հնազանդել աւետարանին. և ապա սերմանել զաւետիս հրաւիրանացն. կաչել խոստովանութե յապաշխարութի և 'ի հաշտութի Ա͞մցուն արարչին : Եւ հնազանդեալք ըստ աւետարանին քարոզութե, արժանաւորիլ սուրբ երախտեացն կենդանի յուսոյն, զի ժամանեսցուք յօթեւանս կենացն յաւիտենից 'ի Քս Յս : Եւ 'ի ժողովս առաքելոցն վասն խնդրոյն այնորիկ հրէից և հեթանոսաց նախ զայս աւանդեցին, և ընտրեցին 'ի բաց կալ 'ի պոռնկութէ և 'ի հեղձուցելոյ [1] և յարենէ : Որոց արարեալ զայս բարի գործս, ստանան անձանց զարդիս և զապառնին :

Ակիզքն նախ զպոռնկութեն հատուածս առնէ, զի ըզբաղում ոստս որ 'ի նմանէն մնաց՝ խափանեսցեն. և զմեռելոտի գործս և զուտել արգելցեն և զարիւն նորին. այլ և որ 'ի սպանութի մտաբերեն, այսպէս

1 Մերն հեղձուցանելոյ :

խափանեցին : Զի հնազանդութե՟ նուաճեալք առ-
ողջութիւն և պարկեշտութիւն և խոնարհութիւն, և ըն-
տանեցեալք հաւատով մտօքն յաւետիս խոստացեալ
բարեացն : Եւ զդժնդակութիւնս ա՟մ ատել և ՚ի բաց
ընկենուլ ստանալեօք անվախճան տանջանացն, որ
պատրաստեալ է ՚ի տեառնէ անսրբոց և պղծոց ՚ի
պոռնկութի : Զի եթէ մեռելոտի ուտել և զարիւն
անասնոց ըմպել եղկութիւն և թշուառութիւն առաջի
կայ, որչափ պատիժք որ զազգակիցս վտանգեն նե-
ղութիւնք, զոգիսն և զմարմինս ճնշեն պէսպէս վտան-
գիւք և դառն տանջանօք և մահուամբ յարդար
դատաւորէն պատրաստեալ : Եւ Առաքեալ ասէ. «Մի
խաբիք. ոչ պոռնիկք, ոչ շունք, ոչ իգացեալք, ոչ
արուագէտք, ոչ գողք, ոչ սպանողք, և որք զհետ
այսոցիկ, զարքայութիւնն ա՟յ ոչ ժառանգեն», այլ
զանշէջ հուրն. ըստ մարգարէին՝ թէ «Հուրն նոցա ոչ
շիջանի, և որդն նոցա ոչ մեռանի» : Զի պատուական
ասէ զամուսնութիւն և զանարատ անկողինս, և նա-
խապատիւ զկուսութիւն. այլ և զպոռնիկս և զշունս դա-
տի ա՟ծ : Եւ դարձեալ ասէ. «Դուք տաճար էք ա՟յ, և
Հոգի ա՟յ բնակեալ է ՚ի ձեզ» : Այսինքն անարատ
յաղտեղութէ : «Զի սուրբ է տաճար քո սքանչելի ար-
դարութե՟» ասէ Դաւիթ : «Եւ եթէ ոք զտաճար ա՟յ
ապականէ, ապականեսցէ զնա ա՟ծ. զի տաճար ա՟յ
սուրբ է, որ էք դուք ՚ի մէջ կամակոր և աղաւաղ ազ-
գաց» :

Զի որպէս ջրհեղեղաւն ապականեցաւ երկիր,
որ գէջ պղծութեամբ էին ապականեալք, մեք զիարդ
ոչ երկիցուք, որ այսպիսի մեղաց բարկութե՟ վկայ
ունիմք զհամաշխարհական կորուստն ջրհեղեղին :
Այլ և զՍոդոմ և զԳոմոր հրով և ծծմբով տոչորեալ
ըստ ջերմութե՟ և զազիր ախտից, որովք ըմբռնեալ
էին՝ սատակեցան հինգ թագաւորացն պղծեալ տուն-
քըն հանդերձ լրիւ իւրով երկիրն : Եւ զայս երկոս
հարուածս յաղագս գիջութե՟ և պղծութե՟ երկոս
վկայս կացոյց ահաւոր դատաստանին, որ լինելոց է
պատիժս այնպիսի պղծոց յաւուրն այցելութե՟ ա՟մ
ազգաց : Զի որպէս էին, ասէ տէրն, յաւուրսն Նոյի,
կանայս առնէին և արանց լինէին և յուրախութե՟

վայելչին, մինչև եկն Ջրհեղեղն և կորոյս զամենե-
սեան առ հասարակ․ Նոյնպէս և յաւուրս Ղովտայ 'ի
փափկութե և յանմաքրութե վայելչին, այլ և յան-
առակ ցանկութիս, մինչև տէր եհան զՂովտ անտի,
և զնոսա այրեաց առ հասարակ հրով․ բայց դուք լոյս
էք 'ի տէր 'ի սրբութե։ Խաւար ասէ զգործսն խա-
ւարի, որ ոչ գոյ 'ի լոյս։ Իսկ 'ի խաւարէ մեղաց զեր-
ծեալ սուրբ լուսոյն երևի։ Դարձեալ ասէ, թէ որ
մերձենայ 'ի պոռնիկն՝ մի մարմին է․ զի որպէս միով
մարմնով մեղքն կատարին․ զի հասարակաց է չարն
'ի գործելն 'ի խօսելն 'ի տեսանելն 'ի լսելն, և այլ
ամ խծբիծք չարեաց նոցին։ Եւ որ մերձենայ 'ի տէր՝
մի հոգի է, ընկղմեալ 'ի կենդանի սրբութեան։ Զի
սրբեալ անդամքն մարմնով և հոգւով միաւորի ընդ
քսի 'ի կեանսն հաւատով և ճշմարտութբ, և լինի
սուրբ անդամ քսի հանդերձ ամ առաքինութբն։ Զի
կարասցէ ասել առ մարտ թշնամւոյն․ արդ առեալ
զանդամս քսի՝ առնիցեմք անդամ պոռնկի․ քաւ լիցի
զսրբութիս մատնել յանմաքրութի։

Օ պոռնիկն բազում անգամ վտանգէր Պաւղոս վասն
պղծութե և խրատէր, և մատնէր 'ի ձեռս սատանայի
'ի սատակումն մարմնոյ, զի ոգին ապրեսցի հանդերձ
սոյդ զղջմամբ․ Ճնշելով զմարմինն պահովք այրն-
դութե և աղօթիւք հրահանգել 'ի սրբութի, լինել
զասացեալս 'ի նոսա՝ որ յաղագս այնորիկ են հանդէսք։
Զի 'ի ձեռն պոռնկութե պէսպէս անօրէնութիք յա-
ճախին 'ի յերկրի․ զի բազմաչար է պոռնկութիւն և
անյագ առ ցանկութիս ախտից։ Վասն այսորիկ Ա-
ռաքեալ զմեզ ուսուցանէ և խրատէ սպառնալեօք,
փախչել յայնպիսի ախտից և 'ի պղծութէ, որոց վախ-
ճանն է կորուստ։ Զի ասէ․ «Մի պոռնկեսցուք, որ-
պէս ոմանք 'ի հրէիցն, և կորեան 'ի սատակչէ անտի
յաղագս պոռնկութեն 'ի միում աւուր քսան և չորս
հազար»։ Զի ոչ եթէ անիրաւ ինչ էր ած՝ որ եած
զբարկութին 'ի վերայ նոցա, որ գիտէ զամ։

Վասն այսորիկ զհարուածսն ընդ իշխանութիւն
եմոյծ 'ի ժողովուրդն․ որպէս զի նոքա էին որդիք
կորստեան պատճառս 'ի մեղսն, թէպէտ և 'ի միասին
մեղան որ մեղանն։ Զի և մարգարէն ասէ․ «Անձն որ

մեղիցէ, նոյնն և մեռցի»։ Թէպէտ ասէ, «Հարք ա-
գուխ կերան, և որդւոց ատամունք առին»։ Զի են ո-
մանք որ 'ի մեղս իւրեանց վախճանին առանց ապաշ-
խարութեան, եցոյց եթէ ոչ լինի մոռացումն յիրա-
ւանցն այ. այլ կայ պահի արդարութի աւետեաց սր-
բոց, և առ անօրէնութի սպառնալեացն արհաւիրք։
Զի որդիք մեղաւորացն երկիցեն և մի արասցեն ըզ-
մեղս, որպէս և հարք իւրեանց. այլ արդարութն
իւրեանց ապրեսցին 'ի բարկութէն՝ որ սպառնացաւ
նոցա։ Զի որդի որ ատէ զամբարշտութիս հօր, և ա-
րասցէ իրաւունս, կելով կեցցէ, ասէ տր։ Եւ մի փոր-
ձեսցուք զտր և կամ տրտնջեսցուք, որպէս ոմանք 'ի
նոցանէ, և յօձից անտի սատակեցան։ Զի ուսումն
վարդապետութեան խրատէ յուղղութի, որոշէ զլաւն
'ի վատթարէն, և պահել զսրբութիւն ըստ օրինացն
արդարութեան և ըստ աւետարանական լուսաւորութեան
խորհրդով և բանիւ և գործով։ Զի ապրեսցուք 'ի
բարկութենէն որ գալոցն է 'ի վերայ անօրինաց և պղծ-
ծոց, և կալ առաջի քսի սուրբք, և ժառանգել զան-
պատում բարիսն։

Այլ և վերակացուք մի հեղգասցին 'ի պատմել
զսպառնալիս տն այ. զի ասէ մարգարէիւն. դէտ կա-
ցուցի զքեզ, զի ասասցես՝ մահու մեռցիս եթէ մե-
ղիցես։ Եթէ լուիցէ քեզ, կեցցէ. ապա եթէ ոչ լուի-
ցէ քեզ՝ մեռցի. և դու ապրեցուսցես զանձն քո։ Ա-
պա եթէ ոչ ասասցես զսպառնալիսն որք զայնպի-
սիսն գործեն՝ եթէ սուր գայ և բարկութի, զարիւն
նոցա 'ի ձեռաց քոց խնդրեցից։ Զի կամ ողոքանօք
աւետեաց երանութեացն յուսով ուղղեսցին, և կամ
սպառնալեօք հարուածոց և վշտաց և նեղութէց՝ որ
յերկրի աստ, և կամ ահեղ աւուրբն մեղաւորաց և
անհնազանդից։ Զի իբրև հրեշտակք են այ հրամանք,
որ առաջին յիշխանութէ ընդ ամենայն արարածս.
ընդ երկնաւորսն առ զօրս հրեշտակաց, և ընդ երկ-
րաւորս առ ազգս մարդկան. առնել զշահաւորն 'ի
մեզ 'ի սիրոյ տէրութէն 'ի նեղութէն և յանդորրու 'ի
պէտս մեր։ Զի անքակ կացցուք 'ի ճշմարտութեան ա-
ւանդսն մաքուր վարուք մարմնով և հոգւով առ տէ-
րութիւն, և երախտաւոր լինել ամենաշահ դաքմանօք

առ կեանս և փրկութիւն ընկերաց։ Այլ և արտուեստիւք ճշմարտից կալ 'ի մշակութեան, և արքայնեան լինել առ հաճոյս բարերար կամացն նյ, և շնորհօք Հոգւոյն վայելել 'ի կեանս աշխարհիս. զի ազատեալք 'ի մեղաց, և արդարութեան միշտ պտղաբերք հանդերձ ամ սրբութեամբ համբերութեամբ բազմաւ. զի այսպէս ժառանգաւոր լինել կարասցուք աւետեացն սուրբ Երրորդութեան։

Այլ և վկայութիւնք լաւութեան որ մտերիմ է անձնիշխան կամօք 'ի վարդապետութիւն Հոգւոյն սրբոյ. որ 'ի ձեռն մարգարէից և առաքելոց և վարդապետաց գրով աւանդեցին մեզ. զի ծանիցուք զամ՝ զերախտաւորն, զարդարն, զբարերարն, զսուրբն, ըզճշմարիտն. և մերժել և հեռանալ 'ի դժնդակ վարուց, յապախտաւոր և յանհաւան յանխրատ և յանխտիր անօրէնութէ, և սրբել 'ի մտաց և մարմնոց ըզմնասակար զամբարշտութիւն միշտ։

Նա և Պարսիկք և այլ խուժադուժ ազգք, որ ոչ գիտեն զօրէնս, բնութեամբ զօրինացն գործեն ըստ Առաքելոյ բանին, և 'ի ձեռն դատաւորաց պատժեն ըզպիղծս և զանիրաւս։ Եւ միշտ սպառնալիք իշխանաց և դատաւորաց առ անխտիրսն 'ի չարիս, առ սուտս և երդմնաստուտս, նենգաւորս, գողս, սպանողս, շունս, կախարդս, դիւթս, և որ այլ ևս են հոյլք մեղաց։ Զօրս բանդիւք և երկաթի կապանօք և պէսպէս տանջանօք խոշտանգեն և մահ 'ի վերայ ածեն, զի այլքն երկիւղ ունիցին և արգելցին յանխնայ անօրէնութէն։ Իսկ որ խրատին և դան 'ի լաւութի կարգաց և իրաւանց թագաւորի, 'ի միամտութեան և 'ի հպատակութե կացուցանեն զանձինս, այնպիսեացն փառք և պատիւ և պարգևք ազատութե շնորհեն։

Նոյն օրինակ և Յոյնք գրով կարգեալ ունին զիրաւունս. երախտաւորացն և մտերմիցն պարգևօք և մեծարանօք պատուեն. իսկ զանօրէնս և զանհնազանդս և զամբարհաւաճս և զանառակս և պիղծս պատուհասիւք և պատժովք և դառն նեղութեամբ նեղեն, զի խրատեսցին 'ի բաց կալ 'ի մեղաց և գործել զբարիս հանապազօր. զի մի վրիպեսցի աշխարհս յանիրաւացդ, այլ զխաղաղութի և զշինութի կալցի։ Նոյն-

պէս և ամ ազգք եթէ ոչ կայցեն յիրաւունս արդար
դատաստանին այ. զի ունին կարգիչս և իրաւունս դա-
տաստանօք և խրատու ուղղել, և մի ամբոխ և մարտ
յուզիցի։ Եւ իրաւանցն արդարութեան երկու քար-
քառք են, որ յարգեն և պատուեն զիրաւախորհան ա-
ւետեօք պարգևացն, և ապառնալեօք և պէսպէսնե-
ղութեամբք պատժեն զապախտաւորսն և զանիրաւսն. զի
չէք ազգք որ ոչ իցեն իրաւունք 'ի դատաւորաց։ Եւ
այս ամ կարգք 'ի շինութիւն աշխարհի կարգեալ են
'ի ամնէ ըստ նախախնամութեան որ առ ազգս մարդ-
կան. թէպէտ և ոչ ծանեան զած և փառաւորեցին
կամ գոհացան, զի ոչ ընդրեցին զած ունել 'ի գի-
տութեան. այլ նանրացան 'ի խորհուրդս իւրեանց և
խաւարեցան անմտութեամբ։ Այլ ոչ անտես առնէ ա-
րարիչն զարարածս. զի հայր է շնորհիւ և տր, որ հրա-
ւիրեաց և կոչեաց զամենեսեան յարքայութիւն։

Արդ այս ամ կարգք իրաւանց և արդարութեան
վկայք են այ հոգևոր օրինացն, որ քարոզեցաւ մար-
դարէիւք գրովք սրբովք։ Որք յանիրաւութենէ յիրա-
ւունս ածեն, յանարգութենէ 'ի փառս, յանցաւորէս 'ի
մշտնջենաւորսն, յերկրաւորէս յերկնաւորսն առաքի-
նութեան հանդիսիւք. և ամ կարգաց իրաւանց և սըր-
բութեան պատկառ կալ, ճշմարիտ հաւատովք և կեն-
դանի սիրով անմեկնելի լինել 'ի կամացն այ 'ի նե-
ղութեան և յանդորրու։ Կոխել զպատրանս աշխարհիս
և հաստել 'ի յոյս կենացն յաւիտենից խաղաղարար
սրբութեամբ. զի հասցէ 'ի բնակարանս սրբոց յերանելի
և 'ի սքանչելի փառսն. վայելել 'ի բարութիւնսն անպա-
տում, յանհամեմատ վայելչութիւնսն, յանուշակ ար-
քայութիւնն Հօրն ամենակալի և Որդւոյն բարերարի
տուողի մեզ զկեանս, և Հոգւոյն սրբոյ նորոգողի ըզ-
հաւատացեալս. միաբանական տուրք Երրորդութեան.
որում փառք յաւիտեանս. ամէն։

# ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԿԱՏԱՐԵԱԼ Ի ՏԷՐ ԱՄԵՆԱՐՈՒԵՍՏ ՊԱՀՈՑ

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

### Թ

Եւ քանզի ամենայն կարգաց չափ եդեալ յամենակալ տեառնէն և յարարչէն, որպէս զի հանդիսացեալք կատարեսցուք զառաքինութիւն ահիւն ա̃յ, որ փառօք պսակի հաւատովք և շնորհօքն Քսի: Զի ամենարուեստ քաջութիւն նահատակեալ 'ի մշակութիւն օրինացն՝ սուրբ սիրովն զօրացեալք, որպէս և զզօրս հոգեղինացն: Որով և օրէնսդիրն փառաւորեցաւ, և օրինապահք պսակեցան, և առաջնորդեն յօթևանս երկնից արքայութեան օրինակաւ ամենագիտ սիրոյն 'ի բարերար խնամսն: Զի նմանեալք նոցա խորհել յօրէնս ա̃ն 'ի տուէ և 'ի գիշերի՝ ընկալցուք զարդարութիւն և զժուժկալութիւն զշնորհն. զի ըստ իւրաքանչիւրոցն լաւութեան վարուցն՝ թագ 'ի գլուխ մտցեն յարքայութիւն 'ի մշտնջենաւոր և յանվախճան կեանսն. երկնայնոցն և անմահիցն կցորդ լինել ըստ ընդրութիւն շնորհացն գործելով յանդիման առաջի ա̃յ և զօրաց անմարմնոց. զոր յերկրի աստ մատակարարեալ և յերկնաւորսն երևի: Այսու յուսով յորդորէ զորդիս մարդկան ըստ աւետեացն, և ժառանգաւորս առնէ Քսի Հայրն բարերար և Հոգին սուրբ ամենախնամ. որ ոչ թողու զարարածս իւրնախախնամական սիրոյն. զի զամենեցուն կամի զկեանս և 'ի գիտութիւն ճշմարտութեան հասանել: « Զի որ արասցէ և ուսուսցէ, ասէ, նա մեծ կոչեսցի յարքայութեան երկնից »:

Եւ որպէս հրեշտակացն կարգաւորութիւն է յարքայից արքայէն, և 'ի նոյնս կան մնան ըստ բարերար կամաց կենարարին և ոչ ևս անցանեն, սոյնպէս յոր-

փորէ և զմարդիկ 'ի հրեշտակային կարգաւորութիւնս ։ Սոյնպէս և սերովբէք և քերովբէք ընծայեալ են յիւրեանց սպասաւորութեն ամենակալ տրութեն ․ որով արարածք դարմանին 'ի խնամս բարերարութեն միշտ ։ Այլ և ամ զուարթունք և զօրք հոգեղինացն և անմարմնոցն յիւրաքանչիւր կարգի հաստատեալ կան պաշտօնեայք ակնարկման կամաց բարերարին ։ Այսոքիկ բանակք բիւրաւոր զօրացն հաւանեալք և հնազանդեալք 'ի հաճոյս տրութեն՝ ցուցին զսպասաւորութի իւրեանց անհանգիստ օրհնութբ 'ի տր ․ գործակից լինել բարերարին այ երախտեաց, և փառաբանիչք նորա մեծութեն և ածութեն ․ որով ուրախացեալք 'ի պայծառութի արարչին միշտ ։ Իսկ ըստամբակեալն 'ի նոցանէ իւր բանակօքն և դժնդակ բարս ստացեալ՝ սատանայ անուանեցաւ, և դեւք՝ որ նորա են արբանեակք չարի սպասաւորք ․ որք ցուցանեն զգործս անօրէնութե և հակառակ են արդարութե վարուցն ։ Զի ինքեանք անկան 'ի պատուոյ, և զմարդիկ որսան 'ի կորուստ ․ որոց ած խոստացաւ տալ զնոցա պատիւն մարդկան ։ Զի ածամարտ է և մեղսասէր, և հանապազորդ թշնամի մարդկան, և հակառակ արդարութե և սրբութե ․ և ոչ դադարէ յիւրմէ խորամանկութենէ 'ի խաբել 'ի կորուսանել զմարդիկ պէսպէս և զանազան չարեօք ։ Վասն այսորիկ կրաւեալ է ընդ սպառնալեօք ահաւոր տանջանացն և անմահ սատակմանն ։ Ոչ միայն նմա և նորին զօրացն, այլ և որք սիրեցին առնել զկամս նորա խորհրդով և բանիւ և գործով ․ «Երթիցեն, ասէ տրն, մեղաւորքն 'ի տանջանսն յաւիտենից զոր պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա » ։ Այսոքիկ 'ի կամաց լինին և ոչ 'ի հարկէ ։

Իսկ մեզ պատուիրան տուաւ 'ի տնէ, զի ծանիցուք զնորա զպատուիրանսն և զերծցուք 'ի նորա խաղբիցն միշտ, և աւետեօք բարի խոստմանցն գործեսցուք միշտ զբարիս առաջի տն յամ ժամ, և մտերիմ հաճոյիւքն այ կալ յանձինս մշակութե, և յորդորել զբազումս 'ի լաւն և որ լին է փրկութբ և ամենազարդ սրբութբ ։ Վասն որոյ փառք և պատիւ 'ի բարերար տնէն յաղագս արդար և սուրբ գործոցն պատ-

րաստեալ կան : Զի յուսով զօրացեալ կան յամ՟ փոր-
ձանս . ոչ վրիպին 'ի սոյզ և յուղիղ վարուց , ա՟ծա-
սիրութեն առաջնորդեալ յամ՟ առաքինութիւնս , և
կալ մնալ անսասանելի : Զի զմարդն յիւրում կար-
գին հաստատեալ ներքոյ իւրոյ չափոյն , զի լիցի ար-
բանեակ ճշմարիտ քարոզութեն հրաւիրանաց վերին
կոչմանն , և ըստ մարգարէութեն շնորհի խորհրդա-
կից լինել կամաց արարչին : Եւ 'ի գիտութիւն աւե-
տեաց նորոց կտակարանաց և 'ի նորոգումն կենացն
անմահից ուղիղ հաւատով ընծայիլ քահանայական
շնորհիւ օծմամբ և հոգւով խնամովք տեսչութե սի-
րոյն Ք՟սի : Մերկանալ զհին մարդն և զգենուլ զնորն՝
որ ըստ պատկերի ա՟յ է սուրբ և արդար : Մերկանալ
յամ՟ չարէ աւազանին շնորհօք , և մարմնով և ա-
րեամբն Ք՟սի մտանել 'ի ժառանգութի որդէգրութե
Հօրն երկնաւորի և 'ի թիւ իմաստուն կուսանացն և
ամ՟ սրբոց , որք զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին ,
որպէս ասաց Առաքեալ , ամ՟ ցանկութիւք հանդերձ :
Զի հոգւով գնասցուք և զցանկութիս մարմնոյ մի կա-
տարեսցուք : Եւ այսպէս յամօթ առնէ զայն՝ որ զիշ-
խանութիս ունի զսատանայ : Զի ապրեսցին որսա-
ցեալքն 'ի նմանէն շնորհօք արարչին , և առաքինեալք
յարդարութի և 'ի սրբութի և 'ի ճշմարտութի հաւա-
տարիմ պատերազմաւ՝ անարատ մաքուր և անբիծ
կատարեալ սիրովն որ 'ի Ք՟ս , և համբերութի 'ի վը-
տանգս , սոքա հասցեն խոստացելոց բարեացն Ք՟սի :

Իսկ որք ոչ ընկալան զօրէնս արդարութե կարգաց
և կրօնից , և խաւարեցան անմտութբ սիրտք նոցա ,
մատնեալք եղեն 'ի բանսարկուէն յանառակ ցանկու-
թիս և յամբարշտութիս և 'ի հպարտութիս և յամ՟ անօ-
րէնութիս , մատնեաց զնոսա ա՟ծ տանջանաց անմահ
մահու : Սակայն խնամք արարչին ոչ թողին անդարմանս
զարարածս իւր . այլ վասն բազում մարդասիրութե իւրոյ
քարոզեաց զդարձ և զապաշխարութի 'ի քաւութի ամ՟
մեղաց : Զի դարձեալ վերստին առցուք արտասուօք
զաւազանին լուացումն 'ի ձեռն հաւատարիմ և ան-
սուտ խոստովանութեն և ապաշխարութեն , որ ար-
տասուօքն խառնեալ է : Զի գթացեալ ողորմի և տա-
ցէ զորդէգրութե զշնորհս : Այսուհետև հնազան-

դեալ ընդ բարի կամացն՝ կատարեսցէ զարդարութիւնս ա՟մ [1], և խլեսցէ զչար սովորութիւնս ա՟մ աղտեղի չարցանկութեան հանդերձ. և ազատեալք 'ի դառն պարտեաց գեհեններն՝ և ժառանգաւոր լինել կենդանի խնամոց բարերար սիրոյն սուրբ Երրորդութեան. զի յորդորեալք յառաքինութիւն և 'ի սուրբ վարս՝ ժառանգեսցեն զարքայութիւն:

Ոի յորժամ յաւելուած սուտ կարծեացն մտին 'ի նախաստեղծն մարդն յայրն և 'ի կինն 'ի մախանաց բանսարկուին, և 'ի հրապուրանաց հեշտութեան քարշեալ՝ և սուտ կարծեօք աստուածք լինել՝ խաբեցան և ոչ պահեցին զպատուէր արարչին իւրեանց, և ելին 'ի փափկութենէ դրախտէն և զմահ ընտացեալ ժառանգեցին: Զի յառաջագոյն պատուիրեցաւ նոցա գործել և պահել զդրախտն ժուժկալութեամբ պահոց. յորս ունել նոցա 'ի պտղոց, և յորս ոչ: Նոյնպէս և այժմ քարոզեցաւ 'ի մեզ պահք, յոր աւուրս պահելի, և յորս լուծանելի. որպէս օրինադրեցաւ 'ի մարգարէիցն և յառաքելոցն և 'ի սուրբ հարց մերձաւորացն ա՟յ: Զի որ պահէ զսրբութիւն և զա՟մ արդարութիւնս իմանալի դրախտին, կայ մնայ 'ի նմին անմեղ 'ի դրախտի արդարութեան և առաքինութեան անկցոն 'ի վայելս շնորհօք արարողին կենաց ասա՛, և անդ փոխել յանճառելիսն: Զայս ասելով ոչ իմանալի ասեմ զդրախտն, այլ տեսանելի առաջին մարդոյն. թէպէտ և 'ի մէնջ ծածկեաց հրեղէն սուրն ըստ խորին իմաստութեան ա՟յ: Զի երկդիմի է իմանալ. մինն շօշափելի և տեսանելի, և միւսն իմանալի՝ որ յառաքինութիւնս վերաբերի:

Ոի պահք դաստիարակ են մարդկան: Զի որպէս զտղայս դաստիարակն հրահանգէ 'ի բաց կալ 'ի չարակարաց և յօգտակարսն կալ մնալ և յանօգուտսն ոչ զբաղնուլ անժուժկալութեամբ: Վասն այսորիկ եդան մեզ պահք խափանիչ անժուժկալութեան ա՟մ չարաց, որ 'ի մեղսն է հակամիտութիւն հոգւոյ և մարմնոյ. զի կատարեսցուք զսրբութիւն ահիւն ա՟յ. անցցուք յանդորրութիւնս յանքննինս որ կայ և մնայ պահողացն:

1 Միւսն ուրացեալ զանօրէնութիւն ա՟մ աղտեղի:

Եւ մի՛ որպէս որովայնամոլքն՝ որ նստան ուտել և ըմպել և յարեան 'ի խաղալ, և սատակեցան 'ի բարկութէն տեառն իսկոյն յոլովք ։ Զի զպատուիրանս նորա ոչ պահեցին . այլ նանրացան 'ի խորհուրդս իւրեանց, և զհրամանս պահոցն անարգեցին որկորստութբ, և ոչ կացին յուխտին, և խոստացեալ պարգևացն ոչ հաւատացին և բարկացուցին զԱծ . և եած 'ի վերայ նոցա հարուածս և սատակեաց ։ Իսկ որ ամփոփեցան 'ի պնդութիս պահոց, և ցուցին զփոյթ համբերութեան և ժուժկալութեան, և պահեցին զհրամանն տեառն, և կացին մնացին ժուժկալք յօրինադրեալ պահօն սրբութե ամ բարեձև կարգօք, նոքա ընկալցին զհանգիստն որ 'ի Քս։

Օի են մեզ պահք բժիշկք . զի զոր անժուժկալութբ մթերեալ 'ի հոգի և 'ի մարմին զխտս զպէսպէս ճաշակաց մեղաց, և 'ի միմեանց վերայ շեղջակուտեալ և նեխեալս յայլանդակ խորհուրդս և յանմաքուր վարս, 'ի ժուժկալութիւն և 'ի պահս մտեալ՝ նորոգեալ սրբի 'ի մթերից մեղացն, և լինի բնակարան սրբութեան ։ Զի պահք մերձ եկեալ՝ զդեղ առողջութեան շնորհել 'ի ժուժկալս, և ջերմութեամբ հոգւոյ սիրով հալէ զմթերս աղտեղութե և յառաքինութիւն վերաբերէ ։ Եւ անուշահոտ վարուք ցամաքէ զժահահոտութիս և 'ի միջոյ բառնայ, և զառողջութի տայ հիւանդաց որք մեղօքն ապականեալք իցեն ։ Եւ զսրբութի և զանարատ վարս յանձին ցուցանէ զկնի առողջութեն՝ նահատակեալ 'ի սրբութի ։ Եւ զայն որ վիրաւորեացն զնա աղտեղի ցանկութբ և անխտիր անառակութբ, հարցէ զնոսա սրբութբ և անարատ ամբծութբ. և դատեսցէ զորովայնամոլութիւնն միշտ պահովք[1], և խլեսցէ զչար սովորութիս յանձնէ ։ Զի դատապարտեցին 'ի ձեռն շնորհացն Քսի մեղքն և իշխան մեղացն, և առցեն զկատարեալ առողջութի փրկական խորհրդոյն ստոյգ խոստովանութբ և ապաշխարութբ, պահօք և աղօթիւք ամրացեալ 'ի մասսուցն ։ Եւ այսպէս առցեն զպսակ յաղթութե՝ որ գովութբ և պարծանօք յօրինեալ է պա-

1 Միւսն պահեցողք .. շահս զան անձանց ։

հողայն։ Զի թագուոր արուեստք են կարգք պահոց, և թագուհի շահս ստանայանձանց՝ որք սիրեն զնա և պահեն միշտ։

Պահք կատարեալ հաւատոյ ճշմարտութե աւգտեցութի. յայս ակնկալութի և յայսն առողջութե ամենի անպարտ և ամբիծ և սուրբ երախտաւք սիրոյն որ առածն։ Եւ այնոքիւք դադարէ այլանդակութի մտացն և շուայտութեան զգայութեցն. աչաց 'ի տեսանել և ականջաց 'ի լսել, լեզուոյ առ 'ի խօսել, և ձեռաց առ 'ի գործել, և սրտիւ ուղիղ[1], և ճաշակելեաց առ 'ի պարկեշտութի. ամենեքումբք պնդեալ 'ի պահս սուրբս, և զամ կամս ցանկութե զգայութեցն արմատաքի խլել, և զմոռացումն բարեացն զարթուցանել նշողիւք անձաւսիրութեան։ Եւ հրաժարել 'ի չար լուծմանէ մեղացն, 'ի պոռնկութէ, յորովայնամոլութենէ, յամբարտաւանութէ, 'ի նախանձուէ, 'ի բարկութէ, յագահութէ, 'ի գողանալոյ, 'ի ստութէ, յերդմանէ, 'ի չարախօսութէ, 'ի զրկելոյ, 'ի նենգութէ, 'ի ցասմանէ, 'ի թշնամանաց, յոխակալութէ, 'ի ծուլութենէ, 'ի ծիծաղելոյ, 'ի խեղկատականաց, յարբեցութէ, 'ի բանբասանաց։ Զայսոսիկ զմահաբեր լուծաւանս 'ի բաց փախել ուղիղ խոստովանութբ, և առնուլ զդեղն կենաց, և առողջացեալք սրբով Հոգւոյն՝ յառաքինութե ապարէզն նահատակեսցուք ընդդէմ չարակարացն զուգութե վարմն։ Եւ միամտութբ հնազանդեալք բարերար կամացն փակել զամ յորդումն[2] չարին։ Եւ զչար և զդառն շարժմունս մտաց և զգայութեց արգելուլ միշտ, որ է լրումն և կատարումն պահոց. որ հաստուցանէ 'ի գրուեն կենաց։ Ամրացեալք ներքոյ պահոցն ժուժկալութբ համբերութբ, և զգուշութբ 'ի զգաստութե մտալով, և յորդորեալք 'ի գութ և յողորմութիւն առ կարօտեալս հեռաւորս և մերձաւորս 'ի փառս և 'ի պատծանս համօրէն ատենին և յարութեան մեռելոց։

Պահք զծածկեալ հիւանդութիս որ 'ի մարմնի՝ արտաքս հանէ։ Որպէս դեղ մաղձոյ՝ որ ընդ ճաշա-

1 Միւսն ուղղէլ։

2 Միւսն յորդորումն։

կեղն իւրում զմաղձն արտաքս փսխէ և զառողջութիւն տայ, սոյնպէս և զմեղսն պահք. զի 'ի նուազել կերակրոց՝ և մարմինն հանդարտանայ և սրբի: Զի զմարմնոյ զհետ երթեալ՝ կորուստ անձին ստանայ. իսկ ըզհոգւոյ՝ զկեանսն յաւիտենականս 'ի տէր: Պահք զօրացուցիչ են հոգևոր վարուց և խափանիչ մարմնական շարժմանց. զի 'ի զօրանալ միոյն՝ միւսն տկարանայ: Զի որպէս գիշակեր թռչունք տկարանան 'ի թռչել յանխնայ ուտելոյն, և դիւրաւ ըմբռնին յորսողաց 'ի մահ, իսկ սակաւակերքն երագաթռիչք են և անըմբռնելիք յորոգայթադիր որսողաց, սոյնպէս է իմանալ զորկորամոլսն և զպարկեշտսն 'ի պահս սուրբս:

Այլ Եղիա մարգարէն յորդորէ զմեզ 'ի պահս պնդութեան, որ պահեաց զքառասուն տիւ և զքառասուն գիշեր, և եբարձ զամենայն կարիս յինքենէ զմարդկային շարժմանցս, և երևմանն Աստուծոյ արժանաւոր լինեալ՝ վերացաւ հրեղէն կառօք յերկինս: Սոյնպէս և Մովսէս պահեաց զքառասուն տիւ և զքառասուն գիշեր. ոչ մի անգամ, այլ երրորդ անգամ. զի զինքեան զկարիսն լուծցէ, և զբարկութիւնն Աստուծոյ որ 'ի վերայ ժողովրդեանն՝ որ ուտելով և ըմպելով 'ի խաղս լինեալ պաշտեցին զգլուխ որթուն և սատակեցան, արգելցէ պահօքն, և լիցի օրէնսդիր յԱստուծոյ՝ Իսրայէլի սուրբն: Սոյնպէս Յովհաննու ամենայն կենացն զպահսն բացայայտէ. որ ոչ ուտէր և ոչ ըմպէր 'ի բերից երկրաւորաց կազմեալ կերակուր. այլ մարախով և վայրենի մեղերբ զպէտս վճարէր յանապատին: Եւ սրբեալ 'ի պահոց՝ եղև կարապետ և տեսող անճառիցն ըստ աւետարանին: Այսպէս և տէրն յետ մկրտութեան պահովք պնդեալ Աստուածախառն մարմնովն ընդդէմ թըշնամւոյն զպատերազմն առնէր. զի այնպէս ուսուսցէ զմարդիկ սպառազինեալ պահովք ընդդէմ թշնամւոյն մարտից, և նահատակեալ պահովք և բովանդակ առաքինութեամբք առեալ շնորհս յաղթութեան և յաղթեալ փորձողին: Որպէս և տէրն մեր որ վերացաւ 'ի թևս հոգւոյն ընդ աջմէ մեծութեան 'ի բարձունս, և զնոյն իսկ զմարտն պահովք եցոյց մեզ: Զի զորկորըստութիւն և զամենայն զբօսանս որ են բեռինք մեղաց՝ 'ի բաց ընկեսցուք, զի արժանի լիցուք թևօք հոգւոյն վե-

րանալ և զոտերն փառաց տեսանել, և լսել եթէ եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւն իմ ։

Օ ի ա՟մ սրբոցն՝ պահք եղեն առիթ սրբութե՟ և յերկրէս ամբառնալոյ և մերձենալ 'ի հոգեղէնսն ։ Զի որպէս հրով զսրբութիւն ընկալան 'ի ձեռն պահոց, և ապա ընտանեցաւ նոցա հուրն կիզող որպէս երից մանկանցն 'ի հնոցին՝ որ պահովքն էին սրբեալք ։ Զի հուր զայրեցիւն այրէ, և զսրբեալսն պահովք առաւել լուսաւորէ և պայծառ կազմէ լուսով ։ Իսկ որ ոչն էին արժանի և մերձ եղեն 'ի հուրն, իբրև զխռիւ այրեցան. զի չէին ընկալեալք 'ի պահոց զսրբութի ։ Իսկ եթէ արդարոց կատարումն են պահք՝ 'ի հոգեղէնս և 'ի մարմնեղէնսն լինել, քանի՞ օգուտս բերէ մեղաւորաց՝ որ 'ի պէսպէս ցանկութիւնս իցեն ։ Զի սրբեալն պահովք՝ ազատէ 'ի մեղաց զներքին և զարտաքին մարդն 'ի բծից անտի, որպէս զոսկի և զարծաթ հրով սրբեալ և պարզեալ յաղտոյ անտի. և այսպէս լինի անօթ պատուական պիտանի տեառն իւրոյ. և կամ որպէս զերկաթ ընդդրեալ 'ի փորձողաց կարծր և մաքրական հրով կազմեալ 'ի պէտս մարդկան ։ Զի և սուրբ առաքեալքն և մարգարէքն նախ ինքեանք սրբեցան պահովք և ա՟մ սուրբ կարգօք, և ապա քարոզեցին զհաւատս և զուղեղ վարս հանդերձ ա՟մ սրբութ՟բ ։ Որք հաւատացին 'ի ձեռն շնորհացն 'ի Քս, սրբեցան և եղեն օթևան ա՟ծութե՟ն ։ Զի եղեն սուրբքն աղբիւրք հրեղէնք, և զամենեսեան արբուցին հրով Հոգւոյն սրբութ՟բ պահոց. որք ընթանան 'ի կէտ կոչմանն որ 'ի Քս ։

Պահք աղ են, որ անուշացուցանեն զնեխութիւս հոգւոց և մարմնոց ապտեղութե՟ մեղաց, և անուշացուցանեն ընդ անոյշ կամս Հոգւոյն սրբոյ անարատութեամբ. զի և աղ յերկրէ ելանէ և անուշէ զայլսն ։ Պահք յորդորեն զմարդիկ յապաշխարութի և յուղղութի ածեն. և ըստ խոստովանութե՟ կարգին հաստատեալ 'ի պահս՝ լուծանին մեղքն ։ Զի որպէս զանասուն համարեալ են՝ որք ոչ զգան 'ի ձեռն պահոցն սրբութ՟բ մերձենալ առ տէր ։ Եւ իմաստունք են՝ որ զառհաւատչեայ յուսոյն կենաց ընկալեալ են յան-

ձինս. և յիմարք են՝ որ 'ի պատիրս յուսահատութե՟
իւրեանց կապեալ են: Եւ երկոցունց պիտոյեն պահք.
զի որ կատարեալ է 'ի գիտութե՟ն, անուշացուցանեն
պահք զճաշակս սրբութե՟ ըստ հաճոյից տեառն, և
զտխմարսն ածեն 'ի գիտութի՟ ճշմարտութե՟ հաւա-
տոցն: Եւ որք կենդանիքն են առ սրբութի՟ն, ամրա-
ցեալ պահէ անարատս պահք, Եւ որ մեղօքն են մե-
ռեալ, կենդանացուցանէ պահք, խառնեալ ընդ նմա
զա՟մ արդարութիւնս: Զի որպէս կերակուրք աղիւ
համեմին և 'ի պէտս մարդկան հրով անուշանայ, այս-
պէս կամք մտաց և մարմնոյն կատարեալ պահովք
համեմին 'ի շնորհաց Հոգւոյն, և 'ի մեծութի՟ տէրու-
թե՟ն նուիրին և տան զխաղաղութի՟: Զի Հոգին սուրբ
թշնամանի յանժոյժ որկորստութենէ և 'ի ստահակ
յանդգնութենէ և 'ի զբօսանաց արբշռաց, որք զանձինս
իւրեանց ետուն 'ի կամս շուայտութե: Զի որպէս ան-
ժուժկալութի՟ն Եւայի և Ադամայ անէծս 'ի վերայ
եած և մահ, նոյնպէս ծնելոցս 'ի նոցանէ որ զնոյն
անժուժութի՟ն ունին՝ արտաքոյ բարւոյն որովայնա-
մոլութե՟ն անկանիցին: Իսկ պահք և ժուժկալութի՟
փրկչին եբարձ զթշնամութիւն 'ի միջոյ և հաշտեցոյց
զա՟ծ ընդ մարդկան 'ի ձեռն խաչի և կամաւոր չար-
չարանաց. որք հաւատացին կենսաբեր քարոզութե՟ն,
որ կոչեաց զմարդիկ 'ի կեանս վերստին նորոգմանն:

Պահք պարիսպ հզօր և դուռն ամուր, որ պահէ
'ի մտից վնասակարաց 'ի խարամանկ թշնամւոյն մերոյ:
Զի մի լիցուք որպէս զորդիսն Հեղեայ անժոյժք, որ
զբարկութի՟ն ա՟յ շարժեցին ի վերայ ինքեանց և հօրն և
ժողովրդեանն ա՟յ: Այլ ժուժկալք որպէս Սամուէլն,
որ պահօք սնեալ 'ի մանկութե՟՝ եղև գլուխ մարգա-
րէից: Պահք շիջուցանեն զբորբոքեալ հուրն ցանկու-
թե՟. զի որպէս հուր 'ի նիւթոյ պակասեալ շիջանի,
նոյնպէս և որովայնամոլութի՟ և արբեցութի՟ պակա-
սեալ՝ ցանկութի՟ն բոց շիջանի, և սրբութե՟ն և արդա-
րութե՟ն բողբոջի պահովք անդեալ: Պահք ցամաքե-
ցուցանեն զգիջութի՟ պղծութե՟. և որպէս յերաշտութէ
խոնաւ երկիր չորանայ, այսպէս դարշացեալ անձն 'ի գի-
ջական զազիր ախտէ սրբեալ անուշահոտանայ: Պահք
արգելու զեռանդն ցանկութեան մանկանց. որ հրով

ախտին տօչորի 'ի Թշնամւոյն շարժմանց ։ Պահք դադարեցուցանեն զկտուԹիս որ 'ի կերողուԹէ և յարբեցուԹէ յառաջագային. զի մերձեալ պահք 'ի մարմնոյ՝ վերաստեղծու 'ի սրբուԹիս ։ Պահք խափանեն զյոյզս մտաց և մարմնոյ՝ պղտորեալս 'ի յուղղից ցանկուԹեց հոսմանց, և յստակեալս սրբուԹեանէ զիմանալի և զհոգեկիր երկիրն ։

Պահք նաւահանգիստ են խաղաղ ծովածուփ ալեաց ախտից և ամ՟ փխասու, և առաջնորդէ 'ի կենաց նաւահանգիստն, զի մի փխասեսցի յորկորստուԹէ և յարբեցուԹէ 'ի մահ 'ի ծովու մեղաց ալեկոծելով ։ Պահք եկեալ՝ խաղաղուԹի առնեն ամբոխից, և հանդուցանեն զսպասաւորս, և ամենեցուն առաջնորդ լինի 'ի զգաստուԹի՝ զվերինսն խորհելով որ 'ի քս ։ Պահք սանձք են ստահակաց՝ որ անարգել են յանիրաւուԹիս ։ Զի որպէս ձիոյ սանձս 'ի բերանս դնի, և ամ՟ մարմինն նուաճի և անսայ 'ի կամս երասանակակալին առ հոգևոր պատերազմն ։ Իսկ որոց միտքն վառեալ իցեն արդար և սուրբ խորհրդովք, զգայարանսն կազմեալ պատուիրանապահուԹեան. և եԹէ ոչ ունի զպահոցն պնդուԹի, յարձակել մարտին դիւրաւ ըմբռնի ։

Առաւել ևս զգուշացուցանէ 'ի մսոյ և 'ի գինւոյ բանս խրատու. զի գինի առաւել յիմարեցուցանէ զզգայուԹիւնս և զմիտսն և եռացուցանէ զցանկուԹիւնս և յանառակուԹի շարժէ, մանաւանդ զմանկանց. և հասուածն գիջուԹէ 'ի մարմնոցն լինի ։ Գինի ԹմբրուԹի սրտի, պապանձումն բերանոյ, խաւար աչաց, խլուԹի ականջաց, լուծուԹի ձեռաց, դայԹակղուԹի ոտից, ցնորք խորհրդոց, ծանրուԹի քնոյ, Թշնամի արդարուԹե ։ Գինի զերկիւղ մերժէ, զպատկառանս 'ի բաց մղէ, և զյիշատակս պատուիրանացն քամահէ, և զխնամս սուրբ սիրոյն զանցուցանէ, և յուղիղ հաւատոցն զարտուղի հանէ, և զահեղ դատաստանն անյիշելի Թողու, և ոչ տայ Թոյլ զմտաւ ածել զմահ և զանվախճան տանջանսն ։

Օ այս ասելով ոչ 'ի հիւանդաց և 'ի տկարաց արգելում զսակաւապիտուԹի գինւոյ ըստ Առաքելոյ խրատուն վասն ստամոքսի և ստէպ հիւանդուԹե առ

տկարս և առ ծերս ։ Իսկ որ կարողք և մանկագոյնք են հասակաւ, զգոյշ կացեն 'ի մսոյ և 'ի գինւոյ, զի մի՛ դիւրաւ ըմբռնեսցի 'ի հանապազորդ թշնամւոյն, որսացեալք 'ի նմանէ 'ի նորա կամս ։ Զի գինի և արբեցութի ապականեն զկատարեալ արս իմաստունս․ իսկ զանկատարս մարմնով և մտօք զի՞նչ պարտ է ասել ։ Զի որպէս հրով տոչորի և վառէ զցանկութեն բոց․ զի հուր զմարմինն միայն այրէ, իսկ միս և գինի զհոգին շարժմամբ ցանկութե ։ Եթէ հուր առանց նիւթոյ շիջանի, ապա և ցանկութի առ 'ի պահոց ։ Ապա եթէ անարգել յուտել և յըմպել և 'ի զբօսանս իցէ մանկութին, մի՛ ակն ունիցի ողջախոհանալ 'ի սրբութիս․ այլ եռացեալ ցանկութի որովայնամոլութե՛ն՝ հեղու զհոսանս և այրէ զորս գտանէ ախտին սիրողս, և կազմէ դատապարտանս ինքեան սրտմտութե և հաղորդակցաց իւրոց․ «Զի որդն նոցա, ասէ մարգարէն, ոչ վախճանի և հուրն նոցա ոչ շիջանի․ և եղիցին 'ի տեսիլ ամենայն մսեղեաց»։ Այսքան պատիժք ունին որովայնամոլք և արբեցողք․ որք կան և մնան 'ի նմին և ապականեն զանձինս պէսպէս դարշութե՛ ախտիւք ։

Պահք ճշմարիտ զամ̃ ցանկութիւնս 'ի բաց մերժէ զհոգւոց և զմարմնոց, և հեռանել յամ̃ արդարութիս, և ժուժկալ լինել՝ որք զինուորինն ընդդէմ հոգւոց և մարմնոց առ 'ի լուծումն մեղաց ։ Այլ կալ մնալ 'ի բարեպաշտութե ջանս 'ի ՔՍ ՅՍ 'ի տէր մեր․ որում փառք յաւիտեանս․ ամէն ։

# ՆՈՐԻՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ԵՐԱԽՏԱՒՈՐՈՒԹԻՒՆ ԱՆՋԵՂՋ ԲԱՐԵՐԱՐ ԿԱՄԱՑՆ ԵՒ ՅՈՐԴՈՐՈՒՄՆ Ի ԼԱՒՆ ԵՒ ՅԱՌԱՒԵԼՆ ԸՍՏ ՃՇՄԱՐԻՏ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆՆ Ի ՓԱՌՍ ԱՄԵՆԱՍՈՒՐԲ ԵՐՐՈՐԴՈՒԹԵԱՆՆ ՃԱՌԵԱԼ

### Ա

ՇՆՈՐՀՍ ունիմ երախտեաց բարերարութեան անսկզբան և անփոփոխ միշտնջենաւոր տէրութեան սուրբ Երրորդութեան, որ աղբիւրն է ա̃մ արարածոց երկնաւորաց և երկրաւորաց, և որ 'ի նոսա արարածք են։ Եւ արբուցանէ զամենեսեան առհասարակ բարերար կամօք, ամենագիւտ սիրոյն խնամովք. զի ժառանգորդս արասցէ զբանաւորս միշտնջենաւոր երանութեանց։ Զի առողջ, սուրբ և անաղտ լիցուք 'ի պատուիրանացն պահպանութիւնս, և անբիծ երախտեօք՝ մաքրիմ սիրով և ուղեղ հաւատով լինել օթևան սուրբ՝ ամենասուրբ Երրորդութեան, և կալ 'ի միջակութեան հանապազ վասն առնուլ սիրոյ արարչին, և կենացն և փրկութեան ընկերաց. աշակերտել բարերար կամացն և հնազանդել, և ցուցանել զհանդէս լաւութեան ըստ հոգևոր օրինացն յորդորմամբ յաւելոյն։ Առնել զկենդանի խրատուն զսերմն, և հատուցանել զարմտիս հարիւրաւորս. զի որպէս եղեալք 'ի նմանէ, նոյնպէս խնամեալք 'ի նորա շնորհացն։ Որպէս երկիր բարի զսերմն բարի ընկալեալ՝ բազմապատիկ առնէ զարգիւնս արմտեացն, նոյնպէս զսերմանեալն 'ի մեզ խրատս բազմապատիկս արասցուք արդիւնս իշխանական կամօք. զի և ընտրութիւք են 'ի տեսակէն լաւաց և վատթարաց արմտեաց։

Զի որ զընկերն սիրէ ըստ ա̃յ սուրբ սիրոյն, արմտիք լինին սուրբ. է որ 'ի ձեռն շահաւոր օգտից, և է

որ 'ի ձեռն բարի խրատու՝ յորդորել 'ի հոգևոր շահս, և առնել զմխիթարական սիրով Հոգւոյն։ Զի «Սէր, ասէ, ոչ կերպարանի, ոչ ամբարտաւանի, ոչ ամբարհաւաճէ, ոչ նախանձի, ոչ խորհի զչար ընկերի, այլ զբարի. ա՟մի տևէ, ա՟մի համբերէ, և ոչ երբէք սէր 'ի չար փոխի 'ի բարւոյն»։ Եւ ա՟մ առաքելոց և մարգարէից գլուխ սէր է՝ որ 'ի միասին և յա՟ծ կապէ։ «Սիրեսցես զտ՟ր ա՟ծ քո, ասէ, յա՟մ սրտէ. և զընկերն քո իբրև զանձն քո»։ Զի որ կայ 'ի սէրն, կայ յա՟ծ։ Զի սիրել զընկերն՝ զա՟ծ է սիրել։ Եւ բազում շահս անձինն ստանալ յա՟յ և ընկերաց սիրողաց ա՟յ։ Իսկ որք անձնասէրքն են առաւել քան զարժանն, զընկերին շահս յինքեանս ձգեն. և անդ լինի զրկումն և զլացումն և ապիրատութի, ստութի, երդմնահարութիք, զզուել հարկանել սպանանել։ Եւ վասն այսորիկ օրինադրեաց մարգարէիւք, և քարոզեաց առաքելովք, և խրատէ քահանայապետիւք և ժառանգաւորօք եկեղեցւոյ, զի ողջախոհասցին յարդարութի և 'ի սըրբութի և յիրաւունս. յուսով արքայութեն առնուլ առ զառհաւատչեայ ազատութեն և անհոգութեան մեծարանօք 'ի գոհութի ա՟յ. զանձն և զտուն ազգօք ազատել 'ի պատժոյ և օրհնել 'ի ա՟նէ. և 'ի հանդերձեալն փառս և պսակս անեղծս պարծանօք 'ի Ք՟է։

Այլ և զթագաւորս և զիշխանս և զդատաւորս 'ի խաղաղութի և 'ի շինութի աշխարհաց կարգեաց ա՟ծ. զի զամբարիշտս, զչարս, զգողս, զյափշտակողս և զա՟մ անիրաւս պէսպէս տանջանօք և մահուամբ զարհուրեցուսցեն. զի ա՟մ չարագործք ըմբռնեալ 'ի յահէ արգելցին 'ի չարեաց։ Բայց է և 'ի նոսա անիրաւութիւնք նման նոցա և առաւել ևս, որք կաշառօք և կամ այլ ևս չարեօք բազմացուցանեն զանօրէնութիս համարձակեալ 'ի մեղս։ Եւ վասն այսորիկ բանան գրաւոք բարկութե սովոյ և սրոյ և գերութե և պէսպէս վտանգից մահուց. և յետ սատակեցս 'ի հրախառն խաւարին արտաքին, ուր լալ աչաց է և կրճել ատամանց։

Իսկ իրաւախորհքն և արդարադատքն փրկութե և կենաց պատճառք լինին բազմաց, առողջութե և խաղաղութե և շինութե աստ, և անդ փառօք պսա-

կեալ 'ի գլուխ բազմականացն արդարոց ։ Զի աղբիւրք են յիրաւանց ա՛յ՝ ուստի կեանք բաշխին բարեգործացն, և հարուածք և մահք անիրաւացն ։ Եւ լոյս գիտութեան ա՛ծային գրոց յայտ առնեն զբարեգործացն բարի հատուցումն, և անիրաւացն զհարուածս բարկութեան ։ Եւ յերկուցունց կողմանց յայտնի լինին արարչին իրաւունք . զարդարոյն փառաւորէ, որ հոգևոր օրինօքն հաճոյացան տէրութեան, և կացին 'ի ճշմարտութեան 'ի սրբութեան յա՛մ արդարութիւն . որք և անանց լուսոյն փառաւորեալ պսակին 'ի տիեզերական ատենին յաւուրն յետնում առաջի երկնաւորաց և երկրաւորաց ։ Իսկ և զանիրաւսն անարգանօք դատապարտէ 'ի պատիժս, որք արհամարհեցին զպատուիրանս նորա և ոչ պահեցին զսրբութիւն և զիրաւունս և չթողին յոյս անձանց, և վասն այսորիկ եղեն ժառանգորդք յաւիտենական տանջանացն ։

Օ ի յանձնիշխան կամացն այլ և այլ բարք ծնանին, և 'ի բարուցն գործք և 'ի գործոցն առնուանք չար կամ բարի, և ըստ անուանն հատուցումն ։ Եւ բարւոյ կամացն ծնունդ բարի և հնազանդութիւն, և 'ի հնազանդութենէ հպատակութիւն, և 'ի հպատակութենէ սէր, և 'ի սիրոյ բազմաշահ երախտիք բարեաց ։ Նոյնպէս յարհամարհանաց և 'ի ծուլութենէ և յանհնազանդութենէ ա՛մ գժնդակութիւնք ծնանին, և ապախտաւորութիւն առ երախտիս արարչին մեր ։ Եւ պատճառ այսոցիկ ծննդոց անձնիշխան կամակարութի մտաց . և զաներևոյթան յերևելիս բերեն 'ի լաւն կամ 'ի վատթարն հակամիտեալ ։ Այլ որք ընդդրեն զբարիս և առնեն, երանելիք են . իսկ ապիրատքն պատժին խորատիւք . զի պղծացին և ապաշխարեցին զկամակար վարուն անիրաւութեանց, և գոցեն զողորմութեան շնորհ 'ի բարերարն ա՛ծոյ՝ որ գթայ առ արարածս իւր և ոչ թողու 'ի խնամակալ սիրոյն իւրոյ ։ Զի զանբաւ և զանպատում բարիսն տայ որք խնդրեսն 'ի նմանէ, և լինի պարգևատու որք աղաղակեն առ նա 'ի տուէ և 'ի գիշերի, և ըստ աւետարանական երանութեանցն կոչէ յիւր արքայութիւն և 'ի փառս . զի ճշմարտեալ ըստ կարգացն Քնի՝ ժառանգեսցուք զերանութիւնս ։

«Երանի, ասէ տէրն, աղքատաց հոգւով, զի նոցա է արքայութիւն երկնից»․ որք վասն աւետեացն՝ հոգւով կամաւ աղքատացան, 'ի բաց ընկեցեալ զմարմնաւոր դժնդակ մեծութիւն՝ և հոգևոր յուսովն զգեցան զմշտնջենաւոր մեծութիւնն։ Սուրբ մտօք և մարմնովք անկեղծաւոր հաւատով կատարեցին զկամս նն սիրով․ որպէս իմաստունն նաւապետք ուղղելով զնաւ մարմնոյս 'ի ծովածուփ աշխարհական ալեացս, Թափեալ զծանր բեռինս յաշխարհիս ծովու, և հոգւով Թռուցեալ հասցեն 'ի նաւահանգիստն խաղաղութե։ Այսպէս հոգւով աղքատացեալքն երանին, որ ընդ նմ վտանգս աշխարհիս անցանելով հոգւով և ճշմարտութբ անփոյթ պահեցին զանձինս 'ի չար ցանկութեց, 'ի փառասիրութէ, յընչասիրութէ։ Առ ձեռն պատրաստ ունելով զնմ ցանկութիս, և զամենեքումբք զանց արարին վասն անճառ երանութեն՝ որ կայ պահի յուսացելոցն 'ի քս, որ վասն մեր աղքատացաւ ստուգապէս, որ տէրն է փառաց։ Զի հայեցեալք յելս գնացից կամաւոր աղքատութեն երախտաւորին՝ հասցեն յօԹևանս կենաց 'ի դուռն փրկութե յանփոփոխ երանութիւն, որ լին է կենդանի անուշակ երանութբ։

«Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիր»։ Զաւետիս եկեղեցւոյ ասէ երկիր․ որ ամենաշահ կենօք հանդարտութբ են վարք, ազատեալք յամբոխից և 'ի խռովութէ փորձանաց։ Ցնմ դժնդակացն որք զինուորին՝ անշարժ մնալ միշտ։ Հեզութբն ցածուցանել զնմ բարկութի և զխստակար շարժմունսն՝ զինքեան և կամենեցուն, որ ամբաստանօք լի է, 'ի կշտամբանս, 'ի տոյժս, 'ի տուգանս, յանարգանս, յամօթ և 'ի պէսպէս տանջանս։ Իբրաւամբք հեզութեն առաջնորդել յնմ արդարութիս․ յամբծութի, 'ի սրբութի, 'ի սէր անշարժ, յուղիղ հաւատս։ Ընդարձօք հեզութբն ընակել յերկրի, և զուարթածաղիկ առ նմ առաքինութիս անուշահոտ հեզութբն զարդարեալ, և յուսով ակն ունել մշտնջենաւոր անփոփոխ անվախճան կենսատու երանութեցն։

«Երանի, ասէ, սգաւորաց, զի նոքա մխիթարեսցին»։ Որոց ընկալեալ են շնորհս 'ի Հոգւոյն որ առ

ած. տէր բաղձալի, խնդիրս արտասուաց. անմեկնելի 'ի նմանէ լինել յայ սգաւորն, որ անձկայ շնորհօք տեսանել զանճառելին՝ որ որբոցն տուաւ։ Այլ և զղջացեալսն է իմանալ սգաւորս, որք դառնան 'ի չարաչար վարուց սորա խոստովանութբ, և հանապազ արտասուօք խնդրեն զթողութի մեղաց յամենեցունց ածէն. զի կարասցեն հասանել յօթևանս կենացն՝ որ լի է անմահութեամբ, և զուարթածաղիկ զուրախութիւն ընդ ճշմարիտ սգաւորսն ժառանգէ զերանութիւն՝ որ յաւիտենից մխիթարութին է։

«Երանի որ քաղցեալ և ծարաւի իցեն արդարութե, զի նոքա յագեսցին»։ Որք հրաւիրանաւն կոչեցան 'ի հոգևոր հարսանիսն, զի վայելեսցեն զբարիսն. որ մեծաւ բաղձանօք ցանկան լնուլ արդարութե ճաշակօքն։ Որպէս քաղցեալքն և ծարաւիքն ըստ համահաւր քմացն խորտկաց և ըմպելեաց լցուցանեն ըղպէտս ցանկութե 'ի կերակուրս և յըմպելիս, այսպէս և փափաքողք ածայնոյն վայելից՝ արժանաւոր կարգօք փութան հասանել 'ի բաղձալին և 'ի յայժ ախորժելի ճաշակումն՝ որ կայ մնայ միշտ, որ երանութին է զարդարեալ յարքայութեն արդարոց։ Որ միշտ վայելեն զաննուազ և զանսպառ բարիսն, որք աստէն ժողովեցին 'ի շտեմարանս անմահ կենացն։

«Երանի որք լան այժմ, զի նոքա ծիծաղեսցին»։ Որք զերծանել ցանկան յերկրաւոր 'ի զբօսանաց, 'ի յագահութէ, 'ի չար ցանկութեց. և ջանան մտանել առ ած, ջերմեռանդ արտասուօք խաշտանգեալ զանձինս և նեղեալ բազում նեղութբք. զի սուրբ և անբիծ և անարատ երախտեօք բարերարին հասցէ յուրախութիւն ան 'ի վայելսն անուշակս հանգըստեան սիրոյն սրբութե լնուլ զբաղձանս անձկոյն որ առ ած, զոր արտասուօքն խնդրէր միշտ զերանութիւն զորդեգրութեն շնորհս, որ լի է անճառ խնդութբ 'ի փառս ածութեն։

«Երանի ողորմածաց, զի նոքա ողորմութի գտցեն»։ Որ գործակցութբ ողորմութեցն այ նմանեալ, այժ օգտութե առեալ յածեղէն զօրութէ անտի. զի ամենեցուն ողորմեցին առաջնորդել, ուսուցանել, օգնել նեղելոց, լցուցանել զկարօտեալս 'ի պէտս հո-

գեղօրս և մարմնաւորս ։ Զի ընկալցի զբարիսն յերկրի աստ զողորմութեն շնորհօ 'ի ա՟նէ, և 'ի հանդերձեալսն զառատապարգև բարիսն՝ որ լին է ա՟մ երանութիք, զոր պատրաստեաց ա՟ծ ողորմածացն ։

«Երանի այնոցիկ որ սուրբ են սրտիւք, զի նոքա զա՟ծ տեսցեն»։ Որ շնորհօքն ա՟յ հաւատով և ճշմարտութի, սրբութի և արդարութի զա՟մ բիծս մարմնոյ և զմտաց սրբել զչար ցանկութեց ։ Եւ մաքուր խորհրդով և անարատ մարմնով հայել 'ի փառս ա՟ն ․ իբրև ընդ հայելի տեսանէ իմանալեօքն զիմանալի ա՟ծութեն լոյս ։ Ապա եթէ ժանգով մեղացն աղտեղեալ իցէ, չար ցանկութիքն և չար խորհրդովքն և չար գործովքն, և ոչ սրբէ զխորհուրդս և զզգայարանսն և նայի 'ի վեր 'ի ճառագայթս ա՟ծութեն որ 'ի ք՟սն է արդարութե արեգակն, ոչ տեսանէ զլոյսն մեծ ամենասուրբ Երրորդութեն, որ յիմանալիսն ծագէ և լուսաւորէ զսուրբսն սրտիւ և զանարատսն անդամօք ։ Զի ժառանգեսցեն զերանութիս կենացն անմահից, որ տայ զառհաւատչեայ տեսութին 'ի ք՟ս Յս ։

«Երանի խաղաղարարաց, զի նոքա որդիք ա՟յ կոչեսցին»։ Որ գործակից են Որդւոյն ա՟յ, որ արար խաղաղութի և հաշտեցոյց զՀայր ընդ արարածս ։ Զի որ հրաժարեալ է 'ի չար ամենայնից և 'ի խռովութէ և 'ի ցասմանէ և 'ի չար ցանկութէ, և խաղաղացեալ սիրով, այնպիսին ունի զհիմն խաղաղութե մտաւոր հոգւոյ 'ի ք՟ս ։ Զի որպէս Որդին ա՟յ որ եբարձ զխռովութի որ յաղագս մեղացն պատահեացն էր առ մարդիկ, և աւետարանեաց զխաղաղութի, նոյնպէս, ասէ, լինել խաղաղարար, զի եղբարք նորա լիցուք՝ նմանեալ խաղաղարարքին ։ Զի թէ մեծաց իրաց խաղաղարար լինի և կամ փոքունց յաղագս ա՟յ և մարդկան փրկութե, և բառնայ 'ի միջոյ զվնասակար թշնամութի հոգւոյ և մարմնոյ, հաշտ և խաղաղականնին համդիպի, և զանուն և զփառս Որդւոյն ա՟յ ժառանգէ հանդիսիւք լաւութե, սուրբ և անբիծ և անարատ խաղաղարար 'ի ք՟ս ․ որ աստ մեծարի և պատուի, և անդր բարձրանայ և փառաւորի խաղաղարար երանութիք 'ի ք՟ս ։

«Երանի որ հալածեալ իցեն վասն արդարութե,

զի նոցա է արքայութիւն երկնից»։ Զվկայից զհան-դէս ցուցանէ բանս և զամ՛ առաքինութեանց. զի որ յամէ օտար է, և մասն չունի ինչ ընդ երկրաւորս և պատճառս ինչ եկամուտ զբաղմանց, անյար 'ի մա-սակար ցանկութիւս, այնպիսիք են որ 'ի չարէն հալա-ծեալք և առ ած դիմագրաւեալք հաւատով վասն ճշմարտութեան աւետարանին քարոզութեան։ Որպէս և Առաքեալն ասէ՝ եթէ «Որ կամին ածպաշտութեամբ կեալ 'ի Քս Յս, 'ի հալածանս կացցեն. զի մարդք չարք և կախարդք յառաջ եկեսցեն 'ի չար անդր 'ի մոլորե-ցուցանել»։ Իսկ սուրբք հալածին 'ի չարէ 'ի բարին որ առ ած և յայ առեալ. զի մի նմանեսցեն անա-ռակ որդւոյն, խաբեալ 'ի դիւաց ելցեն 'ի հայրենի խնամոցն, վատնել զօրութեան վարսն անառակութեամբ։ Այլ դարձցին՝ նմանեալ 'ի հայրենի խնամսն՝ 'ի չա-րասիրաց հալածչաց 'ի դիւաց 'ի մարդկանէ, զի հառ-ցեն հալածանօքն 'ի խոստացեալ աւետիսն արքայ-ութեան անճառ երանութեանն պսակեալք 'ի փառս ա-մենազօր ածն այ։

«Երանի, ասէ, ձեզ, յորժամ նախատիցեն զձեզ մարդիկ և հայհոյեսցեն և ասասցեն զամ՛ բանս չարս զձէնջ սուտ վասն իմ. ցնծացէք և ուրախ լերուք, զի վարձք ձեր բազում են յերկինս»։ Զի 'ի ձեռն լա-ւութեան փառք և պատիւ ընծային այ հանդիսիւք նահատակեալ 'ի Քս, որ զինուորին ընդդէմ հակա-ռակ ճշմարտութեան։ Այլ օգտակար է առ ամ մար-տուցեալսն համբերութիւն 'ի կամս այ, զի զաւետիս բարեացն ունիցին զարդիս և զհանգերձելոցն։

«Զի այսպէս, ասէ, առնէին սրբոցն՝ որք յառաջ քան զձեզն էին»։ Որք զանունն և զօդիս ժառանգե-ցին համբերութեամբ բազմաւ։ Ոմանք որպէս զերկաթ անվտանգ, և կէսք իբրև զպարիսպ պղնձի ամուր. այլք որպէս զարծաթ զտեալ և սրբեալ որպէս 'ի հրոյ փորձութեամբ։ Իսկ այլք որպէս զոսկի պատուա-կան 'ի սպաս, կամ որպէս զմարգարիտ գեղեցիկ, կամ որպէս ակունս մեծագինս՝ որ 'ի փառս թագաւորաց։ Սոյնպէս և սրբոց և համբերողաց որ զանազան փոր-ձանօք 'ի դժնդակացն կազմեցան, և եղեն վկայք ա-րարչին 'ի փառաւորութեան անմահ թագաւորին։

Զի որպէս զանազանք են հանդէսք իւրաքանչիւրոցն վկայից, խոստովանողաց և կուսանաց և պարկեշտ ամուսնացելոց, նոյնպէս և պարգևք ըստ իւրաքանչիւր արժանաւորութե բաժանին և որոշին յամենեցունց տ՟նէն, որ 'ի միտ առնու զամենեցուն ըզխորհուրդս զբանս և զգործս: Զի որք ճշմարտութբ և անարատ սրբութբ և անբիծ հաւատով նահատակին ընդդէմ չար ցանկութեանցն և ա՟մ վնասակարաց յաղթող լինել՝ զմարտիրոսացն առնուն զպսակն. զի լնուն զբանն տ՟ն. «Արդ, ասէ, զխաչ իւր հանապազ, և եկեսցէ զհետ իմ»: Զի խաչ մարմնական ախտից և դժնդակ վարուց մահ գործէ. որպէս և սուրբքն զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին կարեօքն և ցանկութբքն հանդերձ, յԱռաքելոյ վկայեալ զայս: Զի որպէս նոցա պէսպէս տանջանքն, նոյնպէս և նոցա զանազան փորձանք. զի յա՟մ մարտուցելոցն չարաչար տաժանմանցն ոչ յաղթահարի 'ի հոգևոր պատերազմին որպէս քաջամարտիկ. այլ զյաղթութե զշնորհս երևելի ցուցեալ 'ի փառս այ՟:

Բայց է և 'ի նոսա առաւելութի կամ պակասութի առաքինութեն, ըստ նմին և վարձն, եպիսկոպոսաց և քահանայից և սարկաւագաց և դպրաց, որք կուսութբ նահատակին: Այլ և միանձունք և սուրբ ամուսնացեալք զանազանեալք 'ի վարս. որք ստուդապէս ցուցանեն յաւուրն յետնում յայտնութե որ 'ի մեռելոց՝ զիւրաքանչիւրոցն զվարուցն պտուղս: Այլ և որք զճշմարտութին անիրաւութեամբ ունին, կերպարանեալ պատճառանօք զարդարութի: Այլ և անսուրբք և կաշառառուք և զօշաքաղք և մարդահաճոյք և որ այլ ևս են արատք և բիծք զորս ծածկել ջանան: «Զի ոչ ինչ է ծածուկ՝ որ ոչ յայտնեսցի, ասէ տէրն, և գաղտնի՝ որ ոչ ծանիցի»: Զի ստոյգ երևին սուրբք և արդարք. որք ճշմարիտ հանդիսիւքն վշտացան և նախատանօք և թշնամանօք և բազում նեղութբք տանջեալ, և 'ի ճշմարտութենէն ոչ վրիպեալ: Որք և աստ ունին զառհաւատչեայ յուսոյն զերանութեան. զի վիշտքն անցանեն, բայց աւետիք երանութեանցն կան մնան միշտ: Զի աստ առին զազատութի, և անդ ժառանգեսցեն զարքայութին:

Զի ա̃մ հանդիսիւք լաւութեան զերանութեանցն զգրաւականն ընկալան բարի վարուքն, որ պատճառ է փրկութեան յերևելիս և յաներևոյթս, 'ի պատմելիս և յանպատմելիս : Բանն Որդւոյ [1] առ Հայր ասէ. «Որպէս դու և ես մի եմք, այսպէս հաւատացեալք 'ի մեզ իցեն »: Զի զիւրն տայ զորդեգրութեան շնորհ 'ի Հօրէ, և ժառանգորդս իւր առնէ զսուրբս իւր :

Օվ ես մեզ լոյս աչաց և խրատ մտաց, զի արթունք և զուարթունք եղիցուք. կենաց լուսովն առաջնորդեալ և հոգևորական խրատուքն յամենայն գործս արդարութեան, և իմանալի լուսովն սուրբ և արդար կալ մնալ : Զի հոգևոր սուրբ գրոց խրատք գիտութեան ճշմարիտ վարուցն տան, և 'ի հոգևոր կարգըս յորդորեն : Զի զոր ինչ խորհի ոք զաստիս 'ի հիւթանիւթ իրս, զնոյն և շարժմունս մարմնաւորս յիշատակօք ունի զաղտեղութիւն, որ պղտորէ զմիտս և զզգայարանս մարմնոյ : Իսկ եթէ զհոգևորսն խորհի 'ի սրբութիւն 'ի սրբոյ Հոգւոյն աղբերցութեանէ, և ըղհոգևոր վարուցն խորհի և ջանայ 'ի կատարումն առաքինութեան, և [2] վայելէ 'ի շնորհս Հոգւոյն զոր անսանելի է և անլսելի. վասն զի հոգևոր է և մտաւոր, և նա միայն գիտէ' որում աղդիցն :

Այլ որ գիտաց մերձենալ 'ի շնորհս յիշատակաւ սրբութեան և անմեկնելի լինել յանուշութեան վայելիցն, և 'ի նորա գեղն ցանկ պշնուլ, լուսաւորեալ խորհրդովք մերժել զչարին յարձակումն մթագին խորհրդոցն : Կանխել յաղօթս 'ի խնդրուածս ջերմեռանդ արտասուօք և պինդ պահովք ամրացեալ, ունել ըղդըրունս ողորմութեան : Եւ հանցէ և բարձրացուսցէ 'ի վերոյ քան զա̃մ երկրաւորացս շարժմունս և աղդմունս, և առնուլ զհաստատութիւն հոգևոր օգտութեանցն որ ըստ հաճոյից ա̃յ : Յորդորի ըստ Առաքելոյ բանի 'ի վեր նայել, զվերինսն խորհել' ուր Ք̃ս նստի ընդ աջմէ Հօր. «Զի մեռարուք, ասէ, զմեղացն մահ, և կեանքն ձեր ծածկեալ են ընդ Ք̃սիւ յա̃ծ Հայր» : Զի զա̃մ զհոգս երկրաւորս 'ի բաց ընկեցեալ որ խափան է հոգևոր և երկնային կոչմանն. որպէս մշակք առ

1 Այլում Որդի :

2 Այլում նա . . ցանկ պշնու :

գործն և զինուորք առ պատերազմ զինեալք, այսպէս և մեզ 'ի պատերազմ առաքինութե հանդիսանալ միշտ և տքնանալ. զի կարասցուք հարկանել զգունդս չարեացն, զցանկութիւնս և զամբարտաւանութիւնս և զագահութի, և որ ընդ նոքօք են արկածք փառաց յաղթմանէ չարին: Զի նմանեալք հաւատարիմ ծառային՝ մնասցուք յուրախութի տեառն ընդունել զերանութիւնն 'ի Քն, որ կեանքն է հաւատացելոց:

Զի ոչ լուսով նորա գնայ յայլրատն և սատահակն, զի ոչ գնայ ընդ Ճանապարհն արդարոց որ տանի 'ի կեանսն. զի ոչ առնու 'ի սիրտ զխրատս իմաստնոց և զԱծային գրոց: այլ որպէս թակարդ զհօղմն անցուցանէ զխրատն: Եւ յաղագս այսորիկ ասէ տէրն ոչ տալ զսրբութի շանց, և արկանել զմարգարիտն առաջի խոզից: «Զի մարդ բարի, ասէ, 'ի բարի գանձուց սրտէ հանէ զբարին. և մարդ չար զչարն 'ի վեր բերէ»: Զի անձնիշխանական կամքն շարժէ յոր և կամի, եթէ 'ի լաւն և եթէ 'ի վատթարն: Եւ վասն այսորիկ ասէ Առաքեալ. «Ցանէ ամբարշտէ յետ երից խրատուց հրաժարեա»: Եւ Դաւիթ ոչ տայ թոյլ մեղաւորին պատմել զօրէնսն. որ ատեաց զխրատս և յետս ընկեաց զիրաւունսն որ յԱյ եղան: Ցանդգմանէ խստագոյնս՝ որ զօրէնսն ասեն և ոչ առնեն, և լսեն և քամահեն: Զի Այ գիրք 'ի խրատ են և յանդիմանութի, որ քարոզեն զփրկութի որք հաւատով ամբարեն յանձինս: Զի որպէս 'ի մարտուցելոցն 'ի պատերազմունս դժուարինս յաղթեալք խնդան ոչ սակաւուք, և եւս առաւել մարտի յաղթութիւք հոգևորացն է խնդութի:

Զի և մեծատունք և աղքատք յանձնիշխան կամսըն ունին առ բարին շարժումն և առ չարն: Զի աղքատն լի է փառօք մեծացեալ, որ անմեղութբ և Այ առաքինութբ է յարդարեալ: Նոյնպէս և մեծատունքն և ամբիծքն և անարատքն որք զպատուապէտս լցուցանեն. զի զանմեղս աղքատութիւնս որպէս բով զոսկի սրբէ 'ի յաղտոյ, և 'ի պատիւ փառացն Այ բարձրացուցանէ երկնից մեծութբն: Այսպէս համբերութիւք և ժուժկալութիւք որ անարատունչ ունին զաղքատութիւնն՝ մեծանան: Նոյնպէս մեծատունք որ

գթով խնամեն և դարմանեն զկարօտեալսն, նոքա զանմահութիւն և զփառս և զպատիւ ժառանգեն, որ անանցանելին է։ Ապա եթէ զաղքատութիւն ոք անիրաւութեամբ ունի, և անխտիր յանառակութիւն, 'ի շընութիւն, 'ի գողութիւն, 'ի չարութիւն, 'ի ստութիւն, յամենայն գործս չարս, նոքա ընկալցին զպատիժս յերկրի, և անդ զանզերծ պատուհասն։ Եւ մեծատունք որ արգելուն զկարօտելոց զպէտս, և 'ի շռայլութեան և յարբեցութեան կեան, եկեսցէ, ասէ Տէրն, մա՞ն յորում ոչ գիտեն, և ընդ մէջն կտրեսցէ 'ի կենաց, և զմասն նորա ընդ անհաւատս դիցէ յանշէջ հուր գեհենին. զի էր յանառակութեան, և զտուեալսն յԱստուծոյ մեծութիւն ոչ իրաւապէս բաշխեաց յաղքատս։ Զի երկաքանչիւրոցն են իրաւունք, ըստ բարեացն գործոց միանգամայն և անիրաւաց՝ 'ի դատաւորէն։

Սոյնպէս և առողջութիւն ունի զշահս և զվնասս. զի առողջն մարմնով որ կայցէ 'ի հոգևոր առողջութեան, ժրացեալ 'ի բարեպաշտութեան ջանս, ընդունի զաշխատութեանն զհատուցումն զհանգիստն անանց. ապա եթէ ծուլութեամբ 'ի վնասս [1], զանհանգիստն ընդունի զպատիժս անդ։ Սոյնպէս և հիւանդն մարմնով և առողջ հոգւով կայցէ 'ի համբերութեան 'ի գոհութեան Աստուծոյ, և մաքրեալ յամենայն սխալանաց. և յուսացեալ յԱստուած և նմա հաւատայ զշահ անձին՝ ըզմահ և զկեանս, ընդունի զօրհնութիւն յԱստուծոյ և զկատարեալ առողջութիւն. ուստի մերժեալ են ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք. ապա եթէ ոչ, և սա ընդունի ըստ արժանեացն զհատուցումն։

Սոյնպէս և իշխանքն որ ունին զվերակացութիւն աշխարհի, երկուցունց հոգացի. զԱստուած ունել 'ի մտի և ոչ թողուլ 'ի մտաց զկամս նորա, և անձինն սրբութիւն և ամբծութիւն և զամենայն արդարութիւն և ուղղութիւն՝ և զիրաւունս առ ամենեսեան ցուցանել։ Եւ որք ընդ իշխանութեամբ են, 'ի մտերմութեան կեալ. «Զի ոչ ուստեք է, ասէ, իշխանութիւն բաց յԱստուծոյ. և որք են՝ յԱստուծոյ են»։ Եւ իւրաքանչիւր ոք զիւր վարձս առցէ յարդար դատաւորէն, իշխանք և որք ընդ իշխանու-

1 Միւսն 'ի ձեռս զհանգիստն, ընդունի։

թ՟ք են. զի ամենեցունց մի է Տ՟ր արդար՝ որ ըստ ար-
ժանեացն պատժէ և փառաւորէ յորժամ գայ փա-
ռօք Հօր 'ի դատել զերկիր։ Զի որ արդարք են և
լլկին, անդ բազմապատիկ ընդունին զհատուցումն
բարեաց յարդար դատաւորէն։ Իսկ որ մեղաւորք են
և լլկին, զպարտիս մեղաց իւրեանց հատուցանեն.
որ արհամարհեցին զբանն Ա՟յ և ոչ ապաշխարեցին.
զի ամենայնի լինիցի հատուցումն խորհրդոց և բանից
և գործոց երկրաւորացս։ Զի զօրաւորաց և տկարաց
և ամենեցուն իսկ կայ յանդիման լինել առաջի բե-
մին Ք՟ի. որոց բարիս գործեալ իցէ, խնդրեն [1] ըզ-
կեանսն յաւիտենից. իսկ որ ապստամբք են 'ի ճըշ-
մարտութենէ և գործեցին զչար, անվախճան տան-
ջանքն կան մնան։

Այնպէս վերակացութիւք և որք ընդ վերակացու-
թ՟ն են՝ ունին զշահս և զվնասս։ Զի որ զվերակա-
ցութ՟ին ունի, և զինքն Ա՟յ հրամանացն տուեալ է
'ի հնազանդութ՟ի յերևելիս և յաներևոյթս, սուրբ
և անարատ, և առաջնորդ զԱ՟ծ ունել 'ի խորհուրդս
միամիտս, և զինքն արքանեակ Ա՟ն կազմեաց, այնպի-
սիքն առաջնորդեալ յամենայն արդարութիւնս,
զանվախճան վերակացութ՟ին առնուն ընդ սերովբէս
և ընդ քերովբէս և ընդ երկնային զինուորութիւն
սպասաւորս Ա՟յ։ Զի առաքեալք և մարգարէք և քա-
հանայք սուրբք առին իշխանութ՟ի 'ի Տ՟նէ, և եղեն
ճշմարտութ՟են վերակացուք։ Եւ զոր կապեցին յեր-
կրի, եղիցին կապեալ յերկինս. և զոր արձակեցին
յերկրի, եղիցին արձակեալ յերկինս։ Սոյնպէս և
ամենայն սրբոց տուան շնորհքս այս 'ի փրկչէն։

Իսկ եթէ առեալ զվերակացութ՟ի՝ յղփասցի և
ծուլասցի հպարտացեալ իշխանական ճոխութ՟մն, և
ըստ կամաց իւրոց վարէ զառաջնորդութ՟ին և ոչ 'ի
կամս Ա՟յ, և երկբայեսցի յուսոյն որ 'ի Ք՟ս, անկցի
'ի փորձանս, և առանց բժշկութ՟ե է նորա բեկումն։
Այսպէս եղև դժնդակ բարուք սատանայ, և խոտո-
րեալ 'ի Տ՟նէ անկաւ 'ի բարձրութ՟էն և 'ի լուսաւոր
կարգայն, և առանց բժշկութ՟ե է բեկումն նորա։ Տե-

1 Մերն անչր։

սանէի, ասէ տ՟րն, զսատանայ անկեալ յերկնից զառաջնորդն դիւաց հանդերձ իւր հաւանելովքն, և եղև կորուսն սրբոց և առաքինեաց։ Որք առին հրաման 'ի տ՟նէ լուծանել զնորա թոյնսն որպէս օձից և քարբից, և ոչ կարեն մեղանչել։ Իսկ հաւանեալքն նորա կամացն և ապստամբեալք 'ի ճշմարտութենէն ըդնոյն պատիժս կրեսցեն։ Զի 'ի ձեռն իշխանաց արդարոց և առաջնորդաց սրբոց է շինութիւն աշխարհի և եկեղեցւոյ ա՟յ հաստատութիւն 'ի բարի կամս. զի նոքօք զօրանայ իրաւունք յերկրի և մեծարի սրբութիւն։ Որք և ընդունին զհատուցումն բարի ըստ բարեաց գործոց. համանգամայն և չարեացն որք ոչ կամեցան գնալ յօրէնս ա՟ն։ Եւ իմաստութիւն 'ի դիմացն երևի, որք ըստ ա՟յ վարին և որք ոչ ըստ ա՟յ։ Զի որ իմաստութեան տիրէ, և խորհի յօրէնս ա՟ն 'ի տուէ և 'ի գիշերի, և ամենեցուն լինի առիթ փրկութեան, այն է վերին իմաստութիւն սուրբ և խաղաղարար, լի բարեօք և պտղովք արդարութեան։

Իսկ խորամանկն նմանեալ է բանսարկուին լի անիրաւութեամբ և դժնդակութեամբ և նախանձու շոգմոգք, չարախօսք, ա՟ծատեացք, դատիչ են և նորոգիչ չարեաց. որք տայցեն վրէժս 'ի հուր գեհենին՝ որ պատրաստեալ է սատանայի և որսացելոցն 'ի նմանէ 'ի նորա կամսն։ Զի դիւրագոյն է որք ընդ իշխանութեամբ են՝ կատարել զառաքինութիւն, քան կամակար իշխանութեամբ. «Զի որում շատն տուաւ, ասէ, շատ խնդրեսցի»։ Զի որք կարգաւորք են 'ի վերս իւրեանց 'ի հնազանդութեան արքանեկութեան վկայութեամբ սուրբ գրոց, սոքա երանեսցին։ Զի անդանդաղ վաստակօք 'ի պէտս կարօտելոցն բաւական լիցին միշտ. և 'ի մտերմութեան կացեալ և յանարատ սրբութեան՝ ոչ իւիք դրդեալ 'ի հակառակացն որք ընդդէմ են բարեացն գործոց. և ազատեալք 'ի ծառայութենէ մեղաց, և արքանեակք սըրբութեան և արդարութեան վարուցն միշտ լինեալ, առատ զյիշատակ գովութեան թողցեն, և անդ զփառս և ըդպարծանսն[1] յաւիտենականս առցեն, որ ոչ անցանեն։ Զի կամք է բարերարին ամենեցուն լինել բարե-

1 Միւսն զպայծառութիւն յաւիտենական։

բար և ժառանգորդ անսպառ բարեացն՝ որ յուսացելոցն է։

Ըղձելի է ա̅ծ ամենայն բարեաց՝ որ արբուցանէ զհաւատացեալս ըստ իւրաքանչիւր բարւոյ ցանկութեան սուրբ շնորհօք։ Եւ կեանք է կենդանարար և մշտնջենաւոր, որ զկենդանութի̅ տայ ամենայն արարածոց իւրոց։ Եւ բարերար է առ ամենեսեան, որ պարգևօք իւրովք շնորհէ զքաւութի̅ որք դառնան 'ի չարէն։ Եւ այս է, որ լուսաւոր առնէ զամենայն մարդ որ կամի 'ի խաւարային մեղացն զերծանել 'ի սուրբ լոյսն։ Եւ ճշմարտութենն մօտ է, որք նախաշաւիղ ճանապարհորդեն սրբութե̅ 'ի ճշմարիտ բարիսն։ Եւ 'ի նմանէ ումեք 'ի բացէ լինել չիք, ոչ վերնոց և ոչ ներքնոց. զի զամենայն արարածս ընդ ինքեամբ ունի ամենակարող զօրութե̅ն իւրով՝ զերկնայինսն և զերկրայինս։ Եւ գիտէ զխորհուրդս մարդկան և 'ի միտ առնու զամենայն գործս նոցա և ըստ արժանեացն հատուցանէ։ «Զի ես եմ, ասէ, ա̅ծ. և չիք այլ ոք. որ սպանանեմ զմեղաւորս, և կեցուցանեմ զարդարս». և ոչ ոք է որ հանէ 'ի նմանէ զարարածս իւր։

Եւ է զոր խրատէ վտանգաւոր պատուհասիւք, որ ապիրատ վարուք ընթանան. և է զոր շնորհօք յորդորէ 'ի լաւն և յաւելուլ փառաց ժառանգութի̅ն, որք հաւատով և երկիւղիւ և սուրբ սիրով մերձենան առ ա̅ծութի̅ն. և սրբեալ 'ի մեղաց շնորհօք երախտեացն նորա ծանիցուք զպարգևատուն բարեաց։ Կոչեաց զհաւատացեալս իւր ժողովուրդ. զի խնդրեսցուք զողորմութի̅ 'ի նմանէ և արասցուք զկամս նորա։ Կոչեաց զմեզ ծառայս. զի մտերիմ և սուրբ սիրով և սուրբ վարուք կատարեսցուք զկամս նորա։ Կոչեաց զմեզ և որդիս. զի և 'ի հայրենական խնամսն վայելիցեմք և յորդեգրութե̅ն մի արտաքս ելցուք անսուրբ վարուք։ Զի սուրբ է տէր և 'ի սուրբս բնակեալ է. զի եղբարս իւր անուանէ զսուրբս. ասէ. «Պատմեցից զանուն քո եղբարց իմոց, 'ի մէջ եկեղեցեաց օրհնեցից զքեզ, Հայր»։ Եւ դարձեալ ասէ. «Յորժամ բարձրացայց, զամենեսեան ձգեցից առ իս»։ Զի եկն Որդին ա̅յ փրկել զազգս մարդկան, և ուրախ

արար զհաւատացեալս իւր. զի նովաւ եղեաք և նո-
վաւ փրկեցաք, և առ նա երթիցուք՝ որ հրաւիրեացն
զմեզ և կոչեաց յիւր արքայութիւն և 'ի փառսն, յան-
եղծ և յանվախճան և յանպատում կեանսն. զո-
մանս ինքեամբ և զոմանս 'ի ձեռս առաքելոց և մար-
գարէից և հոգևոր վարդապետաց. զի զամենեցուն
կամի զկեալն և ժառանգորդս լինել կենացն անվախ-
ճանից 'ի փառս ամենասուրբ Երրորդութեան այժմ
և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ՆՈՐԻՆ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՑՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՎԱՍՆ ՎԱՐՈՒՑ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ ՈՐ ՀԱՆԴԻՍԻՒՔ ԼԱՒՈՒԹԵԱՆ ՊՍԱԿԵԱԼ ԵՐԱՆԻՆ

### ԺԱ.

Ամենայն արուեստից լաւութիւն և քաջութիւն և առաքինութիւն սուրբ Երրորդութեան է, որ շնորհօք յորդորէ. վասն զի նա է տուիչ և յաջողիչ երկնաւորաց և երկրաւորաց. և որ զմտերիմ հաւատացեալս և զսուրբս և զսիրելիս իւր աշակերտեաց։ Եւ որք ընկալան զարուեստ լուսաւոր կարգացն, և վառեցան որպէս զճառագայթս լուսոյ 'ի մէջ աշխարհաց. զի ասէ Տէրն. «Դուք լոյս աշխարհի էք, և լուսաւորէ լոյս ձեր զմարդիկ. որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինս է»։ Եւ Առաքեալ իբրև լուսաւորս ասէ շրջել յաշխարհի, զբանն կենաց ունել 'ի զգուշութիւն անձանց և 'ի շահ օգտի բազմաց։ Որ նոքօք սփռեաց զճառագայթս բանին կենաց Ճշմարտութիւն ընդ ամենայն տիեզերս, և կոչեաց զհաւատացեալս 'ի հաղորդութիւն բարերար կամացն իւրոց 'ի կենդանի փառսն անեղծութեան. զի ժառանգաւոր լինիցին արքայութեան արարչին և աւետեաց ուրախութեան անճառ բարեացն։

Այսպիսի յուսով հաճոյացան սուրբքն, և կամօք արարչին զամենայն դժնդակութիւս յանդգամանէ չարին և զշարժմունս մտաց և մարմնոց խափանեցին շնորհօքն Քրիստոսի. անարատ սրբութեամբ, անդադար աղօթիւք և ջերմեռանդն արտասուօք, կատարեալ ժուժկալութեամբ պահովք. սանձել զագահութիւն և զորկորստութիւն, զլկտութիւն և զանառակութիւն և զստահակութիւն 'ի չար անդր։ Ունել զդրունս ողորմութեան յիշատակաւ սիրոյն Քրիստոսի. յորդորեալք 'ի հանդէս բարեաց, և արժանի եղեալ ազատութեան շնորհաց և պարգևաց Հո-

դւոյն սրբոյ վկայութե՟ հանդիսիցն լաւութե՟ն, սուրբ սի-րով, մտերիմ հաւատով 'ի նեղութե՟ն և յանդորրու: Անզգօս և անբիծ ունել զմիտս և զզգայութիս ամե-նայն ճշմարտութե՟: Մի՛ իւիք ունել խարդախութի և կեղծաւոր խորհուրդս, անհաւատութե և անսըր-բութե վարս, որ են պատճառք կորստեան: Այլ ըզ-լուսաւոր զսրբութի՟ն միշտ յանձին ունել ամբիծ ե-րախտեօք սիրոյն սրբութե. Ծաղկեալք առաքինա-սէր վարուք և պսակեալք յաւիտենական յուսովն 'ի գովեստ փառացն ա՟յ: Զի հրով Հոգւոյն սրբոյ յան-արատ սրբութիւնն վերաբերեալ՝ օթևանք ամենա-սուրբ Երրորդութե՟ն լինին յերկրի: Զի ամենայն հան-դիսից և առաքինութեցն զարդ սրբութի՟ն է յե-րևելիս և յաներևոյթս հոգւով և մարմնով: Եւ ար-դարութե ամենայն և քաջութե Թագ և պսակ պար-ծանաց սրբութիւնն է միշտ: Եւ ամենայն կարգաց երկնաւորաց և երկրաւորաց փառք և պատիւ և մե-ծարանք սրբութի՟ն է, որ ընտանեցուցանէ Ք՟ի ա՟յ և ամենայն երկնային զօրութեցն: Պատմուճան լու-սոյ և արմատ բարեաց սրբութի՟ն է. և որ ճշմար-տեալ և միաբանեալ են 'ի գովեստ փառացն ա՟յ՝ ան-մարմնոցն դասք, և լուսաւոր վարուք հաստատեալ կան 'ի սրբութե. վասն այնորիկ են ամենասուրբ տե-րութե՟ն սպասաւորք:

Սոյնպէս հրաման առին առաքեալքն զսուրբսն կարգել 'ի սպասաւորութի եկեղեցւոյ ա՟յ. զի հաղորդ լիցի հրեշտակաց՝ սպասաւոր Ք՟ի պատարագին: Զի որպէս հոգի 'ի մարմինն յարմարի և աճէ զաճումն հասակի, սոյնպէս մտաւոր հոգին զամենայնն քննէ և որոշէ զլաւն 'ի վատթարէն: Սոյնպէս են և հա-ւատք ճշմարիտ ա՟ծգիտութե. որ աճէ զաճումն ա-ռաքինութեցն որ 'ի Ք՟ս, և լինի կատարումն հասա-կի արդարութե՟ն հաւանութե՟ հաւասարել անդա-մոցն 'ի միաբանութի հաճոյիցն ա՟յ: Զի ամենայն լու-սաւոր վարք հաւատովք բովանդակին յերևելիս և յաներևոյթս. զի լուսաւորեալք 'ի գիտութի ճըշ-մարտութե՝ զօրասցի 'ի հանդէս բարեպաշտութեցն որ 'ի Ք՟ս. զի ամենայնի Ք՟սիւ եղև կատարումն՝ եթէ յերկինս և եթէ յերկրի, ասէ Առաքեալ. զի զանե-

Զի որպէս զանազանք են հանդէսք իւրաքանչիւրոցն վկայից, խոստովանողաց և կուսանաց և պարկեշտ ամուսնացելոց, նոյնպէս և պարգևք ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան բաժանին և որոշին յամենեցունց տնկէն, որ 'ի միտ առնու զամենեցուն ըզխորհուրդս զբանս և զգործս: Զի որք ճշմարտութեամբ և անարատ սրբութեամբ և անբիծ հաւատով նահատակին ընդդէմ չար ցանկութեանցն և ամենայն վնասակարաց յաղթող լինել՝ զմարտիրոսացն առնուն զպսակն. զի լնուն զբանն տեառն. «Առցէ, ասէ, զխաչ իւր հանապազ, և եկեսցէ զհետ իմ»: Զի խաչ մարմնական ախտից և դժնդակ վարուց մահ գործէ. որպէս և սուրբքն զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին կարեօքն և ցանկութեամբքն հանդերձ, յԱռաքելոյ վկայեալ զայս: Զի որպէս նոցա պէսպէս տանջանքն, սոյնպէս և սոցա զանազան փորձանք. զի յամենայն մարտուցելոցն չարաչար տաժանմանցն ոչ յաղթահարի 'ի հոգևոր պատերազմին որպէս քաջամարտիկ. այլ զյաղթութեան զշնորհս երևելի ցուցեալ 'ի փառս Աստուծոյ:

Բայց է և 'ի նոսա առաւելութիւն կամ պակասութիւն առաքինութեան, ըստ նմին և վարձն, եպիսկոպոսաց և քահանայից և սարկաւագաց և դպրաց, որք կուսութեամբ նահատակին: Այլ և միանձունք և սուրբ ամուսնացեալք զանազանեալք 'ի վարս. որք ստուգապէս ցուցանեն յաւուրն յետնում յարութեան որ 'ի մեռելոց՝ զիւրաքանչիւրոցն զվարուցն պտուղս: Այլ և որք զճշմարտութիւն անիրաւութեամբ ունին, կերպարանեալ պատճառանօք զարդարութիւն: Այլ և անսուրբք և կաշառառուք և զօշաքաղք և մարդահաճոյք և որ այլ ևս են արատք և բիծք զորս ծածկել ջանան: «Զի ոչ ինչ է ծածուկ՝ որ ոչ յայտնեսցի, ասէ տէրն, և գաղտնի՝ որ ոչ ծանիցի»: Զի ստոյգ երևին սուրբք և արդարք. որք ճշմարիտ հանդիսիւքն վշտացան և նախատանօք և թշնամանօք և բազում նեղութեամբք տանջեալ, և 'ի ճշմարտութենէն ոչ վրիպեալ: Որք և աստ ունէին զառհաւատչեայ յուսոյն զերանութիւն. զի վիշտքն անցանեն, բայց աւետիք երանութեանցն կան մնան միշտ: Զի աստ առին զազատութիւն, և անդ ժառանգեսցեն զարքայութիւն:

Զի ոչ՛ հանդիսիւք լաւութե զերանութեցն զգրաւականն ընկալան բարի վարուքն, որ պատճառ է փրկութե յերևելիս և յաներևոյթս, ՚ի պատմելիս և յանպատմելիս ։ Բանն Որդւոյ [1] առ Հայր ասէ․ «Որպէս դու և ես մի եմք, այսպէս հաւատացեալք ՚ի մեզ իցեն»։ Զի զիւրն տայ զորդեգրութե շնորհ ՚ի Հօրէ, և ժառանգորդս իւր առնէ զասուրբս իւր ։

Օ՛ի եառ մեզ լոյս աչաց և խրատ մտաց, զի արթունք և զուարթունք եղիցուք․ կենաց լուսովն առաջնորդեալ և հոգևորական խրատուքն յամենայն գործս արդարութե, և իմանալի լուսովն սուրբ և արդար կալ մնալ։ Զի հոգևոր սուրբ գրոց խրատք գիտութե ճշմարիտ վարուցն տան, և ՚ի հոգևոր կարգըս յորդորեն ։ Զի զոր ինչ խորհի ոք զաստիօս ՚ի հիւթանիւթ իրաս, զնոյն և շարժմունս մարմնաւորս յիշատակօք ունի զաղտեղութիւն, որ պղտորէ զմիտս և զզգայարանս մարմնոյ ։ Իսկ եթէ զհոգևորսն խորհի ՚ի սրբութի ՚ի սրբոյ Հոգւոյն ազդեցութենէ, և ըղհոգևոր վարուցն խորհի և ջանայ ՚ի կատարումն առաքինութե, և [2] վայելէ ՚ի շնորհս Հոգւոյն զոր անասելի է և անլսելի․ վասն զի հոգևոր է և մտաւոր, և նա միայն գիտէ՝ որում ազդին ։

Այլ որ գտաց մերձենալ ՚ի շնորհս յիշատակաւ սրբութե և անմեկնելի լինել յանուշութե վայելիցն, և ՚ի նորա գեղն ցանկ պչնուլ, լուսաւորեալ խորհրդովք մերժել զչարին յարձակումն մթագին խորհրդոցն ։ Կանխել յաղօթս ՚ի խնդրուածս ջերմեռանդարտասուօք և դինդ պահովք ամրացեալ, ունել ըղդղրունս աղօրմութեան ։ Եւ հանցէ և բարձրացուսցէ ՚ի վերոյ քան զամ երկրաւորացս շարժմունս և ազդմունս, և առնուլ զհաստատութիւն հոգևոր օգտութեցն որ ըստ հաճոյից ամ ։ Յորդորի ըստ Առաքելոյ բանի ՚ի վեր նայել, զվերինսն խորհել՝ ուր Քս նստի ընդ աջմէ Հօր․ «Զի մեռարուք, ասէ, զմեղացն մահ, և կեանքն ձեր ծածկեալ են ընդ Քսիւ յամ Հայր»։ Զի զամ զհոգս երկրաւորս ՚ի բաց ընկեցեալ որ խափան է հոգևոր և երկնային կոչմանն․ որպէս մշակք առ

1 Մխամ Որդի ։ 2 Մխամ նա․․ ցանկ պչնու ։

գործն և զինաւորք առ պատերազմ զինեալք, այսպէս և մեզ 'ի պատերազմ առաքինութե հանդիսանալ միշտ և արիանալ. զի կարասցուք հարկանել զգունդս չարեացն, զցանկութիւնս և զամբարտաւանութիւնս և զագահութիւն, և որ ընդ նոքօք են արկածք մտաց յաղթմանէ չարին: Զի նմանեալք հաւատարիմ ծառային՝ մտցուք յուրախութիւն տեառն ընդունել զերանութիւնն 'ի Քս, որ կեանքն է հաւատացելոց:

Ոի ոչ լուսով նորա գնայ յայլրատն և սատահակն, զի ոչ գնայ ընդ ճանապարհն արդարոց որ տանի 'ի կեանսն. զի ոչ առնու 'ի սիրտ զխրատս իմաստնոց և զածային գրոց: այլ որպէս թակարդ զհոգւոյն անցուցանէ զխրատն: Եւ յաղագս այսորիկ ասէ տէրն ոչ տալ զսրբութիւն շանց, և արկանել զմարգարիտն առաջի խոզից: «Զի մարդ բարի, ասէ, 'ի բարի գանձուց սրտէ հանէ զբարին. և մարդ չար զչարն 'ի վեր բերէ»: Զի անձնիշխանական կամքն շարժէ յոր և կամի, եթէ 'ի լաւն և եթէ 'ի վատթարն: Եւ վասն այսորիկ ասէ Առաքեալ. «Ցանէ ամբարշտէ յետ երից խրատուց հրաժարեա»: Եւ Դաւիթ ոչ տայ թոյլ մեղաւորին պատմել զօրէնսն. որ ատեաց զխրատս և յետս ընկեաց զիրաւունսն որ յԱյ եղան: Ցանդիմանէ խստագոյնս՝ որ զօրէնսն ասեն և ոչ առնեն, և լսեն և քամահեն: Զի ամ գիրք 'ի խրատ են և յանդիմանութիւն, որ քարոզեն զփրկութիւն որք հաւատով ամբարեն յանձինս: Զի որպէս 'ի մարտուցելոցն 'ի պատերազմունս դժուարինս յաղթեալք խնդան ոչ սակաւուք, և եւս առաւել մարտի յաղթութիւնք հոգեւորացն է խնդութիւն:

Ոի և մեծատունք և աղքատք յանձնիշխան կամօքն ունին առ բարիսն շարժումն և առ չարն: Զի աղքատն լի է փառօք մեծացեալ, որ անմեղութեամբ և ամ առաքինութեամբ է յարդարեալ: Նոյնպէս և մեծատունքն և ամբիծքն և անարատքն որք զտառապեալս լցուցանեն. զի զանմեղս աղքատութիւնս որպէս բով զոսկի սրբէ 'ի յաղտոյ, և 'ի պատիւ փառացն Այ բարձրացուցանէ երկնից մեծութեամբն: Այսպէս համբերութիւնք և ժուժկալութիւնք որ անտրտունջ ունին զաղքատութիւնս՝ մեծանան: Սոյնպէս մեծատունք որ

գթով խնամեն և դարմանեն զկարօտեալսն, նոքա զանմահութիւն և զփառս և զպատիւ ժառանգեն, որ անանցանելին է: Այլ եթէ զաղքատութիւնս որք անիրաւութեամբ ունին, և անխտիր յանառակութիւն, 'ի շընութիւն, 'ի գողութիւն, 'ի չարութիւն, 'ի ստութիւն, յամենայն գործս չարս, նոքա ընկալցին զպատիժս յերկրի, և անդ զանզերծ պատուհասն: Եւ մեծատունք որ արգելուն զկարօտելոց զպէտս, և 'ի շռայլութեան և յարբեցութեան կեան, եկեսցէ, ասէ Տէրն, մա՞ն յորում ոչ գիտեն, և ընդ մէջն կտրեսցէ 'ի կենաց, և զմասն նորա ընդ անհաւատս դիցէ յանշէջ հուր գեհեննին. զի էր յանառակութեան, և զտուեալն յԱյ մեծութիւն ոչ իրաւապէս բաշխեաց յաղքատս: Զի երկաքանչիւրոցն են իրաւունք, ըստ բարեացն գործոց միանգամայն և անիրաւաց՝ 'ի դատաւորէն:

Սոյնպէս և առողջութիւնն ունի զշահս և զվնասս. զի առողջն մարմնով որ կայցէ 'ի հոգևոր առողջութեան, ժրացեալ 'ի բարեպաշտութեան ջանս, ընդունի զաշխատութեան զհատուցումն զհանդիստն անանց. այլ եթէ ծուլութեամբ 'ի վնասս[1], զանհանգիստն ընդունի զպատիժս անդ: Սոյնպէս և հիւանդն մարմնով և առողջ հոգւով կայցէ 'ի համբերութեան 'ի գոհութեան Այ, և մաքրեալ յամենայն սխալանաց. և յուսացեալ յԱծ և նմա հաւատայ զշահ անձին՝ ըզմահ և զկեանս, ընդունի զօրհնութիւն յԱյ և զկատարեալ առողջութիւն. ուստի մերժեալ են ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք. ապա եթէ ոչ, և սա ընդունի ըստ արժանեացն զհատուցումն:

Սոյնպէս և իշխանքն որ ունին զվերակացութիւն աշխարհի, երկուցունց հոգացի. զԱծ ունել 'ի մտի և ոչ թողուլ 'ի մտաց զկամս նորա, և անձինն սրբութիւն և ամբծութիւն և զամենայն արդարութիւն և զուղղութիւն՝ և զիրաւունս առ ամենեսեան ցուցանել: Եւ որք ընդ իշխանութեամբ են, 'ի մտերմութեան կեալ. «Զի ոչ ուստեք է, ասէ, իշխանութիւն բաց յԱյ. և որք են՝ յԱյ են»: Եւ իւրաքանչիւր ոք զիւր վարձս առցէ յարդար դատաւորէն, իշխանք և որք ընդ իշխանու-

1 Միւսն 'ի ձեռս զհանգիստն, ընդունի:

թիւնք են. զի ամենեցունց մի է Տէր արդար՝ որ ըստ արժանեացն պատժէ և փառաւորէ յորժամ գայ փառօք Հօր 'ի դատել զերկիր: Զի որ արդարք են և լլկին, անդ բազմապատիկ ընդունին զհատուցումն բարեաց յարդար դատաւորէն: Իսկ որ մեղաւորք են և լլկին, զպարտիս մեղաց իւրեանց հատուցանեն. որ արհամարհեցին զբանն Աստուծոյ և ոչ ապաշխարեցին. զի ամենայնի լինիցի հատուցումն խորհրդոց և բանից և գործոց երկրաւորացս: Զի զօրաւորաց և տկարաց և ամենեցուն իսկ կայ յանդիման լինել առաջի բեմին Քրիստոսի. որոց բարիս գործեալ իցէ, խնդրեն [1] ըզկեանսն յաւիտենից. իսկ որ ապստամբք են 'ի Ճըշմարտութենէ և գործեցին զչար, անվախճան տանջանքն կան նոցա:

Այսպէս վերակացութիւնք և որք ընդ վերակացութեամբն են՝ ունին զշահս և զվնասս: Զի որ զվերակացութիւն ունի, և զինքն Աստուծոյ հրամանացն տուեալ է 'ի հնազանդութիւն յերեւելիս և յաներեւոյթս, սուրբ և անարատս, և առաջնորդ զԱստուած ունել 'ի խորհուրդս միամիտս, և զինքն արքանեակ Աստուածն կազմեաց, այնպիսիքն առաջնորդեալ յամենայն արդարութիւնս, զանվախճան վերակացութիւն առնուն ընդ սերովբէս և ընդ քերովբէս և ընդ երկնային զինուորութիւնս սպասաւորս Աստուծոյ: Զի առաքեալքն և մարգարէքն և քահանայք սուրբք առին իշխանութիւն 'ի Տեառնէ, և եղեն Ճշմարտութեան վերակացուք: Եւ զոր կապեցին յերկրի, եղիցին կապեալ յերկինս. և զոր արձակեցին յերկրի, եղիցին արձակեալ յերկինս: Այնպէս և ամենայն սրբոց տուան շնորհքս այս 'ի Փրկչէն:

Իսկ եթէ առեալ զվերակացութիւն՝ յղփասցի և ծուլասցի հպարտացեալ իշխանական Ճոխութեամբ, և ըստ կամաց իւրոց վարէ զառաջնորդութիւն և ոչ 'ի կամս Աստուծոյ, և երկբայեսցի յուսոյն որ 'ի Քրիստոս, անկցի 'ի փորձանս, և առանց բժշկութեան է նորա բեկումն: Այսպէս եղև դժնդակ բարուք սատանայ, և խոտորեալ 'ի Տեառնէ անկաւ 'ի բարձրութենէն և 'ի լուսաւոր կարգացն, և առանց բժշկութեան է բեկումն նորա: Տե-

1 Մերն անդր:

սանէի, ասէ տրն, զսատանայ անկեալ յերկնից զառաջ-
նորդն դիւաց համդերձ իւր հաւանելովքն, և եղև
կործան սրբոց և առաքինեաց ։ Որք առին հրաման 'ի
տնէ լուծանել զնորա թոյնան որպէս օձից և քար-
բից, և ոչ կարեն մեղանչել ։ Իսկ հաւանեալքն նո-
րա կամացն և ապստամբեալք 'ի ճշմարտութենէն ըղ-
նոյն պատիժս կրեսցեն ։ Զի 'ի ձեռն իշխանաց ար-
դարոց և առաջնորդաց սրբոց է շինութիւն աշխարհի
և եկեղեցւոյ այ հաստատութիւն 'ի բարի կամս. զի
նոքօք զօրանայ իրաւունք յերկրի և մեծարի սրբու-
թիւն ։ Որք և ընդունին զհատուցումն բարի ըստ բա-
րեաց գործոց. համանգամայն և չարեացն որք ոչ կա-
մեցան գնալ յօրէնս այն ։ Եւ իմաստութիւն 'ի դիմացն
երկւի, որք ըստ այ վարին և որք ոչ ըստ այ ։ Զի որ ի-
մաստութիւն տիրէ, և խորհի յօրէնս այն 'ի տուէ և
'ի գիշերի, և ամենեցուն լինի առիթ փրկութեան, այն
է վերին իմաստութիւն սուրբ և խաղաղարար, լի բա-
րեօք և պտղովք արդարութեան ։

Իսկ խորամանկն նմանեալ է բանսարկուին լի ան-
իրաւութեամբ և դժնդակութեամբ և նախանձու շոգմոգք,
չարախօսք, ամբաստեացք, դաւիչ են և նորոգիչ չարեաց.
որք տայցեն վրէժս 'ի հուր գեհենին՝ որ պատրաս-
տեալ է սատանայի և որսացելոցն 'ի նմանէ 'ի նորա
կամսն ։ Զի դիւրագոյն է որք ընդ իշխանութեամբ են՝ կա-
տարել զառաքինութիւն, քան կամակար իշխանութեամբ.
«Զի որում շատն տուաւ, ասէ, շատ խնդրեսցի»։ Զի
որք կարգաւորք են 'ի վարս իւրեանց 'ի հնազանդու-
թեան արքանեկութեան վկայութեամբ սուրբ գրոց, սոքա
երանեսցին ։ Զի անդանդաղ վաստակօք 'ի պէտս կա-
րօտելոցն բաւական լիցին միշտ. և 'ի մտերմութեան կա-
ցեալ և յանարատ սրբութեան՝ ոչ իւիք դրդեալ 'ի հա-
կառակացն որք ընդդէմ են բարեացն գործոց. և ա-
զատեալք 'ի ծառայութենէ մեղաց, և արքանեակք սըր-
բութեան և արդարութեան վարուցն միշտ լինեալ, սաս-
զյիշատակ գովութեան թողցեն, և անդ զփառս և ըղ-
պարծանսն[1] յաւիտենականս առցեն, որ ոչ անցա-
նեն ։ Զի կամք է բարերարին ամենեցուն լինել բարե-

1 Միւսն պայծառութեն յաւիտենական ։

րար և ժառանգորդ անապառ բարեացն՝ որ յուսա-ցելոցն է:

Աղբիւր է Ա̃ծ ամենայն բարեաց՝ որ արբուցանէ զհաւատացեալս ըստ իւրաքանչիւր բարւոյ ցանկութեան սուրբ շնորհօք: Եւ կեանք է կենդանարար և մշտնջենաւոր, որ զկենդանութի̃ տայ ամենայն արարածոց իւրոց: Եւ բարերար է առ ամենեսեան, որ պարգևօք իւրովք շնորհէ զքաւութի̃ որք դառնան 'ի չարէն: Եւ այս է, որ լուսաւոր առնէ զամենայն մարդ որ կամի 'ի խաւարային մեղացն զերծանել 'ի սուրբ լոյսն: Եւ Ճշմարտութե̃ն մօտ է, որք նախաշաւիղ Ճանապարհորդեն սրբութ̃բ 'ի Ճշմարիտ բարիսն: Եւ 'ի նմանէ ումեք 'ի բացէ լինել չիք, ոչ վերնոց և ոչ ներքնոց. զի զամենայն արարածս ընդ ինքեամբ ունի ամենակարող զօրութ̃բն իւրով զերկնայինսն և զերկրայինս: Եւ գիտէ զխորհուրդս մարդկան և 'ի միտ առնու զամենայն գործս նոցա և ըստ արժանեացն հատուցանէ: «Զի ես եմ, ասէ, Ա̃ծ. և չիք այլ ոք. որ սպանանեմ զմեղաւորս, և կեցուցանեմ զարդարս». և ոչ ոք է որ հանէ 'ի նմանէ զարարածս իւր:

Այս է զոր խրատէ վտանգաւոր պատուհասիւք, որ ապիրատ վարուք ընթանան. և է զոր շնորհօք յորդորէ 'ի լաւն և յառաւել փառաց ժառանգութի̃ն, որք հաւատով և երկիւղիւ և սուրբ սիրով մերձենան առ Ա̃ծութի̃ն. և սրբեալ 'ի մեղաց շնորհօք երախտեացն նորա ծանիցուք զպարգևատուն բարեաց: Կոչեաց զհաւատացեալս իւր ժողովուրդ. զի խնդրեսցուք զողորմութի̃ 'ի նմանէ և արասցուք զկամս նորա: Կոչեաց զմեզ ծառայս. զի մտերիմ և սուրբ սիրով և սուրբ վարուք կատարեսցուք զկամս նորա: Կոչեաց զմեզ և որդիս. զի և 'ի հայրենական խնամսն վայելեսցեմք և յորդեգրութե̃ն մի արտաքս ելցուք անսուրբ վարուք: Զի սուրբ է տէր և 'ի սուրբս բնակեալ է. զի եղբարս իւր անուանէ զսուրբս. ասէ. «Պատմեցից զանուն քո եղբարց իմոց, 'ի մէջ եկեղեցեաց օրհնեցից զքեզ, Հայր»: Եւ դարձեալ ասէ. «Յորժամ բարձրացայց, զամենեսեան ձգեցից առ իս»: Զի եկն Որդին Ա̃յ փրկել զազգս մարդկան, և ուրախ

արար զհաւատացեալս իւր. զի նովաւ եղեաք և նովաւ փրկեցաք, և առ նա երթիցուք՝ որ հրաւիրեաց զմեզ և կոչեաց յիւր արքայութիւն և ՚ի փառսն, յանեղծ և յանվախճան և յանպատում կեանսն. զամանս ինքեամբ և զոմանս ՚ի ձեռս առաքելոց և մարգարէից և հոգևոր վարդապետաց. զի զամենեցուն կամի զկեալն և ժառանգորդս լինել կենացն անվախճանից ՚ի փառս ամենասուրբ Երրորդութեան այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

ՆՈՐԻՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՎԱՍՆ ՎԱՐՈՒՑ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ ՈՐ ՀԱՆԴԻՍԻՒՔ ԼԱՒՈՒԹԵԱՆ ՊՍԱԿԵԱԼ ԵՐԱՆԻՆ

### ԺԱ.

ԱՄԵՆԱՅՆ արուեստից լաւութիւն և քաջութիւն և առաքինութիւն սուրբ Երրորդութիւնն է, որ շնորհօք յորդորէ. վասն զի նա է տուիչ և յաջողիչ երկնաւորաց և երկրաւորաց. և որ զմտերիմ հաւատացեալս և զսուրբս և զսիրելիս իւր աշակերտեաց: Եւ որք ընկալան զարուեստ լուսաւոր կարգացն, և վառեցան որպէս զճառագայթս լուսոյ 'ի մէջ աշխարհաց. զի ասէ Տէրն. «Դուք լոյս աշխարհի էք, և լուսաւորէ լոյս ձեր զմարդիկ. որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զՀայր ձեր որ յերկինսն է»: Եւ Առաքեալ իբրև լուսաւորս ասէ շրջել յաշխարհի, զբանն կենաց ունել 'ի զգուշութիւն անձանց և 'ի շահ օգտի բազմաց: Որ նոքօք սփռեաց զճառագայթս բանին կենաց ճշմարտութիւն ընդ ամենայն տիեզերս, և կոչեաց զհաւատացեալս 'ի հաղորդութիւն բարերար կամացն իւրոց 'ի կենդանի փառսն անեղծութեան. զի ժառանգաւոր լինիցին արարածք արքայութիւն արարչին և աւետեաց ուրախութիւն անճառ բարեացն:

Այսպիսի յուսով հաճոյացան սուրբքն, և կամօք արարչին զամենայն դժնդակութիւնս յանդգմանէ չարին և զշարժմունս մտաց և մարմնոց խափանեցին շնորհօքն Ք̃ի. անարատ սրբութ̃բ, անդադար աղօթիւք և ջերմեռանդն արտասուօք, կատարեալ ժուժկալութիւն պահօվք. սանձել զագահութիւն և զորկորստութիւն, զլկտութիւն և զանառակութիւն և զստահակութիւն 'ի չար անդր: Ունել զգլուխս ողորմութիւն յիշատակաւ սիրոյն Ք̃ի. յորդորեալք 'ի հանդէս բարեաց, և արժանի եղեալ ազատութիւն շնորհաց և պարգևաց Հո-

դուոյն սրբոյ վկայութի̃ հանդիսիցն լաւութե̃, սուրբ սի-րով, մտերիմ հաւատով 'ի նեղութեան և յանդորրու ։ Անզգօս և անքիծ ունել զմիտս և զզգայութիւնս ամե-նայն ճշմարտութի̃ ։ Մի՛ ինչ ունել խարդախութի̃ և կեղծաւոր խորհուրդս, անհաւատութե̃ և անսրբ-րութե̃ վարս, որ են պատճառք կորստեան ։ Այլ ըղձ-լուսաւոր զսրբութիւնս միշտ յանձինս ունել անբիծ ե-րախտեօք սիրոյն սրբութե̃ . ծաղկեալք առաքինա-սէր վարուք և պսակեալք յաւիտենական յուսովն 'ի գովեստ փառացն այ̃ ։ Զի հրով Հոգւոյն սրբոյ յան-արատ սրբութիւնն վերաբերեալ՝ օթևանք ամենա-սուրբ Երրորդութեան լինին յերկրի ։ Զի ամենայն հան-դիսից և առաքինութեանց զարդ սրբութիւնն է յե-րևելիս և յաներևոյթս հոգւով և մարմնով ։ Եւ ար-դարութե̃ ամենայն և քաջութե̃ թագ և պսակ պար-ծանաց սրբութիւնն է միշտ ։ Եւ ամենայն կարգաց երկնաւորաց և երկրաւորաց փառք և պատիւ և մե-ծարանք սրբութիւն է, որ ընտանեցուցանէ քի̃ այ̃ և ամենայն երկնայնոց զօրութեանց ։ Պատմուճան լու-սոյ և արմատ բարեաց սրբութիւն է . և որ ճշմար-տեալ և միաբանեալ են 'ի գովեստ փառացն այ̃՝ ան-մարմնոցն դասք, և լուսաւոր վարուք հաստատեալ կան 'ի սրբութե̃ . վասն այնորիկ են ամենասուրբ տէ-րութեան սպասաւորք ։

Սոյնպէս հրաման առին առաքեալքն զսուրբսն կարգել 'ի սպասաւորութի̃ եկեղեցւոյ այ̃ . զի հաղորդ-լիցի հրեշտակաց՝ սպասաւոր քի̃ պատարագին ։ Զի որպէս հոգի 'ի մարմնի յարմարի և առնէ զաճումն հասակի, սոյնպէս մտաւոր հոգին զամենայնն քննէ և որոշէ զլաւն 'ի վատթարէն ։ Սոյնպէս են և հա-ւատք ճշմարիտ ա̃ծգիտութե̃ . որ առնէ զաճումն ա-ռաքինութեանց որ 'ի քս̃, և լինի կատարումն հասա-կի արդարութեան հաւանութի̃ հաւասարել անդա-մոցն 'ի միաբանութի̃ հաճոյիցն այ̃ ։ Զի ամենայն լու-սաւոր վարք հաւատովք բովանդակին յերևելիս և յաներևոյթս . զի լուսաւորեալք 'ի գիտութի̃ ճշ-մարտութե̃՝ զօրասցի 'ի հանդէս բարեպաշտութեանց որ 'ի քս̃ . զի ամենայնի քի̃ եղև կատարումն՝ եթէ յերկինս և եթէ յերկրի, ասէ Առաքեալ . զի զանե-

րեւոյթն յերեւելիս ցուցանեն հաւատք, և զերեւելիս յաներեւոյթն 'ի կամս մտն:

Գանձ անկապուտ են հաւատք, որք զբարիսն 'ի մեզ ամբարեն. և 'ի ձեռն շնորհացն յայտնեաց հաւատովք զպարգեւս փրկութե՟ և կենացն անմահից, զի զամենայն երանութիւն յուսով վայելեսցուք. զի իբրև առաջի աչաց ունի զուարթածաղիկ զերանութիւն յուսով. զի մի հեղգասցուք 'ի հանդիսիցն որ առաջնորդեն մեզ յանանց բարիսն՝ որ պատրաստեալ է սրբոցն: Զի նախ սէրն նովաւ լցեալ և զարդարեալ ճառագայթիւք յիշատակաւ սրբութեն և ամենայն անդամոցն և մտացն առաջնորդէ յարդարութե՟ հաւատովք յամենասուրբ յերրորդութիւն, և 'ի կամս նորա սիրով հաստատի: Զի սիրտ սուրբ տաճար է Հոգւոյն սրբոյ. և սէր սուրբ ունել՝ բնակարան Քի, և 'ի նմա հանգուցեալ են ածեղէն կամք: "Զի որ կայ 'ի սէրն իմ և պահեսցէ զբանս իմ, ասէ տէրն, ես և Հայր իմ եկեսցուք և օթեւանս առ նմա արասցուք": Զի սիրով բարերարութեան յանճառ բարեացն վայելեցուցանէ: Եւ ո՞րք են որ զբանն նորա պահեն: Որք սուրբ սրտիւ և անարատ յամենայն վնասուց մծան անբիծք: Զի որ սիրեն զնա, սիրեսցին 'ի նմանէ. և որք խնդրեն զնա, լինի պարգեւատու: Իսկ որք ոչ պահեսցեն զնորա զբանսն, ասէ, ինքնին բանն զոր խօսեցայ ընդ ձեզ, նա դատի զձեզ յաւուրն յետնում:

Իսկ որ զբանսն նորա պահէ, խլէ 'ի սրտէ զդըժընդակ խորհուրդս մտաց. զանհաւատութի՟, զերկմտութիւն, զչարութիւն, զնախանձ, զաղտեղի ցանկութիւնս հանդերձ ամենայն վնասակարօքն, և 'ի ներքս բերեալ զբարեխորհրդութիւն սուրբ՝ որ լինի է բարեօք 'ի Քս: Զի ազատեալք 'ի բծից զգայարանքն՝ կատարեսցեն զարդարութիս, և արթուն կայցէ միտքն զգայութեանքն 'ի վերայ շահիցն և կենարար գիւտիցն: Եւ մի 'ի սաստկանալ պատերազմին լքանել և լուծանել զմարտն, այլ ճշմարիտ համբերութե՟ զդէմ ունել. և երկայնամտեալ յուսով և զօրացեալ 'ի Քի շնորհացն՝ յաղթեսցէ մարտին, և հասցէ 'ի նաւահանգիստն Քի: Ընջուցանել զազդմունս չարին և

զշարժմունս բարուց ցանկութեան։ Եւ զյաղթութեան զշնորհս ընկալեալ և զգովութիւն 'ի վերնոց և 'ի ներքենոց, պսակեցի փառօք և պարծանօք աւետեաց փըրկութեան կենացն։ Զի որ կայցէ յայն սէրն որ 'ի քոն, որ փրկեացն զարարածս և եբարձ զթշնամութիւն 'ի միջոյ, տնն է բնակիչ։ Եղիցուք նմանողք նորա մեծութեան, և շահեսցուք զբարիս և զեղբարս, և փոխանակեսցուք զբարին մեր առ նոցա կարիսն, և ըղկեանս մեր ընդ մահու նոցա. և լինիցիմք ժառանգաւոր նորա տէրութեան, և բնակարան կենդանի կամաց նորա, և հաղորդս սքանչելի և սուրբ սիրոյ նորա, և կցորդ փառաւորեալ փառաց նորա։

Սէր սուրբ մայր է առողջութեան, անարատութեան, անբծութեան. որ խնամէ և յօրդորէ յառաքինութիւն և յարդարէ յամենայն բարեգործութիւնս։ Սէր աղբիւր է ամենայն բարեաց, որ արբուցանէ զսուրբ անձինս. և գրաւական ամենայն երանութեանցն, և մեծութեան պարգևացն այ բաշխող։ Սէր բղխումն երախտեաց քոյ, և վայելեցուցիչ յանպատում շնորհս նորա. լուծիչ խռովութեան և տուիչ խաղաղութեան. լուսաւորիչ մտաց և անդամոց։ Սէր սուրբ հոգւոյ և մարմնոյ անեղծ ստացուած է, որք ունին զնա միշտ. և կենդանի շնորհք 'ի քո ամենաշահ երանութեանն յարդարեալ 'ի գովեստ փառացն այ։ Սէր աւետեօք կենդանի յուսոյն սփոփիչ է նեղութեան և վշտաց, և լուծիչ ամենայն դժնդակութեանց 'ի վերայ եկելոց՝ որ զինուորին ընդդէմ առաքինութեան հանդիսից։ Սէր սուրբ երախտեօքն հրեշտակ է խաղաղարար, որ ըղցասումն մերժէ և զխռովութիւն լուծանէ և զնախանձ արտաքս մղէ և ցածուցանէ զչար։ Սէր սուրբ այգի վայելուչ, որ խաղողով և գինեաւ զուարթացուցանէ զսիրտն և զզգայարանսն 'ի տրտմականացն եկամտից, և ուրախ առնէ 'ի կամս տն։ Սէր սուրբ ձիթենի պտղալից է 'ի սրտի բարեխորհրդին, մղելով զձէթ 'ի լուսաւորութիւն իմանալեաց և յօծումն, և երևելի անդամոցն զուարթութիւն։ Սէր սուրբ հոգևոր կարգաց յարդարիչ է և մարմնաւոր վարուց յանձանձիչ. որ 'ի միասին կապէ, և ոչ տայ բաժանել և քայքայել զհասարակաց բարին։ Սէր սուրբ բանալի է

դրանն կենաց, որ զկեանսն բաշխէ. և աներևոյթ շնորհացն տոյ գանձուցն բաշխող 'ի սուրբ անձինս, և դժնդակ վարուց խափանիչ և ընդդիմամարտ մեղաց:

Օ ի ամ արուեստք առաքինութե սիրով յարդարին, սրբութի, արդարութի. և նովաւ ցուցանեն ըզհանդէս լաւութե իւրեանց, որ է վարիչ չարի և յորդորիչ բարւոյ, զօրավիգն ածասիրաց և կործանիչ խորամանկաց և մեղսասիրաց: Եւ խառնեալ սուրբ սէրն ընդ հաւատոց և ընդ յուսոյ՝ հանդիսանայ 'ի բարեպաշտութեան վարս, և միմեանց խաղաղութեն յայտնի առնեն զլուսաւոր կարգս: Զի պատճառօք առաքինութեքն լուսատու թագօքն պսակեսցին յանուշակ յերկնաւոր հօրն խնամսն, և վայելեսցեն յանվախճան և յանպատում բարութիս նորա: Զի որ ունի զխնամս սիրոյն սրբութե առ ամենեան հեռաւորս և մերձաւորս, առ հոգիս և մարմինս ամ ճշմարտութբ, երանութեք սուրբ սիրոյն, յամենասուրբ Երրորդութեն օրհնեալք պսակին և մեծարին, և մշտնջենաւոր խնդութեքն վայելեն յանվախճան և յանհամեմատ բարութիսն:

Օ ի և հաստատութի ուղեղ հաւատոց բովանդակիչ է սուրբ սիրոյն և յուսոյն անսասանելի կալ: Զի շնորհօք սուրբ Հոգւոյն՝ այնոքիւք միաւորելոցն՝ պարիսպ ամուր ապաստանի ամենայն առաքինութեք շրջապատեալ է: Որ ոչ ոք վստահասցի առնուլ զամուրսն, զի պահեսցի 'ի զգուշութե հաւատոյն արթնութբ, սուրբ և յիշատակօք յուսոյն անդրդուելի միշտ. գոհանալով և օրհնելով զտէր անյագ բաղձանօք, հաւանական կամօք, յորդ և քաղցր անձկաւ փափաքել առ աղբիւրն շնորհացն և ըմպել անյագ 'ի նորա բղխմանէն, և արբուցանել զտունկս արդարութե և զսերմանս բարեպաշտութե շնորհաց արտասուացն վտակօք, զի զառհաւատչեայն բերցեն զպտուղ: Զի գարուն հոգևոր է անձմանն հաւատոց և սրբութե սիրոյն, որ զամ առաքինութիս բողբոջեն. որպէս տունկըք և բոյսք զսաղարթս և զծաղիկս 'ի ձմերնայն կապանացն լուծեալք: Այսպէս ջերմութիւնք սուրբ սիրոյն հաւատով շնորհալից արտասուօք՝ զառաքինութիսն փայլէ ամենասուրբ Երրորդութեն կամօք և շնորհօք:

Այլ հաւանութիւն հաւատոց և սուրբ սիրոյն հաւասարութիւն յոր կողմ յորդորի, զնոյն հաւանեալսն 'ի քո ժողովն։ Եւ նա է նաւահանգիստն մեր և բաշխող պարգևաց. կենդանի աղբիւր և ճաշակք անմահութեան, որ զնոյն սուրբս վայելչութեամբ պսակէ յաւէժ կենդանութեամբքն։ Եւ զիւրաքանչիւրոցն քաջութիւն 'ի վեր բերեալ՝ յօրինելն և կազմելն օգտակար շահիցն փառք, և լուսաւոր առաքինութեանցն հանդէսք ցուցանելն ըստ արուեստիցն բարութեացն. զի զգուշութիւն զգաստութեան նոյն զգայութեացն հաւատով և սուրբ սիրով սիրեալ զանարատ ամբծութիւն յինքն հպեաց. որ 'ի բաց մերժէ զախտ և զբիծ 'ի մարմնոյ և 'ի մտաց, յստակ և սուրբ սիրովն որ առ նոյն։ Որ կարողն է ընդունել զօգտակարն և անարգել զվնասակարսըն, և յորդորել լինել մտաց և զգայութեանց 'ի բարիսն, և զխարդախութեան վնասն պահել զմուտս ահիւ և զգաստութեամբ միշտ։ Զի յերկիւղն նոյն ամփոփելն միտք 'ի զգուշութիւն նոյն բանին. և զգաստութեան առաջնորդեալ՝ անարգեսցէ զչարն և ընդունեսցէ զբարին. և կացցէ մնասցէ սուրբ և արդար յերևելիս և յաներևոյթս արթուն և զուարթուն։ Զի մի խորամանգեալ չարին 'ի ներքս մտցէ ընդ միտսն և ընդ զգայութիւնսն և յափշտակեսցէ զառաքինութեան գանձըն. և պարտաւորեալ գտանի 'ի հեղգացելոցն դատաստանին, որ ոչ հսկեալ պահեաց զտուն գանձուցն առաքինութեան, այլ թոյլ ետ ական հատանել և գողանալ զբարի մեծութիւն, յորս վայելելոց էր 'ի հանդերձեալսն. և վասն այնորիկ պատժի 'ի դեհենին յաղագս հեղգութեան։

Արդ եղիցի զգուշութիւն 'ի պահել զամուրսն և ըզգաստութեան գանձսն 'ի քեզ, որ 'ի մարմնին է զարդարեալ շնորհօք. զի նովաւ ապրեսցուք 'ի խորամանկութենէ բանսարկուին և 'ի պատրանաց։ Եւ հաճոյացեալք 'ի նորա կամսն՝ մտցուք 'ի խոստացեալ բարութիւնսն առանց ամօթոյ վնասուց. զնոյն ճշմարտութիւս և զպարծանս սուրբ վարուց ընդ մեզ ունելով, հանգիցուք 'ի գոգ հանգստեանն և 'ի գիրկս մխիթարութեան և 'ի լոյս անշիջանելի փառացն։ Եւ ըստ բազմաբեր պտղոցն մեր՝ առաւելեսցեն պատիւ և

փառք մեր . և ազատեալք 'ի Քն տացուք զպսակն պարծանաց յամենակալ Հօրէն :

Ասացից և վասն սուրբ հեզութեան՝ որ առողջութիւն է խլրտման ցասման մտաց և մարմնոյ : Զի լուսաւորեալ անարատ հեզութբ և ամբիծ սիրով, որ հաւատովքն յարդարեալ է 'ի հաճոյս սուրբ Հոգւոյն և 'ի կամս Որդւոյն և 'ի փառս Հօրն երկնաւորի, առողջացեալ և ճշմարտեալ 'ի սուրբ սէրն նորա՝ պահեսցի, և 'ի հարուածոց ցանկութեց ազատեսցի, և հանդարտութիւն առցէ 'ի վնասակար մարտից, և 'ի շնչել այսոյն չարութեան ցածուսցէ 'ի միտս և 'ի մարմինս :

Հեզութիւն սանձք է բարկութեան և շարժմանց ցասման և վնասակարաց լկտութեան և ստահակութեան և 'ի թշնամանս յանդգնեալ լուտանի : Հեզութիւն քաղցր և անոյշ ճաշակք են քմաց և ցածուցիչ խռովութեան ամբոխից, որ յամբարտաւանութենէ գերին : Հեզութիւն հանդարտեցուցիչ է մրրկաց ալեաց մտաց և մարմնոց ալէկոծելոց 'ի փորձանս ինչ : Հեզութիւն արմատք խոնարհութեան և համբերութեան և ժուժկալութեան են՝ որ մերձաւորի Քի : Հեզութիւն զօրութիւն է ամ առաքինութեան և հիմն ամ բարեաց յերևելիս 'ի մեզ. Հեզութիւն շինուած է խաղաղութեան, և քակտումն և հերքիչ խռովութեան, ոխութեան և նախանձու՝ երևելի և գաղտնի : Հեզութիւն աղբիւր յստակ է և ամեն քաղցր ցօղով, որ արբուցանէ զերաշտութիւն չորացելոց :

Հեզութիւն դաստիարակ է մանկութեան և հաւատութեան խրատուց և կարգաց ուսուցիչ : Հեզութիւն փառք ծերոց, որ նովաւ են հրահանգեալ յողջախոհութիւն և յամ առաքինութիւն : Հեզութիւն պատիւ երիտասարդաց, որ նովաւ յաղթեցին ամ հակառակաց, ստահակաց և անիրաւաց խոնարհութբ և քաղցրութբ :

Հեզութիւն պսակ է պարծանաց կուսանաց, որ ամենարուեստ երախտեօք և բազմահանդէս առաքինութեամբքն 'ի կոչումն ընծայեալք սիրոյն սրբութեան : Զարթուցեալք, անվեհեր քաջութբ հնազանդեալք, և զհեղգութիւն և զյամառութիւն յորդորել 'ի հաւատ ճշմարտութեան : Փոյթ յառաքինութեան գործատուրն .

անքակ աղօթիւք, յորդորեալ յիշատակօք, մտերիմ կամօք, խոնարհ շարժմամբք, քաղցր հնարիւք, սիրով սրբութեամբ, կատարեալ պահովք սանձել զդժնդակ և զաղտեղի խորհրդոցն շարժմունս յազդմանէ չարին. չիջուցանել զհուր ցանկութեանն ջերմեռանդ արտասուօք: Բաց ունել զդուռն ողորմութեան 'ի պէտս կարօտելոց, և ակն ունել յուսով խոստացեալ աւետեացն իմաստուն կուսանացն: «Եկայք, ասէ, օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւն սուրբ»:

Հեզութիւն մանկանց եկեղեցւոյ անուանդ է, և յորդորիչ ըստ աճմանն զգաստութեան և ճշմարտութեան. որոց սկիզբն առեալ 'ի տղայութենէ 'ի սրբութիւն և 'ի պիտանութիւն՝ զլուսաւոր վարդապետութիւն և ընհանգամանս բանից և ձայնից որպէս ճառագայթս արեգական փայլեցուցանել փառաւորութեամբ 'ի փառս Ա̃յ վերնոց և ներքնոց, հանդերձ ա̃մ սուրբ վարուք և խոնարհ սրտիւ. զի այնպէս լինիցին վերնոցն փառակից:

Հեզութիւն զգաստութիւն է առաքինեաց և քարոզիչ նոցա հանդիսիցն. որ իմացան զերկրաւորս անցաւոր, և բուռն հարին զանանց կենացն միամիտ սրտիւ և անհեղգ մարմնով, ազատեալ յա̃մ ախտասակարգաց մըտօք և մարմնով: Զի կատարեալ զամենայն հրամայեալսն 'ի տեառնէ՝ և զայլս յորդորեսցեն որպէս պարտ է պահել արդարոց զսրբութիւն և զա̃մ առաքինութիւն. կամ որպէս մեղաւորաց դառնալ 'ի խոստովանութիւն ապաշխարութեան, զի ապրեսցին:

Հեզութիւն գովելի մեծութիւն է տնանկաց. զի երկրաւոր մեծութիւնս մաշի և կորնչի հպարտութեամբն. այլ տնանկացն հեզութիւնն մեծացեալ կան և մնան անանցք. զոր ոչ ցեցուտէ և ոչ ուտիչ ապականէ, կամ գողք ական հատանեն և գողանան: Եւ յաղագս այսորիկ երանէ տէրն զհեզս. քանզի ասէ. «Երանի հեզոց, զի նոքա ժառանգեսցեն զերկիրն կենդանեաց», որ ոչ լսի համբաւ մահու. որպէս և Դաւիթ ասէ. «Հաճոյ լինել առաջի տեառն յերկրին կենդանեաց»: Այլ և աստէն ունի զհանդարտութիւն մտաց և անդամոց և առ ամենեսեան՝ ոյք ճակատամարտին: Զի զաղքատս 'ի համբերութիւն կրթէ, ըն-

զօրաւորս զգօն առնէ, և առանց խռովութեան ունել զիշխանութիւնս երկրաւորս և առանց աղմկի հանդարտազորդ. յորմէ ամենեքումբք է համեստութիւն, մեծաց և փոքունց դաստիարակ։

Հեզութիւն լուսաւորութիւն է քահանայական շնորհի. զառաջնորդական միտսն 'ի հնազանդութեան ունի, և ոչ տայ թոյլ ցասման շարժել 'ի բարկութիւն և 'ի թշնամանս, անգիտացեալ որ ինչ խորհրդոցն է ամբարտաւանեալ 'ի ցասմանէն։ Այլ հեզութիւն մտայոյզ եղեալ ըստ Քնի աւետարանութեանն ուղղէ զհրամանս իւրացն առ սովին գիտութիւն. և լուսաւորէ այնպէս հեզութիւն, որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս, ասէ տէրն, և փառաւորեսցեն զՀայրն ձեր որ յերկինս է։ Հեզութիւն որպէս աղ է անուշիչ խորտկաց, որ զհամեղութիւն ճաշակացն համահամ քմացն տայ։ Զի բանք ձեր, ասէ, որպէս աղիւ համեմեալ լի շնորհօք և ճշմարտութեամբ, յարդարեալ հեզ վարդապետութեամբ. զի տացէ շնորհս լսողացն վասն հանդերձեալ դատաստանին արդարոց և մեղաւորաց. զի որք լուիցեն՝ իմաստնասցին 'ի Քս։ Հեզութիւն անարգամեծար տէր է. զձկնորսս քարոզս արար և աղբիւր կենդանարար շնորհաց սուրբ Հոգւոյն, արբուցանելով զհաւատացեալս յանձկութիւն։

Հեզութիւն պատկառէ յանդուգն և յահուր բարուց, որպէս Մովսէս և Դաւիթ վկայեն. ոմն առ ապարասան ժողովուրդն, և ոմն առ Սաւուղ բազում անգամ երևի։ Հեզութիւն իմաստնոց՝ իմացուցանէ լսողաց զբանն հանճարոյ, 'ի միտ առնուլ զարդարութիւն ճշմարիտ և ուղղել զիրաւունս և զամ առաքինութիւնս։ Հեզութիւն զարդ է երևելի առաքինեաց անձանց, հաւատոյ, յուսոյ, սիրոյ, սրբութեան, աղօթից, պահոց, խոնարհութեան, ժուժկալութեան, և ամ բարեաց։ Հեզութիւն սրբութեան զգեստ է, որ մերկացան և 'ի բաց ընկեցին զաշխարհական զցանկութիւնս, և զգաստութեամբ կատարեցին զկեանս 'ի Քս։ Հեզութիւն մեծասքանչ շուք և պատկառ է[1] 'ի մէջ բազմամբոխ հրապարակաց. որ զհոգևոր օրէնսն հանդար-

1 Միւսն պակասանք է։

տութե՟ ճառէ, և հրեշտակ խաղաղարար լինի առ ածմ լոյս, և անուն տեառն փառաւորի. 'ի հեզոյն և 'ի մարդասիրէն այ փառաւորեալ՝ վերափոխի 'ի կեանս, և լսէ 'ի տեառնէ՝ եկ հաւատարիմ ծառայ և հեզ, որով 'ի սակաւուդ հաւատարիմ եղեր, 'ի վերայ բազմաց կացուցից զքեզ։

Հեզութե՟ կերպարանք փառաց է տէրութեն, և գիտք համբերատարար յաւիտենից. որ իւրովք դարմանօք 'ի ձեռն հեզութեն իւրոյ վանք երկնաւորացն լինի և մտերմաց հաւատացելոց սրբոց 'ի նա. որ խոնարհեցաւ 'ի յերկնից 'ի յերկիր 'ի մեծութէ փառաց և էառ զծառայի կերպարանս, զի ծառայքս զնորա կերպարանս առցուք արդարութե՟ սրբութե՟ ճշմարտութե՟ վասն բարերար և ամենագիտ սուրբ ոգւոյն, և զբաւականաւն զոր էառ 'ի մէնջ և ինքեամբ նստոյց ընդ աջմէ Հօր 'ի բարձունս, և եւս յոյս վերստին հաւատացելոց ամենեցուն խոստացեալ աւետեօքն՝ «Ուր եմ ես, անդ և պաշտօնեայն իմ եղիցի»։ Վասն որոյ հրաւիրեաց զամենեսեան և կոչեաց յիւր արքայութիւն և 'ի փառս. եկայք առ իս, ասէ, ամ աշխատեալք ճգնաւորական հանդիսիւք և բեռնաւորք մեղօք յապաշխարութիւն խոստովանութե՟, և ուսարուք յինէն զհեզութի՟ զխոնարհութիւն, և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ աշխատելոց յուսով հեզոցն քաղցր է, և բեռինք մեղաց խոնարհութե՟ն փոքրոգի լինի։ Եւ յերկուցունց հաստատութենէ [1] կայ ընդ աջմէ այ սուրբ և անարատ, ոչ ինչ ունելով զձախակողմանն զդժնդակութի՟, այլ զաջակողմանն արդարութի՟. զի որ զայս ունին, փոխ նմանին հեզոյն և խոնարհին առ արածեղն. և երանութե՟ք պսակին 'ի խնամոց սուրբ ոգւոյն հեզքն և խոնարհքն որտիւք յամենասուրբ Երրորդութենէն. ազատեալք 'ի վշտաց և 'ի յաւիտենական տանջանացն, և յանանց խնդութիւնս և յանհամեմատ բարութիւնսն վայելեցուցանէ։ Զի բազմաբոյս առաքինութե՟քն 'ի բազմազգով կեանսն ուրախանան, և փառաւորեալ և պսակեալ՝ զանճառ զլոյսն զգենուն

1 Միւսն հաստատութէ՟։

՚ի Քնէ յանպատում և յանանց ՚ի կեանսն, որ պատրաստեալ է ամենայն սրբոց ՚ի խորանսն յաւիտենից։

Ո ի բազում և առաւել ևս է ճաշակ քաղցրութե̃ և̃ խոնարհութե̃ և հնազանդութե̃, ողջախոհութե̃ք և անարատ վարուց և անբիծ սիրոյ երախտեօք։ Որովք խորտակեցան դրունք պղնձիք անհաւատութե̃ն, և նիգք երկաթիք անհնազանդութե̃ն փշրեցան, և յաւար եղեն գանձք աներևոյթ թշնամւոյն ճշմարիտ իմաստութե̃ն Քնի հաւատովք աւետարանին քարոզութե̃. լուսաւորացն նմանեալ որ ճառագայթիւք լուսն զտիեզերս, և ուղիղ զգնացս մարդկան ունին ըստ արդարութե̃ ճանապարհին։ Զի քաղցրութի խոնարհութեան և հնազանդութե̃ աղբիւր բարութե̃ վայելեցուցիչ են, և բժիշկ դառն ցաւոց՝ որ զառողջութի տան. և բարեաց առաջնորդք՝ որ ուղիղ ճանապարհօք յերանութիւն տանին, ազատեալ յա̃մ վշտագին վտանգից։

Քաղցրութի խոնարհութե̃ք հնազանդութե̃ք և հեզութե̃ք միաւորեալ՝ որսորդ բարեաց է և ժողովող ա̃մ առաքինութե̃ և վանք սրբոյ Երրորդութե̃ն։ Քաղցրութի և խոնարհութի և հնազանդութի միաւորեալ՝ զժողովս ճգնաւորաց ՚ի միասին ունի, և ոչ թողու քայքայել ՚ի միմեանց։ Քաղցրութի և խոնարհութի և հնազանդութի ընտանեցուցիչ է օտարաց և զգաստութի մերձաւորաց, նուաստութի ամբարտաւանից և զօրութի հեղգացելոց, ցածուցիչ ա̃մ ստահակաց, զարթուցիչ է կենաց յուսոյն, և համարձակութի վարանելոց որ ՚ի մեղացն ազատեցան ՚ի ծառայութենէ։ Պատճառք է ա̃մ հոգևոր շահից, և խափանիչ կորստեան ա̃նասակար խորհրդոց և գործոց։ Բացիչ է ճշմարիտ խոստովանութե̃, և արձակիչ կապելոց զղջմամբ ՚ի թողութի մեղաց։ Հրաժեշտ ա̃նասակարաց, և մուտ յորդեգրութի։ Օտարացուցիչ է ամենայն դժնդակաց, և մերձաւորիչ յուսոյն կենացն յաւիտենից։ Տօն է ճշմարիտ քարոզութե̃ն խնամոց, և աղբիւր մննդեան Հոգւոյն սրբոյ բղխման։ Հեռացուցիչ է անգիտութե̃, և տուն գանձի է իմաստութե̃ և հանճարոյ։ Ընտանեցուցիչ է ճշմարիտ բարեկամաց, և յանդիմանիչ սպրդողաց սուտ եղբարց

ամբարշտաց։ Ցրուելոց ճշմարտասիրաց է ժողովիչ, և անիրաւաց ցրուիչ։ Հեշտացուցիչ սարտուցելոց. պարգևատու շնորհօք՝ որ դառնան յիրաւունս արդարութե, և կարգաւորիչ 'ի լաւն առհասարակ։ Մխիթարիչ է սգաւորաց, և սփոփանք նմ վտանգելոց։

Ուղղութի և խոնարհութի և հնազանդութի անդորրութի է 'ի դարմանս մարդասէր խնամոց։ Առողջութի ցաւագնելոց, և յոյս հաստատուն 'ի հանդերձեալսն։ Ծփելոց նաւահանգիստ, և օգնական առաքինութե. սրբութե ամենագիւտ հնարք, և պղերգաց ձեռնտու 'ի գործս այգւոյն՝ որ առնու վարձս զառաջնոցն։ Դուռն բաց է 'ի կենսաբեր մուտսն, որ ունի զբաղձանս արքայութեն՝ ընդ ինքեան ունելով զբարիսն։ Եւ փակի ապախտաւորաց և անհնազանդից, ամբարշտաց և մեղաւորաց և որք ոչ լուան նորա բանին։ Իսկ որք խոնարհեալ հնազանդին ընդ քաղցր լծով ապաշխարութեն, և սուգս ոչ զրկին 'ի խոստացեալ աւետեացն ստոյգ խոստովանողացն և ապաշխարողացն. զի ոչ եկն կոչել զարդարս, այլ զմեղաւորս։ Զի որ զայս վարս առաքինութե ունին, կենդանի երախտեօք երանութեքն պսակեսցի յամենասուրբ Երրորդութեն։ Ազատեալ 'ի դառն վշտաց գեհենին, և մշտնջենաւոր անմահ խնդութեն յանհամեմատ բարիսն վայելեսցէ 'ի քս սքանչելի նմ երանութե։ Ուղիղ միաբանութի հաւատոյ և սուրբ վարուց առողջ ամբիծ անարատ ունի զերախտիս սիրոյն առ ամենասեան անդամոցն յարմարութի 'ի քս։ Զի նովաւ հաստատին 'ի մի կամս քսի և 'ի մի հաւատ. 'ի նմա բնակի նմ յորդորութմն և առաքինութե աճումն։

Միաբանութի հաւատոց և սուրբ վարուց՝ աղբիւր գիտութե. 'ի նոցանէ բաշխի անծախաբար այն՝ որ տայ իւրաքանչիւր զէնս նահատակութե, զկամս բարիս, ընտրողական միտս. տալ զչարն, և կանխել 'ի սէրն նմ և 'ի շինութի կամացն՝ կատարեալ ապաշխարութե և մտերիմ խոստովանութե։ Միաբանութի հաւատոց և սուրբ վարուց՝ խառնէ ընդ արարիչն ըզշնորհս, և 'ի սուրբ յիշատակաց նորա անքակ ունի

զամ անդամն, և առ դրունս ողորմութեան սիրոյ նորա կայ միշտ վասն ամ բարեացն որ յարարածս է ։ Եւ ընդ սոյն դուռն մտանեն պարգևք միաբանութեան, որ ազատէ և մեծացուցանէ ․ և նովին միաբանութի ընդունին անդամքն 'ի միմեանց զօգնութի առ շինութի իւրաքանչիւր կարգի ։ Եւ ամ որ քակի 'ի միաբանութէ հաւատոցն և 'ի սուրբ վարուցն, ոչ միայն հրաժեշտ լինի յերանութէ անտի, այլ և 'ի պատիժ մատնի ․ որպէս անդամ 'ի մարմնոյ հատեալ անպիտան լինի, և կամ ոստ 'ի ծառոյ կտրեալ 'ի հուր ։

Միաբանութի հաւատոց յամենասուրբ Երրորդութիւն 'ի սուրբ վարս՝ քաղաք ամուր է երկնային զօրութիւն պարսպեալ ․ բնակութի է սիրոյն այ և վերին զօրացն, ժողովիլ 'ի նոսա ամ սրբովք յանձաօրհնութիւն միաբանեալ, ընկղմեալ յուրախութիւ խնամոց սուրբ սիրոյն՝ վառեալք յուսով փառացն այ ․ որոց սիրել զմիաբանութի անարատ սրբութեն ամբիծ երախտեօքն Յսի Քսի ։ Զի որ այսպէս անքակ զմիաբանութիւն ունի սիրով Հոգւոյն, հաւատով և սուրբ վարուք, կենդանի երանութեամբն պսակի 'ի խնամոց սուրբ Երրորդութեն ․ ազատեալ 'ի դառն տանջանաց գեհենին, և մշտնջենաւոր անհամեմատ բարեօքն երկրի յանանց կեանսն ։

Նշանաւոր վասն գթութեց ունիմ ասել, որ կապ է միաբանութե և մայր է սիրոյ և գոգ հանգստեան առողջութե, անարատ սուրբ ամբիծ երախտաւոր սիրոյ աւետեացն Քսի ։ Զի առատապարգև է առ մերձաւորս և հեռաւորս ․ դաստիարակ է մեծամեծաց և օգնական տկարաց ․ մնուցիչ է ընտանեաց և դարմանիչ օտարաց ․ սիրելի առ երախտաւորս, և ոչ ատեաց զապախտաւորս ․ սիրէ զբարեկամս 'ի բարութի և կամի զդարձ ատելեաց, զի հասցեն սուրբ սիրոյն ։

Գթութի խնամք է սուրբ սիրոյն, բորբոքումն անձկոյ առ սիրողն ․ յիշատակ ծնողաց և յորդորումն ծննդոց ․ խնդիր հեռացելոց և մնունդ մերձաւորացն միշտ ։ Գթութի արմատ բարեաց, և ոստք նորա խնդութի, և տերև նորա զուարթութի, և ծաղիկ նորա ուրախութի, և պտուղ նորա անհամեմատ անուշութի ։ Զի գթոյն բառնայ զտրտմութի յանցա-

նաց և զտաղտուկ ձանձրութիւնս՝ որ վհատեն զանձն, և զսուգ՝ որ օտարացուցանեն և յիմարեցուցանեն ։ Խափանիչ է վատութեան և յորդորիչ առատութեան, խլիչ ագահութեան և ընդունիչ սակաւապիտութեան, յանդիմանիչ ըլկտութեան և ծաղկեցուցիչ սրբութեան, շիջուցիչ թերահաւատութեան և նշոյլք լուսոյ հաւատոյ, ելք երկմտութեան և մուտք կենդանի յուսոյն . օտարացուցիչ ատելութեան և անդորրիչ վտանգելոց, և ամ̃ նեղելոց սփոփիչ ։

Պահութիւն կափիչ է հպարտութեան և լուծիչ նենգութեանց . խայտառակիչ խորամանկութեան և մերժումըն ոխակալութեան և նախանձու . խոշտանգանք է անհնազանդից և քաջալերիչ համբերողաց . զօրացուցիչ ժուժկալաց և սրբիչ գիջութեան . խրախոյս է երկայնամտաց և ձեռնտու խոնարհաց . պսակ զգաստութեան և ամբծութեան և յորդորիչ առաքինութեան . զարթուցիչ է քնէածից և պղերգաց, և հասուցիչ 'ի գործս հանգըստեան, որ լի է ամ̃ բարութեամբ, որ ունի զխնամս գթութեան առողջ սուրբ անարատ ամբիծ երախտեօք խնամով սիրոյն ։ Զի որ զայս հոգևոր գութ յանձին ստացեալ ունի 'ի վերայ սուրբ վարուց, կենդանի երանութեամբքն պսակի 'ի խնամոց սիրոյն ամենասուրբ Երրորդութեանն . որ ազատէ 'ի դառն վշտաց գեհենին, և մշտնջենաւոր անհամեմատ բարեօքն վայելեցուցանէ 'ի բարիսն ։

Այլ և զգաստութիւն իմանալեացն որ հաստատեալ 'ի հաւատսն որ 'ի մր̃, իշխանական կամօքն խլէ 'ի զգայութեանցն զխնասակարսն, և 'ի ներքս բերէ զառաքինութիւնսն, զսրբութիւն, զխոնարհութիւն, զճշմարտութիւն ըստ ամենայնի ։ Խզել զդժնդակսն զեկամուտսն, և վարել զէնս հակառակ չարին, և 'ի վայր կործանել զհակառակս արդարութեանն ։ Եւ հրով Հոգւոյն հալել զձմեռնային խստութիւն սառամանեաց ջերմեռանդ արտասուօք ։ Եւ արձակել արմատս՝ ըզքաղցր սրբութիւն և զանոյշ խոնարհութիւն և զբարի հնազանդութիւն ամենայն ճշմարտութեամբ 'ի Քս̃ ։ Եւ բարձրացուցանէ զսոսա հաւանութեան հաւատով յամենայն առաքինութեան աճմունս որպէս զծառս՝ որ տնկեալ են 'ի գնացս ջուրց ։ Որ մեծաւ ցանկութեամբ 'ի շնոր-

հացն Աստուծոյ շարժեն վտակք արտասուացն, որով մաքրեն երեւելիք եւ աներեւոյթք. եւ խաղաղ եւ հեզ ցօղով արբուցանէ զտունկս եւ զբոյսս զկամնուխս եւ զանտառս. եւ յորդորէ զամենայն անդամս յաճումն արդարութեան 'ի լաւն եւ յառաւելն. զի եկեսցէ 'ի կատարումն առաքինութեանս պտղովք, խլեալ զօտարոտի բոյսսն՝ զորոմնն եւ որ այլ եւս չար սերմանք 'ի թշնամւոյն սերմանեալ 'ի միտս եւ 'ի զգայութիւնս, եւ զխռովութիւն ըստ ամենայն սրտմտութեան շարժմանց. զպայրատութիւն, զյանդգնութիւն, զանզգամութիւն, զանհնազանդութիւն, զբարկութիւն, զամբարտաւանութիւն, զփառասիրութիւն, զհպարտութիւն, զագահութիւն, զանխտրութիւն, զպղերգութիւն։ Այս են պատճառք կորստեան. վրիպել 'ի մեծ բարեացն շահից, 'ի գովութենէ առաքինութեան փառաց։

Նայել իմանալեօքն որոշել զբարին 'ի միամիտ խորհուրդս, եւ հաւանական կամօք գործել զբարիս անոյշ եւ քաղցր եւ լուսաւոր յորդորմամբ ամենագիւտ շնորհօքն Քրիստոսի։ Յիշատակօք երախտեաց սիրոյն սըրբութեան ըստ հաճոյից կամաց Տեառն բարերարի արժանեակ լինել շնորհացն 'ի փառս եւ 'ի պատիւ կենաց տուողին։ Եւ գործակից լինել նորա բարերար կամացն հանապազ, եւ ճշմարտեալ 'ի հաւատս՝ առողջ սուրբ անարատ անբիծ երախտեօքն հաստատեալ կացցէ։

Լու զի գլուխ է ամենայն զգայութեանցն իմանալիքն՝ որ 'ի Քրիստոսի շնորհօք ամենայն անդամօք յօդեալ եւ պատշաճեալ է, եւ աճէ զաճումն Աստուծոյ, որպէս Առաքեալ ասէ։ Եւ 'ի նմանէ բաշխին շնորհք իմաստութեան յամենայն անդամսն, յերեւելի պէտս եւ յաներեւոյթ։ Եւ 'ի նմանէ ըմպեն զհանճար բարեաց 'ի մտաւս օգտից եւ մերժելոյ 'ի վնասակարացն։ Եւ անտի ծագէ լոյսն յայտնիչ ամենայն քննութեանց, եւ իմաստնանան ամենայն զգայարանքն 'ի ճաշակս հոգեւորական վայելչացն եւ ընդրողք զլաւն անձանց, եւ առաջնորդին 'ի զգուշութիւն իմաստից, եւ զդրունս բանան զմտից շնորհացն. եւ զգաստացեալ եւ լուսաւորեալ անվեհեր փութով հանդիսանայ յընթացս վերին կոչմանն, պատրաստ ունելով զօգտակար շահն հոգւոց եւ

մարմնոց, զի ժառանգեսցէ զառհաւատչեայ երա-
նութեանն ։

Այս բերանն բղխէ յիշխանական հոգւոյն զՃշմա-
րիտ վարդապետութիւն առողջութեան անարատ սրբու-
թեան անքիծ սիրով։ Եւ ըստ նա գնան ամենայն վը-
տակք իմաստութեան 'ի սրտէն յառաջագայեալ, ՚ար-
բուցանել և պարարել զշայեկան երկիրն բանիւն կե-
նաց առ 'ի յաճումն բարութեան բուսոցն և առ ծա-
ղիկս անուշահոտս վայելչացեալ քաղցր պտղով։ Եւ
զի բերանն է Ճշմարիտ բանին որպէս Ճրագարան լու-
սոյ, որ հալածէ զխաւար և յայտնէ զամօթ, և ցու-
ցանէ զաղտեղութիւն և երևեցուցանէ զգայթակղու-
թիւն ուստի բեկումն ։ Ուստի Որդւոյն այ հնարիւք իւ-
րովք զսպառազինութիւն նորա յափշտակեաց . զխո-
րամանկութիւն, զյանդգնութիւն, զյափշտակութիւն, և
զողոքանս խաբէիցն և զարհաւիրս, հարթուցանե-
լով 'ի Ճշմարտութեան անտի . և որ այլ ևս են մեքե-
նայք չարին, որ յայտնեն նշոյլք վարդապետութեան
Քի։ Զի տացէ հնարս նահատակաց առաքինանալ,
և յորդորել ընդդէմ չարեացն զուղղութիւն, և բառ-
նալ 'ի մտաց զիմաստութիւն մոլորական, և ամփոփել
զինքն 'ի Ճշմարիտ վարս, և զգուշանալ յամենայն
վնասուց . առաջնորդել և այլոց 'ի բարիս ։ Եւ զյի-
շատակ սրբութեան սիրոյն որպէս խորհուրդ մեղու ունել
'ի քիմս բերանոյ իւրոյ . զի նա է որ քաղցրացուցա-
նէ զդառնութիւն չարին ։

Իսկ որ բանայ զաշս իւր 'ի լոյս արեգական 'ի մի-
ջօրէի, ոչ մերձենայ խաւար 'ի բիբս նորա ։ Այսպէս ո-
րոյ նայեցեալքն յստակ են յիշատակաւ սրբութեան, և լոյս
ուրախարար է նորա կենդանի սիրոյն խնամքն՝ որ պա-
հէ զնա առանց վնասուց տուժից անքիծ և անարատ ։
Եւ նովին լուսաւոր շնորհիւ տեսանէ զկորուսեալսն
զգլխոս, և մերձաւորս առնէ ողորմութեան փրկչին և
ներքոյ խնամոց նորա կարգէ ։ Զի Ճաճանչ լուսոյ քա-
րոզութեան բանին ցուցանէ զդեղ կենդանի յուսոյն,
և զդարմանս արքայութեան զանՃառումս և զանպա-
տումսն ։ Ի ձեռն Ճշմարիտ հաւատոց ընթացուցանէ
ընդ Ճանապարհ վերին կոչմանն առ Հայրն ամենա-
կալ և Որդին բարերար և Հոգին կենդանարար . որ
անՃառելի է մեծութիւն փառացն ։

Արդ և գունդք վերին զօրացն եղեն փեսաւէրք Որդւոյն այ և առիթ փրկութե մերոյ. և քաջալերեն զխրելիս այ, որ փրկեաց զմարդիկ 'ի մահուանէ մեղաց: Զի ուրախութի եղիցի յերկինս, որք դառնան առ ած և ապաշխարեն: Եւ որք հաւատացին յած և հաճոյացան նմա, արար զնոսա ժառանգակիցս իւր արքայութեն: Սոյնպէս և որ այժմ ճշմարիտ հաւատով կատարեցին զբան նորա, և ուսուցին առողջութք, անարատ սրբութք, ամբիծ երախտեօք սուրբ սիրոյն այ: Զի որ զայն վարս ստացեալ ունի յանձին ըստ ամենայնի ճշմարտեալ, կենդանի երանութք պսակեսցի 'ի սուրբ Երրորդութեն. ազատեալ 'ի դառն տանջանացն, և մշտնջենաւոր յանհամեմատ բարութիւն վայելէ:

Այս աչքն հաւատով սրբեալ, տեսչութի խնամոցն նշոյլք է լուսոյ անպակաս ուրախութեցն: Որով վառեալ լուցանի լոյսն արեգականն արդարութե, որ լուսաւորէ զամ սուրբս, և մերձաւորս առնէ 'ի սէր շնորհաց իւրոց, և բառնայ զխաւարային մոլորութի, և անսխալ գնացիւքն ընթանայ 'ի կէտ կոչմանն վերին յօթևանս հանգստեան ըստ քաղցրութե լուսոյն այ: Զի նովաւ հայի 'ի գիրկս սուրբ սիրոյն Որդւոյն այ, և 'ի գգուանս Հօրն երկնաւորի, և 'ի պարգևս Հոգւոյն սրբոյ յանճառելիսն: Որ տայ զվիճակ ժառանգութե իւրոյ այնոցիկ՝ որ 'ի կամս նորա վարեցան յաշխարհի, և զինուորեցան հոգևոր զինուք ընդդէմ չարեացն զբարիսն ըստ աւետարանին Քի: Եւ կցորդ եղեն նորա չարչարանացն, և խաչակից եղեն կամաւոր մահուն ամենայն համբերութք ճշմարտեալ անքակ սուրբ սիրով 'ի նեղութե և յանդորրու: Ընջուցին զպարտիս ողոքանաց և զխիստ բռնութիւս կատարեալ ժուժկալութք. համապազ ակն կալեալ խնամակալ աջոյն, որ զօրացուցանէ զյուսացեալս իւր. զի իմանալեաց աչաց և երևելեաց լոյս նա է: Զի հանապազ կանխել 'ի պաղատանս խոնարհ սրտիւ, և ջերմեռանդ արտասուօք զաղօթսն հատուցանել այ 'ի բոլոր սրտէ, և յաչաց հեղուլ զարտասուաց հոսանս, որ 'ի ձեռն գթոյ անձկոյ յառաջագայէ 'ի ներշողից շնորհաց աւետեացն՝ որ բառնայ զվիշտս և ըզ-

հարուածս և զամենայն վտանգ 'ի բռնաւորաց, և ընու բարութե յորդառատ զղջմամբ, և ընդունաքան լինի Հոգւոյն սրբոյ. որ յայտնէ զծածկեալս և զանքննինս սիրելեաց այ. զի և զփափաքումն կարօտութե անձկոյն լցուցանէ կենդանի և անձառ ճաշակօք 'ի քաղցրարարութեն. Եւ լոյսն առհեղ անմատոյց ոչ մերժի սքանչելապէս յանձանց անտի. և տեսիլ աչացն հաւատով լուսաւորի. և 'ի նշողից շնորհացն ընու միշտ և ծաղկեցուցանէ զզգայութիւն, և զուարթացուցանէ անմահական խնամովք զախոսիկ՝ որ մերժեալ են յինքեանց զաշխարհական զցանկութիւս և զգեցեալ զորբութե վերարկու, ամբիծ հաւատով 'ի սուրբ Երրորդութիւնն ճշմարտեալ, և 'ի թեւս սուրբ Հոգւոյն վարեալ յաշխարհի 'ի շինութի և 'ի խաղաղութի ըստ ամենայնի հոգեւորօք և մարմնաւորօք մինչև հասցէ յանքոյթ նաւահանգիստն իմանալի տեսութեան, առողջ անբիծ անարատ խնամօք սուրբ սիրոյ երախտեօքն Քի. Զի որ զայս շնորհս ստացեալ ունի յիւր, 'ի վերայ ամենայն սուրբ վարուց կենդանի խնամօք սուրբ սիրոյն յամենասուրբ Երրորդութենն պսակեսցի. ազատեալ 'ի դառն տանջանաց գեհեննին, և մշտնջենաւոր անհամեմատ խնդութեամբն վայելէ 'ի բարիսն.

Իսկ լսելիք անխարդախ հաւատով հնազանդեալ յառողջութի և յանարատ սրբութի ամբիծ խնամովք երախտաւոր սիրոյն, ընդ որս մտանեն ածային պատգամաց աւետիքն, և կերպարանէ 'ի ներքին մարդն զկերպարանս փրկչին մերոյ Քի իւրով փառօքն. Որ ունի յաջմէ զնիշ խաղաղութե, և յահեկէ իւրմէ զհաստատութի որդեգրութե, և 'ի գլուխն իւր ունի զպսակն պարծանաց, և ընդ մէջ ածեալ զկամարն սրբութե, և ճշմարիտ զգաստութե պատեալ զկօղս իւր 'ի կորութե Քի.

Լսելիք դրունք են հաւատոց 'ի մուտս զգուշութե անարատ վարուց, երկիւղիւ և խնդութե խառնեալ. և ելք նորա արդարութի և իրաւունք. ըստ հոգեւոր օրինացն կատարեալ սրբութե ծաղկեալ, և 'ի ներքս բուրէ զանուշահոտութի զսաղմոսից և զօրհնութեց. և անդ հնչեն փառք թագաւորին անմահի, և քու-

րեն որպէս յանոյշ խնկոց 'ի բերանոյ սրբոց իւրոց պաշտօնէից, որք սրբութբ գովեն զամենասուրբ զԵրրորդութիւն: Անդ գունդք հրեշտակաց բանակեալք, և պատրաստութիւնք[1] զուարթնոց, որ վառեալ բորբոքին յերգս հոգևորս, հաւասարեալք ամենեքեան 'ի միասին հատուցանել զփառս:

Լսելիք հաւատով ճշմարտեալ՝ ընդունելութն է ծառոյն կենաց և հատոյն[2] քաւութեան և որթոյն փրկութե: Եւ 'ի նմանէ արձակեն զարմատս 'ի սիրտս կատարելոց այ, որ շնորհօք դարմանին հանապազ, և պարարէ զնա 'ի ցօղոյ Հոգւոյն սրբոյ: Եւ ամենայն արարածք որ գրաւեալ են սրբութբ 'ի սէր նորա, ուրախ են ընդ նմա. գոհանան և փառաւորեն զքարերարն ած որ արար զամենայն, և յարդարեալ պահէ 'ի փառաւորութն սուրբ անուանն իւրոյ: Լսելիք ճշմարտեալ հաւատով վտակք են, ոռոգել 'ի կենաց աղբիւրէն զանդս մտաց և զգայութեց յաճումն առաքինութեց: Եւ զդժնդակաց զքերումն արտաքս հանելով լաւագոյն ժրութբ, որ 'ի նիւթ հրոյն ունի զհանգամանս: Լսելիք ճշմարտեալ՝ զնոյն յինքն ամփոփէ. որ վերատեղծու զգաստ գիտել, ճանաչել զբարի և զչար: Որպէս այլալեզուքն զիւրեանց լսեն առ 'ի պէտս խօսս՝ և ոչ զմերն, այսպէս և որ զայս լսելիս սրբութբ ունի, զնոյն լսէ և ոչ զչարին: Եւ ունկն սրբոցն բանի որ 'ի բերանոյ այ՝ լսէ, որ մուտ է և անց բանի. որ սրբէ զմիտս և զզգայարանս, և 'ի հնազանդութն յորդորէ հոգևոր օրինացն առաջնութե անարատ և սուրբ երախտաւոր սիրոյն. որ կենդանի խնամօք սիրոյն յամենասուրբ Երրորդութեն լուսաւոր երանութբք պսակեսցի. ազատեալ 'ի դառն տանջանացն՝ յանհամեմատ բարութեան վայելեսցէ իսպառ:

Եւ հոտոտելիք հաւատով հոտոցն են զգայութիւնք գիտութե և իմաստութե, առողջ անարատ ամբիծ երախտեօք սուրբ սիրոյն. և ճշմարտեալ անուշութբ 'ի հոգևոր հոտ գիտութե արբուցանէ 'ի Հոգւոյն սրբոյ զանձն 'ի հոգևոր օրինացն: Զի 'ի նոցա-

1 Միւսն պատուաւորութիւնք:    2 Միւսն հաւատոյն:

նէ յառաջագայի հատ գիտութեան Հօր, և ճանաչէ զՈրդի, և իմանայ զՀոգին սուրբ: Գիտութիւն Հօր տաճար է նորա փառացն. և որք մտանեն 'ի նա խոստովանութ՟ք, գտանեն զնա: Իմաստութ՟ի Որդւոյ խորան է նորա ծնելութ՟են. զի որք հային 'ի նա դաւանութ՟ք, մերձեցուցանէ առ ինքն: Եւ ճանաչէ զՀոգին սուրբ զտուիչ բարեաց 'ի ձեռն ճշմարիտ հաւատոցն, որ ցուցանէ զլոյս ա՟ծութ՟են, որ շնորհօք զտեսողսն լուսաւորէ, և հատ գիտութ՟ե վերաբերէ ընդ վերին զօրսն վառեալ յօրհնութ՟ի Հօր 'ի բարձունս և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ճշմարիտ հաւատով:

Հոտոտելիք իմաստութ՟ե հաւատոց տայ ճանաչել զՀայր ամենակալ, և գիտել զՈրդի մարդասէր գոլ, և զՀոգին սուրբ պարգևատու: Հոտոտելիք հաւատոց ընթացուցանեն յարքայութ՟ին երկնից, և բանան զդրունս կենաց, որք առ սուրբ Երրորդութ՟ին անձկացեալ են, ընդ ինքեանս ունելով զառաքինութ՟իս. և փառակից լինել վերին զօրացն՝ օրհնեն զՀայրն ընդ աթոռակալսն, և գովեն զՈրդի ընդ քերովբէսն, երկրպագեն Հոգւոյն սրբոյ ընդ հրեշտակս միոյ ա՟ծութ՟են: Հոտոտելիք ճշմարտեալ հաւատով որոշեն զհոտ կենաց և մահու, զարքայութ՟ե և զդժոխոցն, զսրբութ՟ե և զաղտեղութ՟ե, զարդարութ՟ե և զանիրաւութ՟ե: Ոմանց գովութ՟ք և շնորհօք բուրէ, և ոմանց պարսաւանօք և զազիրս: Զոմանս վայելչացեալս յերկրէս ամբառնայ առ Ա՟ծ, և զոմանս 'ի վայր բերեալ և խորտակեալ 'ի վիհս կորստեան ընկենու:

Հոտոտելիք ճշմարտեալ հաւատով ճանաչէ զորդիս լուսոյ և զորդիս խաւարի. իմանայ զկամս իւրաքանչիւր զուղղութ՟ե և զմոլորութ՟ե, որ այլանդակ և այլուսմունք են, որ որոշեն զնոսա 'ի բաց հոտոյն սուրբ ըստ հրամանի Տ՟ն՝ արտաքս հանելով 'ի խնամոց Ա՟յ 'ի խաւարն արտաքին, ուր լալ աչաց է և կրճել ատամանց: Եւ զսուրբսն անուշահոտ վարուքն սնուցանէ առաքինութ՟ք, մինչև հասցեն 'ի չափ կատարմանն Ք՟սի ժառանգորդ լինել անուշակ արքայութ՟են. որ ճշմարտեալ են 'ի հաւատս լուսաւոր և սուրբ վարուք, անարատ և ամբիծ երախտեօք սիրոյն: Զի որ զայս շնորհալից հոտ առաքինութ՟ե ունի 'ի վերայ

պտղոց սուրբ վարուց, կենդանի երանութիւնք պսակեսցի 'ի խնամոց սիրոյն յամենասուրբ Երրորդութեան. ազատեալ 'ի դառն վշտաց գեհենին, և մշտնջենաւոր անհամեմատ երանութեան վայելեսցէ 'ի բարութեան անսպառ և անվախճան։

Այս ձեռք ճշմարտեալ 'ի բարի գործս հաւատով առողջ անարատ անբիծ երախտեօք սուրբ սիրոյն, են մշակք պատրաստեալ հանդերձեալ աշխարհին արքայութեան երկնից։ Եւ երախտաւոր լինի բարի գործով. ըստ բարի սերման զանդս յուսով պտղոցն բարեաց. ձեռնտու գլորելոց. զբեկեալսն պատէ, զանկեալսն կանգնէ, զտկարացեալսն զօրացուցանէ, ընդկարօտեալս յագեցուցանէ. գործեսցէ ձեռօք, զի բաւական լիցի տալ իւրաքանչիւր ըստ շնորհելոյն նմա յԱյ առողջութեան առ շինութեան հաւատոց։ Յիշել զԱռաքելոյ ասելն և առնել. «Զիս, ասէ, և որ ընդ իմն էին, պաշտեցին ձեռքս այս»։

Ձեռք սուրբ հաւատով բուրվառք են անուշահոտ խնկով 'ի հրոյ Հոգւոյն սրբոյ, բուրեալ 'ի բարի գործս հեռաւորաց և մերձաւորաց 'ի վայելս. և 'ի վեր ամբառնալ ամենասուրբս և գոհութիւն ընծայել Այ։ Ձեռք ճշմարտեալ հաւատով գործարան են մտաց և մարմնոյ, որ զիւրաքանչիւրոցն զպէտսն վճարէ յերևելիսս և յաներևոյթսն անարատ յօրինեալ գովութեամբ 'ի փառս Այ ըստ աւետարանին։ Ուստի ծագէ լոյսն աւետեաց՝ ձեռացն տարածմամբ, և գործողի զյաղթութեան զվարձս առնուլ։ Ձեռք ճշմարտեալ հաւատով անօթ է խորհրդոյ խաչին, որ խլէ զփուշ յանդէ՝ զանիծիցն զտատասկ մեղացն, և տնկէ զծառն կենաց՝ որ պտղաբերէ 'ի մեզ զՔնի մարմինն և զարիւնն 'ի թողութիւն մեղաց 'ի ձեռն սրբութեան և խոնարհութեան և հնազանդութեան. զի այսպէս մտցուք 'ի յարկս լուսոյն կենաց։ Ձեռք ճշմարտեալ հաւատով մշակք Հոգւոյն ճշմարտութեան են. որ 'ի ձեռն վաստակոց իւրեանց առաքինութեան առնուն պարծանօք զվարձսն։ Եւ որպէս 'ի ծովու յաշխարհիս ձեռօք վարեն զնաւս, զի հասցեն 'ի նաւահանգիստն խաղաղութեան և հանգիցեն 'ի Քս Յս։ Ձեռք ճշմարիտ հաւատով որսորդք են ոչ ձկանց, այլ մարդ-

կան. որ քահանայական ձեռնադրութեամբ շնորհս ըն-ձեռէ 'ի Հոգւոյն սրբոյ ազդմանէ, որսալով աւետա-րանին ուռկանաւն, առողջ և անարատ անբիծ ե-րախտեօք խնամակալ[1] սուրբ սիրոյն: Զի որ զձե-ռագործս ստուգութեամբ կատարեսցէ հանդերձ սուրբ վարուք, կենդանի երանութեամբքն երախտաւոր սիրոյն պսակեսցի յամենասուրբ Երրորդութենէն. ազատեալ 'ի պատժոց գեհենին, յանհամեմատ բարութիւնսն վայելէ յանանց և յանսպառ:

Այլ սոյն ուղղեալ հաւատով 'ի գնացս սրբութեան, անարատ և անբիծ երախտեօք սուրբ սիրոյն՝ նախա-շաւիղ ճանապարհորդէ ըստ աւետարանին 'ի հան-դերձեալն յօթեանս արդարոց որ 'ի Քս: Սոյն ուղ-ղեալ հաւատով հասուցանեն ամենասուրբ վարուք և կարգօք 'ի քաղաքն կենդանեաց 'ի սրբոցն ժողովս: Սոյն ուղղեալ հաւատով երիվարք են սուրբ կամաց, որք ընթացուցանեն 'ի գործ նահատակութեան վերին կոչմանն: Սոյն ուղղեալ հաւատով զհրաւիրեալս և զկոչեցեալս յորդորէ 'ի հոգևոր ուրախութիւնս պայ-ծառ և սուրբ գնացիւք, հանդերձ յարմարական ա-ռաքինութեամբ, ոչ ինչ խածեալ զգարշապարս: Սոյն ուղղեալ հաւատով ընթացուցանեն զհետ մոլորե-լոց 'ի դարձուցանել զհողեղէնս 'ի հոգեղէնս, զա-պիրատս յիրաւունս, զանհնազանդս 'ի հնազանդու-թիւն արդարութեան գնացիւք: Սոյն ուղղեալ հաւատով առաջնորդեն վերնայնոցն զհետ երթալ, ուր սրբոցն բնակութիւնք. և կոխել զզօրութիւն թշնամւոյն, ամ-րացեալ պահպանական կօշկօք առաքինութեան. որ ոչ կարասցէ խածանել օձն 'ի ճանապարհի, և լուծա-նել ըստ նոյ զգնացս: Սոյն ուղղեալ հաւատով կո-խեն զհուր ըստ օրինակի երից մանկանցն գնալով 'ի հնոցին: Կամ որպէս Պետրոս 'ի վերայ ծովուն գնա-լով որպէս յատակի. եթէ ոչ էր 'ի թերահաւատու-թենէն ընկղմեալ, ոչ օգնականութեան Տն̃ կարօտա-նայր, որ վերստին զգնացս հաստատեաց 'ի վերայ ա-լեաց ծովուն: Զի որ այսպէս հանդիսացեալք ըստ աւետարանական գնացից արդարութեան, աւետեօք

1 Միւսն ամենակալ:

յուսոյն պսակեցին յամենասուրբ Երրորդութենէն , և զանսպառ բարիսն ժառանգեցին :

Այսոքիւք խրատեալք և պսակեալք առ հաւատչեայ յուսոյն , ծառայել առաջի տեառն երկիւղիւ և ցնծալ առաջի նորա դողութեամբ , ըստ [1] Դաւթայ ասել . « Ընկալարուք զխրատ նորա՝ զի մի բարկասցի տէր , և կորնչիջիք ՚ի ճանապարհաց արդարութեն ՚ի ժամանակի յորում զարթիցի բարկութի նորա » ՚ի դատել զերկիրս և հաստատանել ըստ արդար դատաստանին : Դժնդակացն և յանցաւորացն , որք մեղան և ոչ ապաշխարեցին , որդն անմահ և խաւարն արտաքին , ուր լալ աչաց է և կրճել ատամանց , և անշէջ հուր գեհեննին պատրաստեալ կայ անմահ տանջանաց : Իսկ որ սրբեցին զանձինս իւրեանց յամ աղտեղի ցանկութեց և կատարեցին զարդարութիս ամ , անհամեմատ երանութիւք մեծարեալ և փառաւորեալ պարծանօք պսակեցին յամենասուրբ Երրորդութենէն : Որում փառք յաւիտեանս յաւիտենից . ամէն :

1 Միւսն ըստ Դաւթի ասելոյն :

# ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԲԱՐԵՐԱՐ ԱՐԱՐՉԻՆ ԽՆԱՄՈՑ ԵՒ ԿՇՏԱՄԲՈՒԹԻՒՆ ԱՆՀՆԱԶԱՆԴՈՒԹԵԱՆ ԵՒ ՍՏԱՀԱԿՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆ ԲԱՐՈՒԹԵԱՆ ԲԱՐԵԱՑՆ ԼԱՒՈՒԹԵԱՆ

### ԺԲ

ԲԱԶՄԱԴԻՄԻ են երախտիք շնորհաց միոյ Հօրն բարերարի, և միոյ Տեառն կենարարի խնամք արարչութեն լուսաւոր փոփոխմանցն, և միոյ Հոգւոյն սրբոյ խնամոցն պարգևք և ամենագիւտ սիրոյն առ երկնաւորս և երկրաւորս և որ 'ի նոսա են արարածք ա̃մ: Ջուր և օդ ըստ փոփոխման արարչին յօրինուածոց ցուցանեն վերնոց և ներքնոց, առ փոքր փոքր զաճումըն առեալ, և 'ի կատարումն ընթացուցանեն հաճոյից ա̃մ, և զհանդէս մտերմութեն բացայայտեն երկրաւորացս և երկնաւորացն լուսաւորացն մտերմութե գործակցութբ հոգևոր օրինացն բարձրացուցանել 'ի փառս և 'ի պատիւ ըմամբ խոստացեալ բարեացն. որ փառօք և պարծանօք մեծարեալ են բարերար և առատ և աննախանձ կենդանարար շնորհօքն: Եւ զփոփոխմունս յարդանացն տեսեալ՝ յառաւել մտերմութե հանդէսն յորդորին, և զաներեւոյթսն երևելեօքս ցուցանեն առողջ անարատ լուսաւոր սրբութե յորդորմամբ՝ անքիծ երախտեօք սիրոյն: Եւ ընձայաբեր լինել տեառն ըստ միոյ միոյ պարգևին գործակցութբ ամենաշահ նորա խրատուցն զմեզ մեծարելով հաւանն և բարերար կամաց շնորհողին. կարգելով միակս ճշմարտութեն առ երախտիս բարեացն ա̃մի յաներևոյթսն և յերևելիս, յանմարմին զօրութիւն ասեմ, յերևելիս որդիս մարդկան: Զի նովաւ կեան և շարժին երկնաւորքն և երկրաւորքս:

նոքա եղիցին ինձ ժողովուրդ»․ և դարձեալ․ «Ես եղէց նոցա 'ի Հայր, և նոքա եղիցին ինձ յուստերս և 'ի դստերս, ասէ տէր ամենակալ»:

Արդ ա̃մ արարածք 'ի ներքոյ զօրութեան նորա կախեալ կան․ բայց զսիրելիս իւր և զկամարարս 'ի ներքոյ վարագուրի խնամոց սիրոյն պահէ յա̃մ վտանգից: Եւ այլ կայեանք են, որ արհամարհեցին զօրէնս նորա, և ծառայեցին դժնդակ ցանկութեանց անխտիր պէսպէս չարեաց, որք ժառանգեն զարտաքին խաւարն: Խաւար է աստ արտաքին չար, որոց խաւարեալ են միտք և զգայութիւք, և օտարացեալ են 'ի կենաց անտի, որպէս ասէ Առաքեալ: Իսկ անդ ո՞ւր․ 'ի հուր գեհենին, ուր լալ աչաց է և ոչ զոք տեսանէ, և որ 'ի նոյն են տանջանք՝ որ պատրաստեալ է դիւաց և պղծոց:

Զի իբրև երկրաւոր կեանքս 'ի ձեռն մահուան 'ի գլուխ ելանեն, հոգիքն յուղարկին առ ա̃ծ՝ որ ետ զնա, և մարմինն դառնայ 'ի հող՝ յորմէ ստեղծաւ յարարչէն: Եւ սուրբ և արդար հոգեացն ընդ առաջ գան հրեշտակք և սրբոցն հոգիքն, և տանին առաջի ա̃յ սաղմոսիւք և օրհնութ̃բ և երգօք հոգևորօք, գովելով զամենազօր փառս տէրութեան ամենասուրբ Երրորդութեան․ և գոհանան զերախտաւոր բարերարութէն, որ փոխէ յերկրաւորացս յերկնաւորն, յանարգութենէ 'ի պատիւ զհրաւիրեալսն և զկոչեցեալսըն յիւր արքայութիւն և 'ի փառսն․ որ նա միայն է փառաց և պատուոյ և օրհնութեանց արժանի: Քաղցր խոնարհութ̃բ, հնազանդութ̃բ օրինացն, ընծայիւք պատարագաց 'ի նուէրս լրութեան գործոց բարեաց, ըղ-Քս̃ պատարագեալ զսարսափելի խոնարհութիւն վասն նորա փրկութեան և յուսոյն քահանայական խորհրդածութ̃բ: Զկապեալս արձակել, զպարտս թողուլ, զկարօտեալս լցուցանել, և որ այլ ևս են բարեգործութիւք բազմաձեռնութ̃բ աղօթիւք և խնդրուածովք, ջերմեռանդ արտասուօք վասն հանդերձելոցն փրկանաց: Այսոքիւք յուղարկել զհրաժարեալսն 'ի յայս կենացն յաւիտենից 'ի Քս̃, որ այսոքիւք հաշտեսցի Հայրն գթած և Որդին բարերար և Հոգին սուրբ բարեխնամող․ և ուրախութ̃ի լինի 'ի վերայ պատոցին

վերին զօրացն, որպէս 'ի վերայ մեղաւորաց որ դատանան ստուգապէս խոստովանութեամբ յապաշխարութիւն. և ընդունելին զհոգին յօթնեակս ըստ իւրաքանչիւր արժանաւորութեանն, բաժանել զհանգիստ և զանէզր ըստ տեսչութեանն այ:

Ի վերայ այսոցիկ հաւատացելոց և արժանաւորաց յուսոյ, որ անյուսութեամբն լան և կոծին և ցաւին զհրաժարեալսն յերկրէս որպէս զհեթանոսս՝ որ ոչ գոյ յոյս, բարկացուցանեն զած: Եւ 'ի գործոց երախտեաց բարեացն որ ընծայեցաւն այ վասն հրաժարելոյն, զրկեն այնուիկ զնա 'ի հանգստենէն, և տրտմեցուցանեն զզօրս երկնաւորս և զհոգիս արդարոց, և զնոցին զհոգին իսկ՝ վասն որոյ զուգն յերկարեն: Եւ ինքեանք անկանին 'ի պատիժս վասն անյուսութեանն, և առնուն զվճիռս պատուհասիցն: Զի որ խռովեցուցանէ զած և տրտմեցուցանէ զերկնային զօրսն և զարդարոցն հոգիս և զրկէ զհոգի հանգուցելոյն 'ի հանգստենէն, կրեսցէ դատաստան ո ոք և իցէ՝ ըստ Առաքելոյ բանին: Արդ որ զմարդիկ խռովեցուցանեն՝ պատուհաս կրեսցեն, որքան որ զած և զընտանիսն նորա զհրեշտակս և զսուրբս: Զի այ դատաստանքն ճշմարտութեամբ են, ասէ, 'ի վերայ այնոցիկ՝ որ զայնպիսիսն գործեն:

Եւ զի երրորդ մարդկային կեանք բացայայտին, առաջին է յորովայնի մօրն սաղմն առնել և աճել, 'ի մթին և յաղջամղջին որգանոցին զկեանս տնօրինել մինչև 'ի ժամանակս ծննդեանն: Եւ երկրորդ՝ կեանք երկրագործ. որ յաշխարհիս քաղաքավարի ըստ աշխարհիս բերմանց, նախախնամութեամբ արարչին դարմանել յերկրէ և 'ի ծովէ: Իսկ երրորդ՝ կենդանեաց աշխարհն. ուր ոչ լուր համբաւ մահու. որ ոչ փոփոխի կենդանի երանութիւնքն, անհրաժեշտ պայծառութիւն, անմահաց ուրախութիւն: Զոր ոչ կարէ ասել բան, զի անճառելիք են. և ոչ ունկն կարէ լսել, զի անհամեմատ է 'ի լսել. և ոչ միտք բովանդակեն, զի անիմանալի է քննողաց: Զի և ոչ զյորովայնին ըզկեանսն կարէ ոք ասել զյօրինուածսն. այլ և ոչ զերեւելիս ոք բովանդակի ասել, որ 'ի յերկինս և 'ի յերկրէ և 'ի ծովէ կեանք մարդկան 'ի խնամոց այ մատա-

րեն որպէս յանոյշ խնկոց 'ի բերանոյ սրբոց իւրոց պաշտօնէից, որք սրբութբ զովեն զամենասուրբ զԵրրորդութիւն։ Այդ գունդք հրեշտակաց բանականք, և պատրաստութիւնք[1] զուարթնոց, որ վառեալ բորբոքին յերգս հոգևորս, հաւատարեալք ամենեքեան 'ի միասին հատուցանել զփառս։

Լսելիք հաւատով ճշմարտեալ՝ ընդունելութիւն է ծառոյն կենաց և հատոյն[2] քաղցրութեան և որթոյն փրկութեան։ Եւ 'ի նմանէ արձակեն զարմատս 'ի սիրտս կատարելոյ ո͠յ, որ շնորհօք դարմանին հանապազ, և պարարէ զնա 'ի ցօղոյ Հոգւոյն սրբոյ։ Եւ ամենայն արարածք որ գրաւեալ են սրբութբ 'ի սէր նորա, ուրախ են ընդ նմա. գոհանան և փառաւորեն զբարերարն ա͠ծ որ արար զամենայնս, և յարդարեալ պահէ 'ի փառաւորութիւն սուրբ անուանն իւրոյ։ Լսելիք ճշմարտեալ հաւատով վտակք են, ոռոգել 'ի կենաց աղբիւրէն զանդս մտաց և զգայութեանց յաճումն առաքինութեանց։ Եւ զդժնդակաց զբերումն արտաքս հանելով լաւագոյն ժրութեամբ, որ 'ի նիւթ հրոյն ունի զհանգամանս։ Լսելիք ճշմարտեալ՝ զա͠յն յինքն ամփոփէ. որ վերաստեղծու զգաստ գիտել, ճանաչել զբարի և զչար։ Որպէս այլալեզուքն զխուրեանց լսեն առ 'ի պէտս խօսս՝ և ոչ զմիտն, այսպէս և որ զայս լսելիս սրբութբ ունի, զա͠յն լսէ և ոչ զչարին։ Եւ ունկն սրբոցն բանի որ 'ի բերանոյ ա͠յ՝ լսէ, որ մուտ է և անց բանի. որ սրբէ զմիտս և զզգայարանս, և 'ի հնազանդութիւն յորդորէ հոգևոր օրհնացն առողջութեան անարատ և սուրբ երախտաւոր սիրոյն. որ կենդանի խնամօք սիրոյն յամենասուրբ Երրորդութեան լուսաւոր երանութեանք պսակեսցի. ազատեալ 'ի դառն տանջանացն՝ յանհամեմատ բարութիւնն վայելեսցէ իսպառ։

Եւ հոտոտելիք հաւատով հոտոցն են զգայութիւնք գիտութեան և իմաստութեան, առողջ անարատ ամբիծ երախտեօք սուրբ սիրոյն. և ճշմարտեալ անուշութբ 'ի հոգևոր հոտ գիտութեան՝ արբուցանէ 'ի Հոգւոյն սրբոյ զանձն 'ի հոգևոր օրհնացն։ Զի 'ի նոցա-

1 Միւսն պատրաստութիւնք։ 2 Միւսն հատոյն։

նէ յառաջագայի հաւատ գիտութեան Հօր, և ճանաչէ զՈրդի, և իմանայ զՀոգին սուրբ ։ Գիտութիւն Հօր տաճար է նորա փառացն . և որք մտանեն 'ի նա խոստովանութբ, գտանեն զնա ։ Իմաստութի Որդւոյ խորան է նորա ծնելութեն . զի որք հային 'ի նա դաւանութբ, մերձեցուցանէ առ ինքն ։ Եւ ճանաչէ զՀոգին սուրբ զտուիչ բարեաց 'ի ձեռն ճշմարիտ հաւատոցն, որ ցուցանէ զլոյս ածութեն, որ շնորհօք զտեսողսն լուսաւորէ, և հաւտ գիտութե վերաբերէ ընդ վերին զօրսն վառեալ յօրհնութի Հօր 'ի բարձունս և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ ճշմարիտ հաւատով ։

Հոտոտելիք իմաստութե հաւատոց տայ ճանաչել զՀայր ամենակալ, և գիտել զՈրդի մարդասէր գոլ, և զՀոգին սուրբ պարգևատու ։ Հոտոտելիք հաւատոց ընթացուցանեն յարքայութին երկնից, և բանան զդրունս կենաց, որք առ սուրբ Երրորդութին անձկացեալ են, ընդ ինքեանս ունելով զառաքինութիս . և փառակից լինել վերին զօրացն՝ օրհնեն զՀայրն ընդ սերովբէսն, և գովեն զՈրդի ընդ քերովբէսն, երկրպագեն Հոգւոյն սրբոյ ընդ հրեշտակս միոյ ածութեն ։ Հոտոտելիք ճշմարտեալ հաւատով որոշեն զհոտ կենաց և մահու, զարքայութե և զդժոխոցն, զարքութե և զաղտեղութե, զարդարութե և զանիրաւութե ։ Ոմանց գովութբ և շնորհօք բուրէ, և ոմանց պարսաւանօք և զազիրս ։ Զոմանս վայելչացեալս յերկրէս ամբառնայ առ ած, և զոմանս 'ի վայր բերեալ և խորտակեալ 'ի վիհս կորստեան ընկենու ։

Հոտոտելիք ճշմարտեալ հաւատով ճանաչէ զորդիս լուսոյ և զորդիս խաւարի . իմանայ զկամս իւրաքանչիւր զուղղութե և զմոլորութե, որ այլանդակ և այլուսմունք են, որ որոշեն զնոսա 'ի բաց հոտոյն սուրբ ըստ հրամանի տն՝ արտաքս հանելով 'ի խնամոց այ 'ի խաւարն արտաքին, ուր լալ աչաց է և կրճել ատամանց ։ Եւ զսուրբսն անուշահոտ վարուքն մտուցանէ առաքինութբ, մինչև հասցեն 'ի չափ կատարմանն Քսի ժառանգորդ լինել անուշակ արքայութեն . որ ճշմարտեալ են 'ի հաւատս լուսաւոր և սուրբ վարուք, անարատ և ամբիծ երախտեօք սիրոյն ։ Զի որ զայս շնորհալից հոտ առաքինութե ունի 'ի վերայ

պլոց սուրբ վարուց, կենդանի երանութիւնք պատկերացի 'ի խնամոց սիրոյն յամենասուրբ Երրորդութեան. ազատեալ 'ի դառն վշտաց գեհենին, և մշտնջենաւոր անհամեմատ երանութեան վայելեսցէ 'ի բարութիւն անսպառ և անվախճան:

Այլ ձեռք ճշմարտեալ 'ի բարի գործս հաւատով առողջ անարատ անբիծ երախտեօք սուրբ սիրոյն, են մշակք պատրաստեալ հանդերձեալ աշխարհին արքայութեան երկնից: Եւ երախտաւոր լինի բարի գործով. լսաւ բարի սերմամբ զանդս յուսով պտղոցն բարեաց. ձեռնտու գլորելոց. զբեկեալսն պատէ, զանկեալսն կանգնէ, զտկարացեալսն զօրացուցանէ, ըզկարօտեալս յագեցուցանէ. գործեսցէ ձեռօք, զի բաւական լիցի տալ իւրաքանչիւր ըստ շնորհելոյն նմա յԱստուծոյ առողջութեամբ առ շինութիւն հաւատոց: Յիշել զԱռաքելոյ ասելն և առնել. «Զիս, ասէ, և որ ընդ իմն էին, պաշտեցին ձեռքս այս»:

Ձեռք սուրբ հաւատով բուրվառք են անուշահոտ խնկով 'ի հրոյ Հոգւոյն սրբոյ, բուրեալ 'ի բարի գործս հեռաւորաց և մերձաւորաց 'ի վայելս. և 'ի վեր ամբառնալ ամենասուրբս և գոհութիւն ընծայել Աստուծոյ: Ձեռք ճշմարտեալ հաւատով գործարան են մտաց և մարմնոց, որ զիւրաքանչիւրոցն զպէտսն վճարէ յերևելիս և յաներևոյթսն անարատ յօրինեալ գովութեամբ 'ի փառս Աստուծոյ ըստ աւետարանին: Ուստի ծագէ լոյսն աւետեաց ձեռացն տարածմամբ, և գործողի զյաղթութեան զվարձս առնուլ: Ձեռք ճշմարտեալ հաւատով անօթ է խորհրդոյ խաչին, որ խլէ զփուշ յանդէ զանիծիցն զտատասկ մեղացն, և տնկէ զծառն կենաց՝ որ պտղաբերէ 'ի մեզ զՔրիստոսի մարմինն և զարիւնն 'ի թողութիւն մեղաց 'ի ձեռն սրբութեան և խոնարհութեան և հնազանդութեան. զի այսպէս մտցուք 'ի յարկս լուսոյն կենաց: Ձեռք ճշմարտեալ հաւատով մշակք Հոգւոյն ճշմարտութեան են. որ 'ի ձեռն վաստակոց իւրեանց առաքինութեան առնուն պարծանօք զվարձսն: Եւ որպէս 'ի ծովու յաշխարհիս ձեռօք վարեն զնաւս, զի հասցեն 'ի նաւահանգիստն խաղաղութեան և հանգիցեն 'ի Քրիստոս Յիսուս: Ձեռք ճշմարիտ հաւատով որսորդք են ոչ ձկանց, այլ մարդ-

կան. որ քահանայական ձեռնադրութիւն շնորհս ըն֊ձեռէ 'ի Հոգւոյն սրբոյ ազդմանէ, որսալով աւետա֊րանին ուռկանաւն, առողջ և անարատ անբիծ ե֊րախտեօք խնամակալ[1] սուրբ սիրոյն։ Զի որ զձե֊ռագործս առուգութիւն կատարեսցէ հանդերձ սուրբ վարուք, կենդանի երանութեանցն երախտաւոր սիրոյն պսակեսցի յամենասուրբ Երրորդութենէն. ազատեալ 'ի պատժոց գեհենին, յանհամեմատ բարութիւնսն վայելէ յանանց և յանսպառ։

Այլ ոտք ուղղեալ հաւատով 'ի գնացս սրբութեան, անարատ և անբիծ երախտեօք սուրբ սիրոյն՝ նախա֊շաւիղ ճանապարհորդէ ըստ աւետարանին 'ի հան֊դերձեալսն յօթեանս արդարոց որ 'ի Քս։ Ոտք ուղ֊ղեալ հաւատով հասուցանեն ամենասուրբ վարուք և կարգօք 'ի քաղաքն կենդանեաց՝ 'ի սրբոցն ժողովս։ Ոտք ուղղեալ հաւատով երիվարք են սուրբ կամաց, որք ընթացուցանեն 'ի գործ նահատակութեան վերինն կոչմանն։ Ոտք ուղղեալ հաւատով զհրաւիրեալս և զկոչեցեալս յորդորէ 'ի հոգևոր ուրախութիւնս պայ֊ծառ և սուրբ գնացիւք, հանդերձ յարմարական ա֊ռաքինութիւն, ոչ ինչ խածեալ զգարշապարս։ Ոտք ուղղեալ հաւատով ընթացուցանեն զհետ մոլորե֊լոց 'ի դարձուցանել զհողեղէնս 'ի հոգեղէնս, զա֊պիրատս յիրաւունս, զանհնազանդս 'ի հնազանդու֊թիւն արդարութեան գնացիւք։ Ոտք ուղղեալ հաւատով առաջնորդեն վերնայնոցն զհետ երթալ, ուր սրբոցն բնակութիւնք. և կոխել զզօրութիւն Թշնամւոյն, ամ֊րացեալ պահպանական կօշկօք առաքինութեան. որ ոչ կարասցէ խածանել օձն 'ի ճանապարհի, և լուծա֊նել ըստ Այ զգնացս։ Ոտք ուղղեալ հաւատով կո֊խեն զհուր ըստ օրինակի երից մանկանցն գնալով 'ի հնոցին։ Կամ որպէս Պետրոս 'ի վերայ ծովուն գնա֊լով որպէս յատակի. եթէ ոչ էր 'ի Թերահաւատու֊թենէն ընկղմեալ, ոչ օգնականութեան Յսի կարօտա֊նայր, որ վերստին զգնացս հաստատեաց 'ի վերայ ա֊լեաց ծովուն։ Զի որ այսպէս հանդիսացեալք ըստ աւետարանական գնացից արդարութեանն, աւետեօք

1 Միւսն անխնակալ։

յուսոյն պսակեցին յամենասուրբ Երրորդութենէն, և զանսպառ բարիսն ժառանգեցին:

Այսոքիւք խրատեալք և պսակեալք քաջ հաւատչեայ յուսոյն, ծառայել առաջի տեառն երկիւղիւ և ցնծալ առաջի նորա դողութեամբ, ըստ [1] Դաւթայ ասել. «Ընկալարուք զխրատ նորա՝ զի մի՛ բարկասցի տէր, և կորնչիջիք 'ի ճանապարհացն արդարութեան 'ի ժամանակի յորում զարթիցի բարկութիւն նորա» 'ի դատել զերկիրս և հատուցանել ըստ արդար դատաստանին: Դժնդակացն և յանցաւորացն, որք մեղան և ոչ ապաշխարեցին, որդն անմահ և խաւարն արտաքին, ուր լալ աչաց է և կրճել ատամանց, և անշէջ հուր գեհենին պատրաստեալ կայ անմահ տանջանաց: Իսկ որ սրբեցին զանձինս իւրեանց յամ աղտեղի ցանկութեանց և կատարեցին զարդարութիւն ամ, անհամեմատ երանութեամբ մեծարեալ և փառաւորեալ պարծանօք պսակեցին յամենասուրբ Երրորդութենէն: Որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն:

1 Միւսն ըստ Դաւթի ասելոյն:

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ԲԱՐԵՐԱՐ ԱՐԱՐՉԻՆ ԽՆԱՄՈՑ ԵՒ ԿՐՑԱՄԲՈՒԹԻՒՆ ԱՆՀՆԱԶԱՆԴՈՒԹԵԱՆ ԵՒ ՍՏԱՀԱԿՈՒԹԵԱՆ ԵՒ ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆ ԲԱՐՈՒԹԵԱՆ ԲԱՐԵԱՑՆ ԼԱՒՈՒԹԵԱՆ

### ԺԲ

ԲԱԶՄԱԴԻՄԻ են երախտիք շնորհաց միոյ Հօրն բարերարի, և միոյ Տեառն կենարարի խնամք արարչութեն լուսաւոր փոփոխմանցն, և միոյ Հոգւոյն սրբոյ խնամոցն պարգևք և ամենագիւտ սիրոյն առ երկնաւորս և երկրաւորս և որ 'ի նոսա են արարածք ամ։ Ջուր և օդ ըստ փոփոխման արարչին յօրինուածոց ցուցանեն վերնոց և ներքնոց, առ փոքր փոքր զաճումն առեալ, և 'ի կատարումն ընթացուցանեն հաճոյից այ, և զհանդէս մտերմութեն բացայայտեն երկրաւորացս և երկնաւորացն լուսաւորացն մտերմութե գործակցութե հոգևոր օրինացն բարձրացուցանել 'ի փառս և 'ի պատիւ լրմամբ խոստացեալ բարեացն. որ փառօք և պարծանօք մեծարեալ են բարերար և առատ և աննախանձ կենդանարար շնորհօքն։ Եւ զփոփոխմունս յարգանացն տեսեալ՝ յաւելուլ մտերմութե հանդէսն յորդորէին, և զաներևոյթսն երևելեօքս ցուցանեն առողջ անարատ լուսաւոր սրբութե յորդորմամբ՝ անքիծ երախտեօք սիրոյն։ Եւ ընձայաբեր լինել տեառն ըստ միոյ միոյ պարգևին գործակցութե ամենաշահ նորա խրատուցն զմերս մեծարելով հաւան և բարերար կամաց շնորհողին. կարգելով մշակս ճշմարտութեն առ երախտիս բարեացն ամ յաներևոյթսն և յերևելիս, յանմարմին զօրութիւնս ասեմ, յերևելիս որդիս մարդկան։ Զի նովաւ կեան և շարժին երկնաւորքն և երկրաւորքս։

Ի բարերար կամացն այ արքանեակք լինին և սիրելեաց նորա վերին զօրքն, առաքելոց և մարգարէից և ուղիղ վարդապետաց, վկայից սրբոց, քահանայից, կուսանաց, արդարոց և ամ ճշմարտասիրաց՝ որք առաքինութբ նահատակին 'ի փրկութի անձանց և մերձաւորաց գործակցութբ հոգւոր [1] օրինացն տեառն: Եւ առ փոքր փոքր յաւելուածովն գալ 'ի կատարումն մննդեամբն: Որպէս և ինքն իսկ եցոյց զիւրոց գործոցն զյօրինուածս 'ի ծնունդս. որ յոչընչէ 'ի սաղմնէն յարգանդէն 'ի հաւանութենէ արուին և իգին ըստ օրինաւոր ամուսնութե կարգացն այ՝ զաւակ ստանան 'ի սփոփանս անձանց և մերձաւորաց և 'ի գոհութիւն պարգևատուին, և բազում ուրախութի ցուցանեն 'ի ծննդեանն, և բարեկամօք և մերձաւորօք տօն կատարի ծննդեանն և անուանակոչութեանն: Որ 'ի մթին և յաղջամղջին յորովայնէ յառաջ եկեալ մարդ կերպարանեալ ցուցանի յերկրի: Եւ յորժամ մննդեամբ մարմինն աճէ 'ի կատարեալ հասակ պատրաստութեամբ արուեստիւք ամամբք, և ոգիքն բանաւորք և մտաւորք ըստ մարմնոյ աճմանն զգիտութի և զիմաստութի ընդ նմին բացայայտեն 'ի ձեռն ուսուցչացն խրատուց. որ և պետութեց և իշխանութեց հանդիպին յերկրի:

Եւ նախ քան զամենայն ճանաչելն զած, և արարածովքս իմացեալ զարարիչն երկնի և երկրի որ 'ի նոսա արարածք իցեն. և լինել աշակերտ և արքանեակ նորա կամացն՝ նմանեալ նորա բարերարութեն: Ատել զչարն և ընդրել զբարին. պատճառ լինել չահից և խլիչ մնասուց կորստեան. երախտաւոր լինել հեռաւորաց և մերձաւորաց առ դրացիս և ընտանիս. բարիկամօք և բարի գնացիւք և բարի գործովք առ ամենեսեան լինել արժանաւոր իրաւամբք, և արդար և ուղիղ և սուրբ և ճշմարիտ վարս ստանալ: Եւ այնպէս երանելի երևել յաշխարհի՝ ամ առաքինութբ զարդարել ըստ պատկերի այ, փոխի յանուշակն՝ կենդանի յանմահ փառսն 'ի յոյսն յարութե, և ընդունի զերանութի սիրոյն: Զի խնամովք սիրոյն լի են եր-

1 Միւսն հոգւոյն բարեացն փէտոն:

կինք և երկիր և որ 'ի նոսա արարածք իցեն, և նորա նախախնամութե̃ն վարին :

Եւ ոգիք կատարելոց սիրելեաց ա̃յ ուր և են, 'ի նորա սուրբ սիրոյն 'ի գիր կան, և 'ի նորա կենդանի խնամոյն վայելեն : Նոյնպէս և մարմինք 'ի նորա գիրսըն [1] կեալ 'ի խնամոցն պահին, եթէ 'ի ցամաքի և եթէ 'ի ջուրս՝ ուր և իցեն : Զի ա̃ծ մեր յերկինս և յերկրի, 'ի ծովս և յա̃մ խորս, ասէ մարգարէն : Եւ դարձեալ ասէ . «Թէ ելանեմ յերկինս, դու անդ ես . և եթէ իջանեմ 'ի դժոխս, և անդր մօտ ես . եթէ առից զթեւս իմ ընդ առաւօտս և բնակեցայց յեզերս ծովու, սակայն և անդ ձեռն քո առաջնորդեսցէ ինձ և աջ քո ընկալցէ զիս սիրով» : Դժոխս ասէ զգերեզմանս ապականիչ՝ որ ա̃յ խնամովքն պահի 'ի յոյս յարութեանն . ուստի վերստին նորոգին 'ի կեանսն յաւիտենից՝ ընդունելով զհոգիս իւրեանց : Եւ որ սուրբք իցեն, 'ի քս̃ մերձ լինին . զի «Ուր եմ ես, անդ և պաշտօնեայքն իմ եղիցին» :

Այլ և զմեղաւորացն զմարմինս և զհոգիս պահէ, ուր և իցեն, 'ի յանդիմանութի̃ կշտամբանաց մեծի աւուրն դատաստանի և յարութե̃ն 'ի մեռելոց : Զի դիմադարձ եղեն օրինացն արդարութե̃, սիրեցին զչար և ատեցին զբարի, և զպատուիրանս նորա ոչ պահեցին : Իսկ որք ճշմարտեալ սիրով խնդրեցին զնա, եղև նոցա պարգեւատու . զի արդար է տէր և ուղիղ են դատաստանք նորա, թէպէտ և մեզ է այս անհասանելի : Որ ծագէ զարեգակն 'ի վերայ չարաց և բարեաց, և որ այլ ևս են խնամք հասարակաց 'ի տեառնէ : Բայց որ առնէ զկամս նորա, միայն յաւիտեան . զի «Եղերուք սուրբք և արդարք, զի և ես սուրբ եմ և արդար, ասէ տէր» : Իսկ որ զայս աւետիս ունին յանձինս, սրբեն զինքեանս յա̃մ ցանկութե̃ց, և լինին արքանեակք ճշմարիտ և սուրբ վարուց, և այնպէս լինին ընդունարան ա̃ծային շնորհացն և օթեւանք ա̃յ : Արդ որ այսպիսիք են, 'ի խնամս սիրոյն հաստատեալ կան : Որպէս և ասաց՝ եթէ «Բնակեցայց 'ի նոսա և գնացից 'ի նոսա և եղէց նոցա յա̃ծ, և

1 Միւսն Գիրկն :

նոքա եղիցին ինձ ժողովուրդ»․ և դարձեալ․ «Ես եղէց նոցա 'ի Հայր, և նոքա եղիցին ինձ յուստերս և 'ի դստերս, ասէ տէր ամենակալ»:

Որդ. ամ̃ արարածք 'ի ներքոյ զօրութեան նորա կախեալ կան․ բայց զսիրելիս իւր և զկամարարս 'ի ներքոյ վարագուրի խնամոց սիրոյն պահէ յա̃մ վտանգից: Եւ այլ կայեանք են, որ արհամարհեցին զօրէնս նորա, և ծառայեցին դժնդակ ցանկութեանց անխտիր պէսպէս չարեաց, որք ժառանգեն զարտաքին խաւարն: Խաւար է աստ արտաքին չար, որոց խաւարեալ են միտք և զգայութիւնք, և օտարացեալ են 'ի կենաց անտի, որպէս ասէ Առաքեալ: Իսկ անդ ու՞ր․ 'ի հուր գեհենին, ուր լալ աչաց է և ոչ զոք տեսանէ, և որ 'ի նոյն են տանջանք՝ որ պատրաստեալ է դիւաց և պղծոց:

Ոչ իբրև երկրաւոր կեանքս 'ի ձեռն մահուան 'ի գլուխ ելանեն, հոգիքն յուղարկին առ ա̃ծ՝ որ ետ զնա, և մարմինն դառնայ 'ի հող՝ յորմէ ստեղծաւ յարարչէն: Եւ սուրբ և արդար հոգեացն ընդ առաջ գան հրեշտակք և սրբոցն հոգիքն, և տանին առաջի ա̃յ սաղմոսիւք և օրհնութ̃բ և երգօք հոգևորօք, գովելով զամենազօր փառս տէրութեան ամենասուրբ Երրորդութեան․ և գոհանան զերախտաւոր բարերարութէն, որ փոխէ յերկրաւորացս յերկնաւորն, յանարգութենէ 'ի պատիւ զհրաւիրեալսն և զկոչեցեալսն յիւր արքայութիւն և 'ի փառսն․ որ նա միայն է փառաց և պատուոյ և օրհնութեանց արժանի: Քաղցր խոնարհութ̃բ, հնազանդութ̃բ օրինացն, ընծայիւք պատարագաց 'ի նուէրս լրութեան գործոց բարեաց, ընդ քն̃ պատարագեալ զսարսափելի խոնարհութեան վասն նորա փրկութեան և յաւոյն քահանայական խորհրդածութ̃բ: Զկապեալս արձակել, զպարտս թողուլ, զկարօտեալս լցուցանել, և որ այլ ևս են բարեգործութիւնք բազմաձեռնութ̃բ աղօթիւք և խնդրուածովք, ջերմեռանդ արտասուօք վասն հանգուցելոցն փրկանաց: Այսոքիւք յուղարկել զհրաժարեալսն 'ի յոյս կենացն յաւիտենից 'ի քն̃, որ այսոքիւք հաշտեսցի Հայրն գթած և Որդին բարերար և Հոգին սուրբ բարեխնամող․ և ուրախութ̃ի լինի 'ի վերայ այսոցիկ

վերին զօրացն, որպէս 'ի վերայ մեղաւորաց որ դա-
նան սատուգապէս խոստովանութե̄ յապաշխարութի̄.
և ընդունին զհոգին յօթնեակս ըստ իւրաքանչիւր
արժանաւորութե̄ն, բաժանել զհանդիսս և զանձն
ըստ տեսչութե̄ն ա̄յ:

Ի վերայ այսոցիկ հաւատացելոց և արժանաւորաց
յուսոյ, որ անյուսութե̄ն լան և կոծին և ցաւին զհրա-
ժարեալն յերկրէս որպէս զհեթանոսս՝ որ ոչ գոյ
յոյս, բարկացուցանեն զա̄ծ: Եւ 'ի գործոց երախ-
տեաց բարեացն որ ընծայեցաւ ա̄յ վասն հրաժարե-
լոյն, զրկեն այնուիկ զնա 'ի հանգստենէն, և տրտմե-
ցուցանեն զզօրս երկնաւորս և զհոգիս արդարոց, և
զնոցին զհոգին իսկ՝ վասն որոյ զուգն յերկարեն:
Եւ ինքեանք անկանին 'ի պատիժս վասն անյուսութե̄ն,
և առնուն զվճիռս պատուհասիցն: Զի որ խռովե-
ցուցանէ զա̄ծ և տրտմեցուցանէ զերկնային զօրսն և
զարդարոցն հոգիս և զրկէ զհոգի հանգուցելոյն 'ի
հանգստենէն, կրեսցէ դատաստան ոք և իցէ՝ ըստ
Առաքելոյ բանին: Արդ որ զմարդիկ խռովեցուցանեն՝
պատուհաս կրեսցեն, ո՞րքան որ զա̄ծ և զընտանիսն
նորա զհրեշտակս և զսուրբս: Զի ա̄յ դատաստանքն
ճշմարտութե̄ են, ասէ, 'ի վերայ այնոցիկ՝ որ զայնպի-
սիսն գործեն:

Եւ զի երրորդ մարդկային կեանք բացայայտին,
առաջին է յորովայնի մօրն սաղմն առեալ և աճեալ,
'ի մթին և յաղջամղջին արգանդին զկեանս անօրի-
նեալ մինչև 'ի ժամանակս ծննդեանն: Եւ երկրորդ՝
կեանք երկրագործ. որ յաշխարհիս քաղաքավարի
ըստ աշխարհիս բերմանց, նախախնամութե̄ արարչին
դարմանեալ յերկրէ և 'ի ծովէ: Իսկ երրորդ՝ կեն-
դանեաց աշխարհն. ուր ոչ լուր համբաւ մահու. որ
ոչ փոփոխի կենդանի երանութիւքն, անհրաժեշտ պայ-
ծառութի̄ն, անմռաց ուրախութի̄ն: Զոր ոչ կարէ
ասել բան, զի անճառելիք են. և ոչ ունկն կարէ լսել,
զի անհամեմատ է 'ի լսել. և ոչ միտք բովանդակեն,
զի անիմանալի է քննողաց: Զի և ոչ զյորովայնի ըզ-
կեանսն կարէ ոք ասել զյօրինուածսն. այլ և ոչ զերե-
ւելիսս ոք բովանդակի ասել, որ 'ի յերկնէ և 'ի յերկ-
րէ և 'ի ծովէ կեանք մարդկան 'ի խնամոց ա̄յ մատա-

կարարէն, թող թէ զառհաւատչեայ յուսոյն զանանց կեանսն ։ Բայց հրաւիրեն գիրք միայն խոստմամբք զարքայութիւն հաւատացելոց, և յորդորեն յուսով զողջախոհսն՝ թէ որ զերկինս և զերկիր ետ լրիւ իւրով 'ի սնունդ մեր բարեօք վասն ոչ միոյ իրիք լաւութեան, ապա 'ի սոցանէ յայտ է անսուտ խոստմունքն 'ի բարերար տեառնէն սիրողաց իւրոց ։

Եւ զի ոչ կարեն ճառել սիրողք Աստուծոյ զհանդերձեալսըն, այլ 'ի բանէն տեառն. «Ծագեսցեն, ասէ, արդարքն որպէս զարեգակն յարքայութեան հօր»։ Եւ որպէս ոչ է նման խաւար արեգական լուսոյ, սոյնպէս և ոչ արեգական լոյս կենդանի լուսոյ փառացն համեմատ է, զոր զգենլոց են սուրբքն զանստուեր լոյսն զմշտնջենաւորն զանփոփոխն՝ որ լին է կենդանարար բարութեամբք ։ Զի որպէս 'ի զգալիս արեգակն, յիմանալիսն Աստուած է՝ որ լուսաւորէ զմեզ ։

Ոի որք աստ ըստ խրատու պատուիրանաց տեառն հրահանգեն զինքեանս 'ի վարս առաքինութեան, առհաւատչեայ յուսոյն իբրև 'ի տուընջեան բարեձև կարգօք վարեն զաշխարհ, և ոչ մեկնին 'ի նորա կամացն, ոչ 'ի տխրականաց և ոչ 'ի հեշտականաց, և ոչ խռովեցուցանէ զԱստուած և զզօրս անմարմնոցն տրտմեցուցանէ և զհոգիս արդարոցն 'ի զգայութեան շնորհացն, Որ յամենայն դժնդակաց շարժմունս՝ որ 'ի սուգ և 'ի վիշտս՝ 'ի նեղութեան և յանդորրու՝ արտաքոյ կամացն Աստուծոյ գործէ ։ Իսկ որ առաքինաբար անցանեն ընդ վիշտս և ընդ նեղութիւնս՝ ոչ ինչ վնասեալ 'ի պատահելոյն, ուրախ առնեն զԱստուած, և 'ի հրճուանս զզօրս հրեշտակաց և զհոգիս արդարոց, ըստ այնմ օրինակի զոր վերագոյնն ասացաք ։ Եւ լուսաւորեալք լուսով աւետեացն՝ փոխին յանմահութեան կեանսն ։

Իսկ որք մեղաւորքն են վախճանեալ ամբարշտութեամբ և անիրաւութեամբ և յուսահատութեամբ, նոքա են ողբոց արժանի և արտասուաց ։ Որք վրիպեցան 'ի խոստացեալ բարեացն և յանսպառ ուրախութեանցն, և հրաւիրեցան յանշէջ հուր գեհենին և յանմահ սատակումն, ուր լալ աչաց և կրճել ատամանց է միշտ ։

Ոյ որ զճշմարտեալսն հաւատով և զբարեգործն վարուք սգան անյոյս, նոքա ընդունին զպատուհաս

փոխանակ անյուսութեն 'ի տեառնէ, և զհրաժարելոցն հոգւոյն վնասեն: Արտասուք օգտակար այս են 'ի տէր, որ զմեռելոցն զյիշատակս մեղացն և զանձանց առաջի նմ ընծայել և ոչ առաջի հրապարակաց. որ լինի սրբարան մեղաց և ոչ 'ի պատիժս: Եւ ջերմեռանդ արտասուօք միշտ յաղօթս կանխել 'ի տուէ և 'ի գիշերի հսկել: Եւ ցաւագին հեծութք և պահօք պնդութք, բազում զղջմամբ և ապաշաւանօք զխալանան ոգալ հանապազ, որ վրիպեցան յերկնային լուսոյն և 'ի յայտնութե փառաց մեծին նմ: Զի որ իւր մեղօքն 'ի խոստացեալ նմ բարեացն զրկեցաւ, զնա ոգասցուք այնպիսի ապաշաւանօք, և եղուկ վարկանել զվրիպեալսն յանանց բարեացն: Եւ արտասուալից աղօթիւք և առատատուր ողորմութբ և նմ բարեգործութբք հանդերձ Քի պատարագաւն զնծ 'ի հաշտութի ածել, և 'ի հրաժարելոյն[1] մխիթար լինել 'ի հանդերձեալսն:

Նայսքիկ են որ զանձն օգտեցուցանեն, և զհրաժարեալսն՝ իւրեանց մերձաւորքն և զմտերիմ սէրն ցուցանեն վասն հրաժարելոյն յերկրէ: Վասն հաւատացելոցն յուսով զննջեցեալսն և Առաքեալ մխիթարէ և ասէ. «Մի տրտմիք որպէս և հեթանոսք, որոց ոչ գոյ յոյս. զի որպէս յարեաւ Քս 'ի մեռելոց, նոյնպէս և զվախճանեալսն մեր և զմեզ յարուցանէ և յանդիման կացուցանէ իւր հանդերձ ամենայն սրբովք 'ի գալստեանն իւրում Քս»: Ի զօրս մակաբայեցւոց երևի յոյս. որ զնիշ հեթանոսաց յանձին ունելով անկան 'ի պատերազմի, և զնոցա աւարն ետուն ցքահանայսն, զի աղքատաց բաշխեսցեն 'ի քաւութի նոցա մեղացն՝ որ վրիպեցան 'ի ճշմարտիցն: Եւ զի գիրք են մեր վարդապետք, և 'ի ձեռն նոցա զյաւիտենից զյոյսն ընկալցուք, և նոքօք վարեսցուք յաշխարհի. զի ճշմարտեալք սուրբ սիրով փոխեսցուք 'ի կենդանի յոյսն երանութե որ կայ և մնայ:

Պատուական՝ ասէ մարգարէն զմահ սրբոց առաջի տեառն ամենակալի: Եւ իւ է պատուական մահ սրբոց. որ ճշմարիտ որոշմամբ զլաւսն 'ի հանդէս ա-

1 Միւսն հրաժարելոյն:

ռաքինութեան ցուցեալ 'ի յոյս կենացն յաւիտենա-
կանաց ։ Ի՞ւ է պատուական մահ սրբոց ա͠յ ․ զի յան-
ցաւոր կենացս յայսցանէ 'ի մշտնջենաւոր կեանսն փո-
խին ։ Ի՞ւ է պատուական մահ սրբոց ա͠յ ․ զի 'ի վշտագին
նեղութեանցս այսոցիկ 'ի հանգիստ բարեացն փոխին ։
Ի՞ւ է պատուական մահ սրբոց ա͠յ ․ զի 'ի թշուառութենէ
և յեղկելի կենացս յերանելի կեանսն փոխին ։ Ի՞ւ
է պատուական մահ սրբոց ա͠յ ․ զի յակամայ փոր-
ձանաց հոգւոյ և մարմնոյ ազատի և յանդորր փոխի ։
Ի՞ւ է պատուական մահ սրբոց ա͠յ ․ զի զծերութի͠ և
զտկարութի͠ թողուն, և 'ի նորոգութիւն վերստին փո-
խին ։ Ի՞ւ է պատուական մահ սրբոց ա͠յ ․ զի սիրոյն
որով յաղթեցին ա͠մ կարեաց մարմնոյն, 'ի նա փո-
խին ։ Ի՞ւ է պատուական մահ սրբոց ա͠յ ․ զի զմեղացն
մահ մեռան յերկրի, և կենդանի յուսոյն փափաքե-
ցին ․ զի յորժամ Ք͠ս յայտնեսցի կեանքն մեր, յայն-
ժամ և սուրբք ընդ նմա փառաւորին ։ Զի սուրբք
կենդանի երանութիւնք կացին յաշխարհի, և այժմ
կենդանի են առ ա͠յ խնամսն ։ Զի հոգիք արդարոց 'ի
ձեռին ա͠յ են ուրախարար յուսոյն ըստ անսուտ խոստ-
մանցն ա͠յ ․ զոր 'ի յարութեան ընդունելոց են զփառս
յաղագս սրբութե և արդարութե և ճշմարտութեան
յարքայութեան երկնից յամենատուրն Երրորդութենէն ։

Իսկ որ կենդանի մարմնով մեռացն յաշխարհի վա-
րին զաղիր ախտիւք և դժնդակ վարուք, կենդանի
մեռեալս կոչեն ա͠ծային գիրք ։ Որպէս զայն որ ա-
սաց տէրն՝ մեռելոցն մեղօք թաղել զհայրն մեռեալ, և
նմա քարոզել զարքայութիւն ա͠յ ։ Զի որ յուսահատ
են 'ի կենաց անտի և օտարացեալք յա͠յ և յուղիղ
վարուց, նոքա են ստուգապէս մեռեալ ։ Եւ որք ա-
րարին զկամս մարմնոյ և զմտաց, որպէս 'ի գերեզմանի
թաղեալ կամ նեխեալ մեղօք 'ի մարմինս անսրբոց և
պղծոց և անխտիր յա͠մ յանցանս ․ որք և ժահահո-
տութիւս բուրեն զանօրէնութեանցն ։ Որպէս տէրն ցու-
ցանէ զփարիսեցւոցն ժողովմն ․ որ 'ի վեր երևին ինչ,
և 'ի ներքոյ լի են ամբարշտութե չարեօք և հայհոյ-
ութե ։ Զի որպէս գերեզմանք բաց են կոկորդք նոցա,
ասէ մարգարէն ․ դատեա զնոսա, տէր ա͠ծ, զի անկցին
'ի խորհրդոց իւրեանց չարաց ։ Զայնպիսիսն ողբա-

ցուք, որ կենդանի մեռեալք էին և մեռանին զհաստատա-կացն մահ անմխիթար։

Օ՜ մահ մեղաւորաց չար ասէ մարգարէն յաղագս դժնդակ անսուրբ վարուց. բայց որ ատէին զարդարս յաղագս ողջախոհ խրատուց՝ զղջացին, զի հրաւիրեցան յանշէջ հուր գեհեննին։ Ի՞ւ է չար մահ մեղաւորին. զի յուսահատութիւն է վախճան նոցա. զի մեղան և ոչ զղջացան և ոչ ապաշխարեցին և հաշտեցուցին զա̃ծ։ Ի՞ւ է չար մահ մեղաւորին. զի ելին 'ի ժառանգութենէ հրեշտակաց, և եղեն ժառանգորդք դիւաց և յաւիտենից տանջանացն՝ որ նոցա էր պատրաստեալ յամենեցունց տեառնէն։ Ի՞ւ է չար մահ մեղաւորին. զի ել յայս աշխարհէս որ անզգայաբար կեայր և ոչ առնոյր 'ի միտ զոր ելիցն. զոր ոչ կարէ գործել զկնի ատոր վճարելոյն զբարի և մտանել առ Ա̃ծ։ Ի՞ւ է չար մահ մեղաւորին. զի լսեն յամենեցուն տեառնէն՝ երթայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենից. որ սատանայի կամարարք եղեն և ոչ Ա̃յ՝ որ արար զմ̃ 'ի բարի կամս։ Ի՞ւ է չար մահ մեղաւորաց. զի դրունք կենաց ապաշխարութեան փակեցան, և ոչ ևս է լսել 'ի տեառնէ՝ դարձարուք առ իս, և ես դառնամ առ ձեզ. այլ թէ՝ հանէք 'ի խաւարն արտաքին, զի ոչ լուան ինձ։ Ի՞ւ է չար մահ մեղաւորաց. զի բանան դրունք մահաբեր դժոխոցն յաղագս զանազան դժընդակ չարեացն զոր գործեցին, և ոչ յիշեցին զտանջանսն յաւիտենից մեղաւորաց։

Օ՜ի անդ զղջումն անօգուտ է. զի արգելեալ է դուռն մարդասիրութեան, որք յառագաստէն արտաքս անկան։ Եւ կամ կաթի ջրոյն կարօտին Ղազարու, և կամ շիջեալ ջահիցն իւղ, և որ այլ ևս են անշրջելիք. և ոչ ուստեք գտանել այցելութիւն։ Այլ երթիցեն մեղաւորքն 'ի տանջանսն յաւիտենից, ասաց բանն Ա̃յ մեզ. իսկ արդարքն 'ի կեանսն յաւիտենից։ Որոց պատուական ցուցան մահ սրբոցն առաջի տեառն յաղագս սուրբ և ուղիղ վարուց ճշմարիտ հաւատով, լուսաւորեալք 'ի լոյս կենացն յաւիտենից։ Զի 'ի վերայ արդարոց և մեղաւորաց յանսուտ բանէն յաւիտենիցն է հաստատեալ, և ոչ ունի փոփոխումն. «Երթիցեն մեղաւորքն յաւիտենից տանջանսն, և ար-

դարցն յաւիտենից կեանանս»։ Եւ գովիչք և փառաւորիչք լինին միոյ ածութեն, և փառօք և պատուով և պարծանօք երանին և պսակին, և մտանեն 'ի ժառանգութիւն որդեգրութեն, և վայելեն յանսպառ բարիսն 'ի փառս ամենասուրբ Երրորդութեն այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ՀԱՆԴԷՍ ՎԱՍՆ ԼԱՒՈՒԹԵԱՆ ՅԻՇԱՏԱԿԱՑ Ի ԳԷՏՍ ՕԳՏԻՑ ԶԱՆԵՐԵՒՈՅԹՍ ՆՅԵՐԵՒԵԼԻՍ ՑՈՒՑԱՆԵԼՈՎ Ի ԳՈՐԾ ԱՌԱՔԻՆՈՒԹԵԱՆ ՓՈԽԻԼ Ի ՑՈՅՑՍ ԿԵՆԴԱՆԻ Ի ԲԱՆԱԿՍ ԶՈՒԱՐԹՆՈՑՆ ՈՐ ԱՍՏ ԿԱՏԱՐԵՑԻՆ ԶՀԱՃՈՅՍՆ ԱՍՏՈՒԾՈՅ

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

### ԺԳ

Ով խորք մեծութեան եւ գիտութեան եւ իմաստութեանն այ. որ բազում հնարիւք ունկնդրաց եւ հնազանդելոց առաջնորդէ 'ի հաճոյս տէրութեանն իւրոյ, եւ զգուշութիւ եւ զգաստութիւ սուրբ սիրոյն յորդորէ 'ի պահպանութիւն պատուիրանին. զի հասցուք 'ի դաւանն փըրկութեան կենաց 'ի հանգիստ նախախնամական սիրոյն, եւ իրաւամբք արդարութեանն ժառանգեսցուք զպատիւ փառացն, եւ հաւատովք հասանել 'ի յոյսն ճշմարիտ։ Զարթնուլ 'ի կոչումն բանին կենաց ըստ պէսպէս շնորհացն. ըմպել զարժանին եւ զկրաւն. առնուլ յուսով զառհաւատչեայ աւետիսն, եւ թռչել թեւօք հոգւոյն յերկնից արքայութիւն, եւ գեղեցիկ վարուք լինել ճանապարհ բազմաց 'ի կեանս։ Եւ յիշատակօք յուսոյն յառաջիկայսն ընթանալ, եւ զկնի ծաւալել ճշմարիտ հաւատով զստուգութեան[1] վարսն 'ի նախանձ բազմաց։ Զի առաջինքն օրինակ են վերջնոցս 'ի բարի յորդորումն, եւ վերջինքս հանապազ նորոգեն յիշատակօք առաջնոցն առաքինութիւնք։ Գովելով զնոսա եւ գոհանալով փառաւորեն զած զտուիչն այնպիսի շնորհաց մարդկան։ Եւ այնպէս յորդորել 'ի սէրն այ, եւ բերանով խոստովանիլ զճշմարտութիւ անմնակալ զօրութեանն այ, եւ ընծայաբեր լինել բարի պարգեւօք արդարութեան ամենեցունց տեառնն՝ առաջ-

1 Միւսն ըստուգութեան։

նոցին գործակցութիւն ճշմարիտ նոցա հանդիսիւքն ։ Անբաւ համարել զանձինս 'ի նոցա անտի յուսոյն և 'ի մտերիմ սիրոյն և առհաւատչեայ միշտ բարեխօս առ տէր. որպէս զի ճշմարտեալ հետևող լիցին 'ի կատարումն լըման առաքինեացն՝ որ յաւուրս իւրեանց կենդանի էին այ։

Այլ հասարակաց յուսոյս մի շահ է. զի առաքինիքն ուրախ լինին 'ի վերջնոցն բարեգործութիս, և վերջինքս հաստատին յառաքինեացն կատարելութի յուսոյս ։ Եւ առաքինութիք առաքինեացն ժառանգութի անձի վերջնոցս. զի մնացուածք բարի գործոց առաքինեացն առնուլըումն 'ի վերջնոցս աստի։ Եւ եթէ յանցաւոր ես իցէ լինել և սոյգ խոստովանեալ և ապաշխարեալ ջերմեռանդ արտասուօք և գթով մնանկաց և ամ լաւութե հանդիսիւք որ ընդդէմ մեղացն, եթող զկարգ բարի վերջնոցս իբրև ժառանգութի խոստովանողաց և ապաշխարողաց և ջատագով մեղուցելոց։ Զի գթութիւն այ կոչէ զվերջինքս ըստ առաքինեացն կարգաց. զի բարձցի 'ի միջոյ պարտիքն մնասուց, և տրատեալ 'ի մեղաց սոյգ ապաշխարութե մնցեն 'ի ժառանգութի հեռացեալքն յամ փրկակարգաց, որ անհաւատութե և անսուրբ վարուք ապականեալ էր 'ի հոգանս չարեացն, և բժշկեալ լինելին 'ի որդութի և յառողջութի ամ անդամովքն ։

Այլ սովորութի իսկ է գրոց՝ զառաքինոց լաւացն զբարի յիշատակս՝ որպէս և նուէրս պատարագաց վասն հասարակաց յուսոյն կատարել վերջնոցս, և հաւատով և ուղիղ վարուք կալ 'ի մշակութե հաճոյիցն այ՝ որ յոյսն է կենդանեաց և մեռելոց ։ Եւ բազումք են վերջինքս՝ որ վասն առաքինեացն աղօթս և պաղատանս և նուէրս մատուցին այ և եղև ընդունելի. որ ուղիղ խոստովանութի դարձան առ ած յապաշխարութի ։ Որպէս Առաքեալ ցուցանէ զընդրութի հաւատոց և զարդար վաստակոց. և նոցա յիշատակօք բարեխօսութի զհաւտութե պատարագս մատուցանել վասն նոցա և մեր այ ։ Որպէս և զԱբէլին զարդար և զուղեղ պատարագն յիշէ. որ ամ պատարագաց է գլուխ, միջնորդ և բարեխօս վերջնոցս իւր մտերիմ և սուրբ հաճոյակատար կամօք ։ Եւ որ զկնի նորա առաքինեցան անարատ մտօք,

որպէս Ենովս և Ենովք և Նոյ հաճոյ եղեն այ, և հաւ-տարարք կան առաջի տէրութեն նորա վասն հաւատա-ցելոց 'ի տէր ած ։ Որպէս Աբրահամ և Իսահակ և Իս-րայէլ՝ որ հանդիսիւք լաւութեն առին զխնարութեն ։ Վասն որոյ ոչ ամօթ համարի ած անուանել զնոսա խոր-հրրդակիցս, և յայտնել զծածկեալս որպէս մտերիմ սիրելեաց ։

Նա և 'ի նոցա ծննդոց զօրէնսդիրն և զմարգարէս և զքահանայս և զթագաւորս յարոյց և զայլս բա-զումս ։ Զի և Մովսէս լաւ համարեցաւ չարչարել ընդ ժողովրդեանն այ, քան առ ժամանակ մի վայելել 'ի հեշտութեն ։ Որոյ Եղեալ 'ի խաւարային վարուց եգիպ-տացւոց յանապատ պանդխտանայր . և անդ առնոյր հրաման յայ դառնալ անդրէն և հանել զժողովուրդն յերկիրն աւետեաց նշանօք և արուեստիւք, և նովաւ կատարել զուխտն որ առ հարսն էր յուսացելոց ։ Զի «Ես եմ, ասէ, ած Աբրահամու և ած Սահակայ և ած Յակովբայ »։ Եւ չասէ ած մեռելոց մեղաւորաց, այլ կենդանեաց արդարոց . զի արդարք՝ այ կենդանի են, զի սիրօղն այ և յուսօղն միշտ առաջի այ են ։ Եւ մեք հաստատեալ 'ի հաւատս և 'ի սուրբ սէրն այ, որպէս զի Ճշմարտեալ սիրօղն առցուք զյոյսն՝ որ առ ամենազօր տէրութեն . և ամենայն արդարոց յիշա-տակօք միշտ նորոգել 'ի մեզ այ սիրոյն՝ որ 'ի նոսա մա-տակարարէր ։ Եւ ըստ այսմ օրինակի ամ յոյս սըր-բոցն կենդանի է առաջի այ և անշէջ . և առանց մո-ռանալոյ է յիշատակ սուրբ սիրոյն յուսացելոց 'ի տէր ։ Որպէս յանցանքն Ռուբենի առ հայրն հանին զնա յօրհնութենէ հօրն, և անարատ սրբութեն 'ի մէջ ածէ զՅովսէփ յօրհնութե հօրն, և 'ի ժառան-գութե եղբարց իւրոց 'ի յեւս զԵփրեմ և զՄանասէ . և եղև պատճառ կենաց ամենայն ազգին սուրբն և անարատն ։

Հասանէ առ 'ի վերայ Երուսաղէմի վասն անիրաւ ժողովրդեանն յաւուրս Եզեկիայի 'ի Սենեքերիմայ ։ Այլ աղօթք թագաւորին և Եսայեայ դարձոյց զբար-կութիւնն 'ի թշնամիսն այ . և սատակեցան այնքան բիւրք, և կորեաւ յիշատակ նոցա 'ի միջոյ ։ Յայտնաւիկ և զԴաւիթ յիշէ՝ թէ վասն նորա ։ Զի ամ արքայք

յիշխին առ այցելութիւն աշխարհի 'ի սուրբ գիրս յիս-կզբանց անտի մինչև ցգալուստն Քսի, որ զառաքելու-թիւն երկաքանչիւրոցն բացայայտէ. զի ըստ հաւատոց մեռան ամ̃ սուրբքն:

Իսկ յորժամ ծագեաց տէր մեր Յս̃ Քս̃ արեգակն արդարութե̃ և փրկիչ աշխարհի, կատարեաց և ելից զառաջին օրինակն պակասութե̃. զի եբաց զնոր շը-նորհաց զկենացն զդրունս 'ի ձեռն աւազանին լուսա-ւորութե̃ ուղիղ հաւատով յամենասուրբ Երրորդու-թիւն. և մեռանել զմեղացն մահ 'ի ջուրսն սրբութե̃, և ընդ Քսի յարուցեալ 'ի նորոգումն կենաց կալ և մնալ: Եւ թէպէտ մեռանին, կենդանի են հոգւով 'ի լոյս կենացն յաւիտենից: Եւ մերկացեալ են զհին մարդն, որ վրէժխնդրութե̃ օրինացն պարտական էր. զի զՔս̃ զգեցան և զկերպարանս որդէգրութե̃ առին և ժառանգաւորք եղեն Քսի: Մանաւանդ որ զճշմա-րիտ հաւատս և զուղիղ վարս մինչև ցվախճանն պինդ-ունիցին յուսովն Քսի. զի յոյս նոցա ընդ Քսի է յա-րուցեալ, և ընդ Քսի նստի ընդ աջմէ մեծութե̃ 'ի բարձունս և բարեխօսեն Քսիւ առ Հայր վասն սրբոց: Որք 'ի Քս̃ մկրտեցան ճշմարիտ հաւատով և սուրբ սիրով հաղորդութե̃ մարմնոյ և արեան փրկչին. որ դրաւական է յուսոյ փառաց յարութե̃ ըստ բանի տեառն, « Քանիցս անգամ ուտիցէք 'ի մարմնոյ իմմէ և ըմպիցէք յարենէ իմմէ, զյիշատակ մահուան իմոյ պատմեսջիք մինչև 'ի դարձ գալստեան իմոյ յերկիր »:

Զի նա է ազատիչ և արդարացուցիչ, որով լու-ծանին մեղք հին մարդոյն և սկիզբն առնուն նորքս, որ ըստ նմ̃յ հաւատով սուրբ և ճշմարիտ 'ի Քս̃ Յս̃. մեկնեալ յամ̃ չարեաց, և յարդարեալ ամենայն բարի գործովք աւետեաց յուսոյն կենաց: Զի մահուամբն իւրով եղծ Քս̃ զզօրութի̃ սատանայի, որ զիշխանու-թի̃ մահու 'ի ձեռն մեղաց ունէր. և կեանք թագաւո-րեցին արդարութե̃. և յոյս յարութե̃ն հաստատեալ կայ 'ի Քս̃: Զի յարոյց զմեզ, ասէ, ընդ իւր, և նստոյց յերկնաւորսն 'ի Քս̃ Յս̃ յոյս հաւատացելոց և սրբոց: Զի զմարմինս իւրեանց 'ի խաչ հանին, ասէ, ընդ Քսի կարեօք և ցանկութե̃քն հանդերձ. որ և ընդ նմին փառաւորին և յուսովն զուարճանան:

Օ՜ի քո՛ սուրբ սիրոյն խրախուսեալք սրբոցն յուսով՝ ՚ի ձեռն հաշտարար պատարագին՝ որով փըրկեցան արարածք։ Որ զաներևոյթսն երևելեօքս եցոյց կամաւոր խաչելութ՟ն ՚ի հաշտեցուցանել զարարիչն ընդ արարածս։ Եւ լուսաւոր վարդապետութ՟ն ստուգեաց զճշմարիտ հաւատս յամենասուրբ Երրորդութ՟ին։ Եւ բառնայ զվիշտս վտանգից ՚ի մարդկանէ ՚ի պէսպէս ցաւս և ՚ի տանջանս ըմբռնեալս. զքաղցեալս կերակրելով զբազումս յանապատի, ըզմեռեալս յարուցանելով, զդևս հալածելով։ Եւ ազատեալ զմարդիկ ՚ի կշտամբանաց նոցա՝ բառնայ իւրով չարչարանօքն զա՟մ վիշտս ՚ի մարդկանէ, և պէսպէս երախտեօք արժանի առնէ հայրական խնամոց և շնորհաց Հոգւոյն սրբոյ և խոստմամբ բարեաց ա՟յ։

Այլ ՚ի մատուցանել զահաւոր և զսարսափելի ըզփրկական զխորհուրդն, և անդ յիշէ զմարդասիրութ՟ն երախտիս. և խնդրէ ջերմեռանդ արտասուօք զքաւութ՟ի մեռելոց և կենդանեաց, առցէ զխնդրելին։ Մանաւանդ եթէ սուրբ իցէ և անարատ և ազատ ՚ի մեղաց մատուցող պատարագին, և ճշմարտեալ հաւատով ստանայ անձին զփառացն պսակս։ Եւ վասն որոց պատարագն է, քաւութ՟ի յուսով շնորհի ՚ի բարերար տեառնէն։ Զի եթէ որ ունի խէթ ինչ զընկերէն՝ թողուլ տայ զպատարագն մինչև հաշտեսցի, ապա վասն այլ չարեաց և դժնդակ վարուց զի՞նչ պարտ է ասել զարհաւիրս սպառնալեաց պատուհասից, որք ոչ սրբութ՟բ զպատարագն ընծայեն ա՟յ, և որք անարժանութ՟բ հաղորդին։ Այլ որում շատն տուաւ շնորհ, շատ խնդրի. և որում սակաւն՝ սակաւ, ասէ տէրն յաւետարանսն մեր։ Զի կատարեալ առաքինութ՟ի խնդրէ ճշմարտութ՟ին՝ ՚ի սպասաւորաց խորհըրդոյն. զի կեանք է փրկութ՟է մերոյ, և մի՛ լիցի կամակար մտօք ՚ի դատապարտութ՟ի ՚ի տեառնէ. զի ա՟մ ինչ նովաւ է և ՚ի նա կատարի՝ կենդանեաց և մեռելոց։

Այլ և սրբոց առաքելոց և մարգարէից և մարտիրոսաց յիշատակք՝ քո՛ պատարագաւն կատարի, խորհրդածեալ փառաբանութ՟բ զսրբոցն նահատակութիւս վերաձայնելով յորդորումն ա՟ծասիրաց և ՚ի գովեստ ամենասուրբ Երրորդութ՟են՝ որ եւ պայղթու-

թեն շնորհս ա՟մ սրբոց իւրոց։ Զի ուրախութիւն է զօրաց երկնաւորաց յիշատակք սրբոց, որք յաղթեցին բանաւորաց և հրեշտակացն ։

Արդ հոգիք արդարոց 'ի ձեռին ա՟յ են ընդ անմարմնոցն դասուց, սքանչելի իմն 'ի փառս ա՟յ ուրախարար յուսամք։ Եւ 'ի հասարակաց յարութեանն զկենակից մարմինն առնու յերկրէ, որով հաճոյացաւն ա՟յ. և լինին որպէս հրեշտակս յերկինս ըստ բանին տեառն. ասէ. «Ի յարութեան ոչ կանայս առնեն և ոչ արանց լինին. այլ են որպէս հրեշտակս յերկինս», զի յարութեան որդիք են և ոչ ունին մեղանչել կամ մեռանել։ Տեսե՞ր, զի յոյս կենդանեաց բնակութիւն է հրեշտակաց և արդարոց, և 'ի միասին ուրախ լինին։

Այլ և որք մեղանն և ստոյգ խոստովանեալ ապաշխարեցին ջերմեռանդ արտասուօք և ա՟մ բարի գործով, և նոքա ոչ զրկեցին 'ի հանդերձեալ յուսոյն. ա՟մ ճշմարտեալք 'ի հաւատս Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ, լուսաւորեալ մկրտութեամբ և մարմնով և արեամբն Ք՟ի, որդիք լուսոյ և ժառանգք արքայութեան են, քաղաքակիցք սրբոց և ընտանիք ա՟յ։ Զի մի է ա՟ծ և մի հաւատ և մի մկրտութիւն և յոյս կենարար։ Եւ ուրախ լինին յուսով որք կատարեն զյիշատակս սրբոց հաւատով. զի և նոքա զուարճանան նոցա սիրովն, որ յաղագս ա՟յ զայս յուսով կատարեն ա՟մ բարեգործութիւնք 'ի Ք՟ս։ Եւ մնացեալքն 'ի բարեացն առաջնոցն [1] առնու զլրումն վերջնովքս. զի և զմնացուածս մարգարէիցն լցին առաքեալքն, և զնոցայն հաստատեցին վարդապետք զհաւատս և զվարս և ըզվարձս ըստ իւրաքանչիւր վաստակոց։

Տուեալ իսկ են յամենեցունց տեառնէն և պատկերն. զի «Այլ փառք արեգականն է, ասէ Առաքեալ, և այլ փառք լուսնի, այլ փառք աստեղաց, և աստղ քան զաստղ առաւել է փառօք. նոյնպէս և յարութիւն մեռելոց»։ Զի իւրաքանչիւր զիւր փառս զգենու 'ի տեառնէ ըստ արժանաւորութեանն 'ի միոյ ա՟ծութէն փառաց՝ Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ։ Զի մի յոյս է վերին կոչմանն ա՟յ և մի բնութիւն ա՟ծութեան, մի իշխանութիւն,

1 Մերն յառաջնոցն ։

անփոփոխ մշտնջենաւորութի, մի ամենակալ զօրութիւն, անվրէպ գիտութիւն, անզեղջ իմաստութի, անսկիզբն էութի. որ յիւր 'ի ճշմարիտ 'ի կենդանի փառսն և յանմատոյց լուսն բնակեալ է: Եւ սուրբ սիրոյն իւրոյ խնամքն առ արարածս լուցեալ բորբոքի անճառ և անպատում բարութիւքն: Եւ զարարածս ամ զբանաւորս և զմտաւորս յանճառ երանութիւն հրաւիրէ, և կոչէ յիւր արքայութիւն և 'ի փառս անճառս և յանվախճան երանութեցն ուրախութիւն:

Ո՛վ զյիշատակս առնել արդարոցն կատարելոց, նոցա նահատակութեն և սիրոյն որ առ ած մկայք, և բազում շահս անձանց ստանամք որոցն բարեխօսութբ առ տէր: Իսկ զհաւատացելոց մեղուցելոց և խոստովանողաց և ապաշխարողաց և հաղորդեալ փրկական խորհրդոյն, և հրաժարեալք յաշխարհէս, և նոցա կատարեսցին յիշատակք՝ քնի պատարագաւն, և աղօթիւք և գթով տնանկաց և այլ բարի գործովք. զի վերջնովքս բարեգործութբք հանգուցեալքն նորոգեսցին նորոգութբ կենացն անվախճանից:

Այլ եթէ ասիցէ ոք, եթէ զիարդ մեռ 'ի վախճանն զղջացեալ խոստովանի և ողբայ զգործեցեալ զյանցանսն, և խոստանայ ապաշխարել, և խնդրել զմարմինն և զարիւն քնի հաւատովք 'ի քաւութի, զինչ առ յոյս փրկութե իցէ:

## ՊԱՏԱՍԽԱՆԻ

Օ ի եթէ մեռ 'ի վախճան իցեն, և 'ի հրապոյրս սատանայի ըմբռնեալ 'ի դժնդակ վարս, և օտարացեալ 'ի նախախնամական սիրոյն յառաջագոյն, և դառնայ 'ի վախճանի 'ի զղջումն և 'ի խոստովանութիւն ջերմեռանդ արտասուօք, և 'ի բոլոր սրտէ հաւատով հայցէ զփրկական խորհուրդն, յուսով ապաւինեալ 'ի մարդասիրութիւն քնի, մի անյոյս լիցի 'ի վստահացեալ բարութիւն, զղջմամբ և կենդանարար մարմնով և արեամբն քնի փրկչին մերոյ, որ տայ զկենդանութի ստեղծուածոց իւրոց. զի ամենայն որ կարդասցէ զանուն տեառն՝ կեցցէ:

Այլ որ ոչ դարձան յառաջագոյն յապաշխարութիւն և ոչ 'ի վախճանի զղջացան, և յուսահատ և առանց խոստովանութեան և անմերձ 'ի փրկական խորհրդոյն՝ զի՞նչ պարտ է ասել վասն նոցա յիշատակաց. որ բազում ողբոց և արտասուաց արժանի են, և ծանր վիշ-տըս ունին 'ի Քսէ: Բայց յառաջագոյն մեղուցելոցն և ստոյգ խոստովանողացն և ապաշխարողաց միշտ կատարեսցին յիշատակք. և որ 'ի ժամ ելանելոյն զղջանան: Այլ և բազում բարիս ցուցանել մեռացելոցն յաղագս հրաժարելոցն յաշխարհէ. զկապեալըս արձակել, զպարտս թողուլ, զկարօտեալս լցուցանել բարութեամբ: Զի է զոր ինքն արար բարի, և է որ պատուիրեցաւ առնել. և երթայ զհետ բարի գործոյն 'ի հաւատարիմ սիրելեաց հրաժարելոցն յերկրէ:

Ոի որ մերձեցան 'ի սրբութիւնսն ստոյգ զղջացեալքն, իբրև հուր սրբիչ և ազատիչ և լուսաւորիչ է իւրով ընծայիւքն, մաքրին հաւատով վկայութբ ահիւն տն. որ զգուշութբ և արդարութբ լի է: Որ սկիզբն է ամ շահաւոր օգտից երկեղ տն ըստ իմաստնոյն բանին. և ամ անհնարինք հնարաւորք են երկեղածաց տն: Եւ որ հեռի է յերկեղէ տն, 'ի ծուլութի և յարհամարհութի տն պատուիրանին կրթի, և յամ բարեաց խորհրդոց և գործոց հեռանայ, և յանիրաւութի սովորի:

Այլ որ փոյթն է 'ի հնազանդութի հոգևոր օրինացն երկեղիւն տն, միշտ ընծայաբեր լինի տն 'ի ձեռն սուրբ հրեշտակաց ըստ բանին տն որ ասէ. «Զգոյշ լերուք, մի արհամարհէք զմի ոք 'ի փոքրկանցս յայսցանէ. զի հրեշտակք նոցա հանապազ տեսանեն զերեսս Հօր իմոյ որ յերկինս է»: Զի զհաւատոյն գործովքն զօրացուցանէ, և զաղօթսն սիրով զղջմամբ և անձկալի և անմեղկելի խնդրուածովք. անշարժ ունել առ տր զկամսն 'ի նեղութե և յանդորրու. և առնուլ զյաղթութեան շնորհս առ մարտս մտաց և անդամոց 'ի բարերար խնամոցն տն: Եւ սուրբ սրտիւ և անկեղծաւոր հաւատով առաքինանան և ուրախ առնեն զհրեշտակս կենդանի սիրով և զուարճանան միշտ 'ի նոցա բարի գործսն: Զոր ոչ է իմանալ կամ

տեսանել որ յա̃յ է նոքօք մեզ զպահպանութի̃, որ պատրաստեցաւ յա̃յ խնամոցն սիրողաց իւրոց ։

Օի ո̃մ խորհուրդք կամ գործք մտերմութեան երկնաւորաց և երկրաւորաց և սանդարամետականաց առաջի ա̃յ ամենակալ տ̃րութեն հանապազօր վերանայ 'ի կշիռս ։ Եւ 'ի կողմն Ճշմարիտ հաւատացելոց և սիրողաց ա̃յ մահն Քսի յառաջանայ ամենաշահ չարչարանօքն՝ վկայութեամբ սուրբ սիրոյն իւրոյ՝ սրբոց իւրոց ։ Եւ առնա ժողովն Ճշմարտութի̃ արդարոց, քաջութիւնք նահատակաց և արդարութիւնք սրբոց, ժուժկալութիւնք կուսանաց, համբերութիւնք մարտիրոսաց ։ Այլ և ստոյգ խոստովանողաց վարք շարժեն զգութ և զողորմութի̃ խնամոց սուրբ սիրոյն ։ Եւ գործք անօրինաց և անհնազանդից ամբարըշտաց և մեղաւորաց և ամենայն չար ցանկութեց հանդերձ չար խորհրդակցօքն դիւօք կշտամբեալ յանդիմանին, և զարժան զհատուցումն պատուհասիցն ընդունին յարդար դատաւորէն և 'ի տեառնէն, որ գիտէ զվերինս և զներքինս ։

Իսկ որ 'ի սուրբ սէրն Քսի հաստատեալ են, որ զանձն իւր ետ 'ի մահ վասն նոցա, զի ազատեսցէն 'ի դառն վշտաց յերևելեաց և յաներևութից, ապրեալք լինին, գործակից և բարեխօս ունելով ըդսուրբս և զամենայն արդարս ։ Եւ բացցին դրունք կենաց բարերարութեն շնորհօք Հոգւոյն սրբոյ վերին կայանից, ուր ժողովք սրբոցն են հանգուցեալ ։ Զի զամենեցուն կամի զկեալ և 'ի գիտութի̃ Ճշմարիտ կենացն լինել ժառանգաւոր․ զի ոչ կամի զմահ մեղաւորին, այլ զդառնալն 'ի Քս։

Ոյքան շահք օգտից են զյիշատակս հանգուցելոցն առնել ուղիղ մտօք, արդար և Ճշմարիտ և ո̃բ հաւատով, ահիւ և սուրբ սիրով, ողջամիտ յուսով 'ի գովեստ ա̃յ ։ Զի լինիցի ընդունելի մեր պատարագն 'ի ներքոյ վարագուրին կենդանարար 'ի կեանս վերաբերելով, և վայելել յերանելի բարութիւնս 'ի խնամս կենարար սիրոյն աւետեացն խոստացելոցն ։ «Զի ուր եսն եմ, ասէ տ̃րն, անդ և պաշտօնեայն իմ եղիցի» ։ Զոր և բարերար երկնաւոր Հայրն ուրախ առնէ զկոչեցեալսն յուրախութի̃, մարդասէրն միա-

ծին Որդւոյն իւրոյ և կենդանարար սուրբ Հոգւոյն 'ի բորբոքումն կենդանի սուրբ սիրոյն, յանհրաժեշտ և յանվախճան և յանհամեմատ յա̅ծեղէն բարու-թեանն զիւրեան վայելեցուցանելով։ Նմա գոհութիւն և պատիւ և փառք յայժմուս և յաւիտեանս յաւիտենից. ամէն։

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՅԱՂԱԳՍ ՄԱՐԴԿՈՒԹԵԱՆ ՈՐ ՅԱՍՏՈՒԾՈՅ ԽՆԱՄՔ ՏԵՍՉՈՒԹԵԱՆ

### ԺԴ

Մեծ է խորհուրդ ա՟ծպաշտութե՟ն ճշմարիտ հաւատով որ 'ի Հայր և յՈրդի և 'ի սուրբ Հոգին. և առաքինի գործովք արդար և սուրբ երևել առաւել քան զարեգակն լուսաւորել զաչս մտաց հաւատացելոց, և հալածել զխաւար մեղաց, և առաջնորդել յարդարութի՟ և 'ի սրբութի՟ ։ Ի բաց կալ 'ի դժնդակ վարուց և 'ի չար մտաց, և գնալ 'ի ճանապարհս արդարոց՝ որ տանի 'ի կեանսն յաւիտենից ։ Բարի կամօք զհետ երթալ բարերար կամաց արարչին՝ որ 'ի չգոյէ 'ի գոյ եած, և յանարգութենէ 'ի պատիւ, երկու մասամբք՝ տկար և զօրաւոր, զմարմին և զհոգին ։ Զի տկարն ճգնեսցի վաստակովք, և 'ի զօրութիւն արարչին ապաւինեսցի, զի մի՛ վրիպեսցի 'ի բարերար օգնականութեանցն՝ որ առաքինացուցանէ արդար և սուրբ վաստակովք ։ Եւ զանուն քաջութեան առնու, և գովութեամբ պարծանօք պսակի, և 'ի խնամս բազմադարմանս վայելէ յուսով երանելի կենացն ։ Իսկ զօրաւոր մասն հոգւոյն ճշմարիտ հաւատով և անսխալ և ստոյգ գիտութեամբ սուրբ Երրորդութե՟ն՝ որոշէ զսուտ պատիր մոլորութի՟, և ազատանայ 'ի ծառայութենէ մեղաց՝ վասն որոյ մահն 'ի ներքս եմուտ. և զերծեալ 'ի մեղաց՝ ժառանգաւոր կենացն եղիցի 'ի ք՟ն տկար մարմնով, և երևեսցի մտերմութի՟ն 'ի ճգնութի՟ համբերութե՟ յուսոյն ։ Եւ զօրաւոր մասամբքն երևեսցի շնորհն տ՟ն ըստ Առաքելոյ բանին, որ խնդրեաց 'ի տ՟նէ հրաժեշտ տկարութե՟ն. որ ճգնէր ՝ աշխատէր և վշտանայր ազգի ազգի վշտօք և նեղութ՟ք ։ Եւ լսէ 'ի տ՟նէ. «Շատ են

քեզ, ասէ, շնորհք իմ. զի զօրութն իմ ՚ի տկարութն կատարի»: Վասն որոյ յօժարութբ ընդունի զամենայն վիշտս չարչարանացն. զի տկարութն զօրութբ կատարի: Զի և մշակք բազմադիմի աշխատութեամբ վաստակով յարգին. և տէրն բազմաշահ պարգևօքն փառաւորէ:

Վասն այսորիկ ՚ի չորիցնիւթոց արար զարարածս, և յօրինեաց կարգաւ զերևելիսս և զաներևոյթս, և անտի զմարմինս կազմեաց ՚ի ցամաքէ, ՚ի խոնաւոյ, ՚ի ջերմոյ և ՚ի ցրտոյ: Եւ յայս չորից նիւթոց արարած ՚ի ծնունդս և ՚ի դարմանս, զի երևեսցի խնամքն արարչութեն. երկինք ցօղովն յամպոց զիջմանէ, և ջերմութբ լուսաւորօք և խառնուածովք օդոյ՝ որ սընուցանեն զտունկս և զբոյսս և զամենայն շունչ կենդանի, և թռչունք երկնից: Երկիր ջրով և լողակօք և որ այլ զեռունք ամենայն ՚ի խնամոց այ դարմանին: Զի նախ զհոգին եդ զբանական ՚ի մարմին և խառնեաց, և ապա զպէտս դարմանոյն պատրաստեաց. զի ցուցցէ զսիրոյն իւրոյ զառատութն որ յառատ բարերարութենէ անտի: Բանաւոր և մտաւոր ոգւոյն զօրաւոր դարմանս եցոյց ՚ի շնորհաց Հոգւոյն սրբոյ՝ զխրատս ուսմանց ՚ի վարդապետութէ հոգևոր օրինացն:

Յայսոսիկ հոգևոր դարմանս վայելել, և ընտանենալ ամենազօր տրութեն և խնամոց արարչին, որ յերկնէ և յերկրէ և ՚ի ջրոյ և յօդոյ զկեանս ամենեցուն յօրինեաց: Եւ այսոքիւք ուսուցանէ և ընդելացուցէ մեծի յուսոյ աւետեացն խոստացելոց որդեգրութեն անմահ ժառանգութեն. որ եւս առաւել զառհաւատչեայ ազատութին շնորհօք աւազանին և մարմնով և արեամբն քի: Զի տկար մարմնով ծըննաւորեալ ազգի ազգի առաքինութբք, զհամբերութն զհանդէս ցուցցեն ըստ հաճոյիցն այ, ահիւ և սուրբ սիրով առնել զկամս տն: Զի եթէ տր է, ասէ, ուր է երկիւղ նորա. և եթէ հայր, եղիցին կամք նորա որպէս յերկինս և յերկրի: Եւ այս ուղղի ՚ի ձեռն օրինաց եդելոց և պատուիրանաց կարգելոց, և մարտընտիր լինել ՚ի լաւագոյն կարգս առաքինութն և զօրութն. և յաղթող երևեալ՝ պսակեսցի յարարչէն քէ:

Եւ յուս խրատամբք յայտնի արար զիւրոյ բարերարութեանն զամենառատ զշնորհս։ Զի մտերիմ ծառայից գործակից է բարի վարուց. և ըստ խնամոց սիրոյն իւրոյ զնեղութի հանդիսից անցաւոր արար, և զհանգիստն անվախճան։ Այլ և ինքն իսկ տ̃րն փառաց որ ամենայն զօրութեանց և զօրաց արարիչ է և պարգևիչ, յորժամ կամեցաւ ցուցանել զաներևոյթ սէր իւր առ ազգս մարդկան, որ չարչարելին էր և վշտաւորին, որ աշխատելին էր. և նովին հոգւով միաւորեալ առ ա̃ծ Բանն՝ մտաւորն և բանաւորն, խառնեալ ՚ի մարմին ըստ աւետարանական բանին. զի «Բանն, ասէ, մարմին եղև և բնակեաց ՚ի մեզ. և տեսաք մեք զփառս նորա զփառս իբրև զՄիածնի Որդւոյ առ ՚ի Հօրէ լի շնորհօք և ճշմարտութ̃բ»։

Ո՛ր ՚ի ձեռն ճշմարիտ շնորհաց իւրոց և կամաւոր խոնարհութ̃են՝ որ կրեաց զամենայն կիրս մարմնոյ և հոգւոյ բաց ՚ի մեղաց, զի ցուցցէ զփրկութ̃ե ճանապարհն արդարոց, և զխնամս մեծի սիրոյն իւրոյ զդարմանս տեսչութ̃են, որպէս շնորհօք դարմանէ զորդիս մարդկան յերևելիս և յաներևոյթս. ըզհիւանդս բժշկէր, զմեղս քաւէր, զդևս հալածէր, զմեռեալս յարուցանէր։ Եւ եբաց զդրունս կենաց, և ազատեաց զհոգիս չարչարանօք մահուամբ իւրով։ Եւ կատարեաց զարդարութիւն ամենայն ՚ի փառս և ՚ի պարծանս մարդկութ̃ես մերում, և եղև վարդապետ ամենայն արարածոց. զի նորա առաքինութեանն հետևողք եղեալ, և նորին փառացն հաղորդակիցք եղիցուք. որ կայ պահի յուսացելոց ՚ի Ք̃ս։

Եւ վասն այսորիկ տկար է մարմինս, զի յերկրէ ունի զսնունդ՝ ՚ի բուսոյ և ՚ի տնկոյ և ՚ի շնչաւորաց. որպէս և ամենայն անբան կենդանիք։ Զի Նոյի հրամայեցաւ ուտել զմիս շնչոյ կենդանւոյ և ըմպել զգինի յաղագս տրտմութ̃են ՚ի մխիթարութ̃ի. զոր ունէր վասն համատարած աշխարհի սատակմանն սուգ։ Զի որ ՚ի դրախտին կեանք էր և սնունդ, յայնմանէ վրիպեցաք յաղագս յանցանացն և ընդ բազում տըկարութ̃բ անկեալք։ Եւ վասն այսորիկ ՚ի պատճառէ իմեքէ ձգէ ՚ի մահ ցուրտ և տօթ և հիւանդութիք մարմնոյ։ Այլ և ՚ի կերակրոյ և յըմպելւոյ ա-

ռաւելութէ լինի լլկանք և մահ. նմանապէս և 'ի պակասութէ, 'ի սովոյ և 'ի ծարաւոյ: Այլ և թռունաւոր ճճիք և դաժանութիւնք արմատոց և բուսոց կարեն լլկել և սպանանել և անզգայացուցանել և այլամտել:

Եւ վասն այսորիկ տկար է մարմինս, զի մի՛ յորժամ լսիցեմք այ պատկեր, ամբարտաւանեալ ամբառնայցեմք և անկանիցիմք 'ի վայր ամբառնալութեն 'ի վիհս կորստեան որպէս զնոյն ինքն զածամարտն՝ որ 'ի վեր քան զամպս ասէր դնել զաթոռ իւր և լինել նման բարձրելոյն. իսկ այժմ 'ի դժոխս էջ համդերձ ամենայն ապստամբ զօրութեքն, որպէս ասաց մարգարէն յերեսաց տն: Եւ քն զխոնարհութե մարմնոյ զայս առնլով խոնարհութբ զնա կործանեաց, և զխոնարհս բարձրացոյց, և խայտառակեաց զնորա ամբարհաւաճութիւն: Զի այսքան միայն է նորա չարութեն թոյնք. որպէս ճճեաց թոյնք և որպէս բուսոց և արմատոց դաժանութե մասք: Ասեն բժիշկք՝ թէ գոն արմատք, որ հալածեն զդեւս 'ի մարդկանէ. և իմանալի է այսպէս. զի այ ներգործութիւնն 'ի տըկար նիւթոյ ցուցանէ զնորա տկարութիւնն և զկարծեալ զօրութիւն հակառակամարտին, զի անզօր է առ սուրբս. որ և կոխել զնա հրաման ունին 'ի տնէ. որպէս ամենայն հաւատացելոց է քաջայայտ: Եւ դարձցին յետս և ամաչեսցեն նորա կամարարք, և որք յուսան 'ի նորա յոյսն:

Իսկ որ ամենակալ զօրութե ամենասուրբ Երրորդութեն են օրհներգուք, երկրպագուք և փառաւորիչք, այսու տկար մարմնովս զհանդէս առաքինութեն սրբապէս կատարեսցեն, և անցանեն ըստ կարգս աշխարհիս ամենայն ճշմարտութեամբ[1]. և անցանեն ժամք և աւուրք և ամք, և յառաջադէմն նկրտի. և առաքինութե ծնունդք զհետ երթան սուրբ և արդար վարուց. աշակերտեալք սրբութեան և ճշմարտեալ ամենայն առաքինութբ՝ փոխին յայսմ աշխարհէս 'ի կենդանեաց աշխարհն՝ որ ոչ լսի համբաւ մահու՝ յանուշակն 'ի մշտնջենաւոր ուրախութեն:

1 Միւսն ճգնութեամբ:

Որ վերստին նորոգին ա̄ծային զօրութե̄ն յանսպառ
և յանվախճան ուրախութիւն ։ Որ լուցանին որպէս
զարեգակունս յանմատոյց լուսոյն, և կենդանի սուրբ
սիրովն վառին և բորբոքին հրով ամենասուրբ Երրոր-
դութե̄ն յանվախճան երանութիւնսն, և վայելեն
յանսպառ և յանպատում բարութիւն 'ի Ք̄ս Յ̄ս 'ի
Տ̄ր մեր. ընդ որում Հօր ամենակալի և Հոգւոյն սըր-
բոյ պարգևողի փառք իշխանութի̄ և պատիւ այժմ
և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՎԱՍՆ ՀՈԳԻՈՑ ՄԱՐԴԿՈՒԹԵԱՆ ԲԱՑԱՅԱՅՏՈՒԹԻՒՆ

### ԺԵ

ՄԱՍՏՈՒԱԾ ըստ մեծի մարդասիրութեան իւրոյ բազմադէմ տեսչութեամբ իւրով խնամէ զարարածս, որպէս վայել է իւրոյ բարերարութեան։ Զանմահ զօրս հրեշտակացն մտաւորս և բանաւորս և պաշտօնեայս իւր արար. զի փառաւորեսցեն զամենազօր տէրութիւն, և արբանակեսցեն կամացն որ առ ազգս մարդկան. զի հոգիք են հարկաւորք, որք առաքին ՚ի սպասաւորութիւն բանին ա՟յ։ Զի ամենայն արարածք նովաւ են կազմեալ և բովանդակեալ. և պաշտօնեայք և սպասաւորք են մեծի փառաց ա՟ծութեան, որ նոքօք հրաւիրէ և կոչէ զմարդիկ յիւր արքայութիւն և ՚ի փառսն։

Իսկ ծնունդ մարդկան ՚ի սաղմնաւորութենէ[1] անտի նորոգի, և զլինելութիւն առնու և աճէ, և ըստ սահմանի աւուրց յառաջագայի ծննդեամբ, և աճէ սնընդեամբ և զարգացմամբ, և ՚ի խրատ և յուսումն ա՟ծգիտութեան. և ՚ի միտ առնուլ զարդարութիւն ճշմարիտ, և ուղղել զիրաւունս հոգևոր օրինօք։ Եւ ծանիցեն զարարիչն և զսուրբ սիրոյն իւրոյ զերախտիս առ արարածս։ Եւ գիտութեամբ խրատու նորա ստանայ զհնազանդութիւն օրինացն, և ընտրէ զբարին ՚ի վատթարացն. ՚ի բաց կալ ՚ի դժնդակացն, և բուռն հարկանել զարդարութենէ վաստակոցն տերամբ։ Եւ այսպէս կատարեսցէ զառաքինութիւն զհանդէսն ընդրութեան ըստ հոգևոր օրինացն, ըստ բազմախնամ ողորմութեանցն ա՟յ. համբերութեամբ բազմաւ և ճշմարտեալ սիրով, կենդանի յուսով ընթանայ ՚ի կէտ կոչման վերին շնորհացն ամենառատ բարերար ամե-

[1] Այսպէս յերկոսին օրինակսն։

նաւուրք Երրորդութեան . և կատարեսցեն զվարս երկրաւորացս ըստ կանխագիտութեան ածասահմանի յերկրի. ոմն 'ի տղայութեան , ոմն 'ի մանկութեան , ոմն յերիտասարդութեան, ոմն 'ի ծերութեան ։ Սոյնպէս և այս 'ի խնամոց ած մատակարարի , զի մի՛ գիտասցեն զօր վախճանի իւրեանց , և հեղգացեալ վրիպեսցին յարդարութենէ . այլ արթունք և պատրաստք 'ի գործ սրբութեան զամենայն աւուրս կենաց իւրեանց ։

Եւ այն որ 'ի տղայութեան և 'ի մանկութեան առնու զվախճանն, զերծեալ լինի 'ի փորձութեանց հոգւոց աշխարհականաց. և զգուշութիւն լինի այնոցիկ՝ որ վարեն զաշխարհս առ հանդէս արդարութեան և ամ առաքինութեան . և կատարեալ 'ի հաւատս և 'ի սէր և 'ի յոյս աներատ և ամբիծ՝ յանմահ կեանսն փոխին յանապական ժառանգութիւնն արդարոց ։ Զի հոգիքն որ ելանեն 'ի մարմնոյ աստի, երթան 'ի կեանսն ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան . և անդ հրճուին առաքինեացն ոգիքն ըստ խոստացեալ աւետեաց երանութեանցն, որ կայ պահի յուսացելոց սրբոցն անճառք՝ որ 'ի կամս ած վարեցան յաշխարհի ըստ աւետարանին քարոզութեան ։

Երանին 'ի տեառնէ աղքատք հոգւով, որ վասն աւետեաց մեծութեան հոգւով աղքատացան վասն արքայութեան երկնից՝ որ 'ի տէր Յս Քս ։ Երանին և խոնարհք սրտիւք , զի գտանեն հանգիստ յերկրէ յերկինս, որ անբաւ բարձրութիւն է . զոր խոնարհք ընդունին 'ի Քս Յս ։ Երանին և հեզք , որ ժառանգորդք են երկրին կենդանեաց . յորմէ փախուցեալ են ցաւք և տրտմութիւնք և հեծութիւնք անճառ յուսով 'ի Քս Յս ։ Երանին և սգաւորք , որ յաղագս սիրոյն ած , որ 'ի խոնարհութենէ սրտին հեզու զարտասուաց աղբիւրս զշնորհալիցն իմաստութեան, որ մխիթարութիւն ունին 'ի Քս Յս ։ Երանին և սուրբք սրտիւք , որք ազատեալ և սրբեալ են յաղտեղի ցանկութեանց . զի նոքա զած տեսցեն ։ Երանին և խաղաղարարք, զի նոքա նմանողք են Որդւոյն ած՝ որ արար խաղաղութիւն յերկինս և յերկրի, հեռաւորաց և մերձաւորաց . նմանապէս և նոքա եղեն ։

Նա և ամ երանութիւնք զուարճանան և զուար-

թանան հոգիք արդարոցն 'ի հանգստեանն 'ի Քս· մինչև 'ի հասարակաց յարութիւն, յորժամ դայցէ տէրն մեր փառօք Հօր, և մտեալք 'ի Քն՝ յարիցեն առանց ապականութեան. և առաքինեաց անձանց արդարութիւք առաջի ընթանան ամենասուրբ Երրորդութեան։ Զի հաւատք հասուցանեն 'ի ծանօթութիւն փառացն այ. զի՞ ևս պիտոյ է ասել վասն այնորիկ զոր ետեսն, և վասն յուսոյն որ մուծանէ 'ի ժառանգութիւն բարեացն՝ որում ցանկացեալն է, և խնքն տեղի տայ։ Զի յայնժամ հեռէ զի՞ ևս յուսայ կամ ակն ունի զոր ժառանգեաց։ Սոյնպէս համբերութիւն և ժուժկալութիւն, երկայնմտութիւն և հեզութիւն, հնազանդութիւն և ուղղութիւն, սրբութիւն և ճշմարտութիւն, հանդերձ ամ երանութիւնք փառաւորեալ և պսակեալ, և մուծանեն զժառանգաւորն 'ի ժառանգութիւն արքայութեան։ Զի ուր կատարումն է, զի՞ ևս պիտոյ է առաքինութիւն հանդիսից. զի եմուտ 'ի վայելումն անսպառ բարութեանցն, և ուրախանայ սուրբ սիրովն յանվախճան երանութիւնն ամենասուրբ Երրորդութեան, որ անճառ է և անբաւ և անպատում։

Սոյնպէս մարդք չարք և անսուրբք և ապստամբք 'ի ճշմարտութենէ անտի, և զհետ երթեալ զանիրաւութեան և 'ի նոյնս վախճանին, ըստ նմա յառաջանայ գործք իւր ամբարշտութեան դառն յիշատակօք յաղագս ամենաչար ցանկութեանցն, ահաւոր սպառնալեօք 'ի վերայ անօրինաց և անհնազանդից, անսրբոց և պղծոց և որ այլ ևս յանցանք իցեն։ Վայ 'ի վերայ վայի հաստատեալ կայ նոցա յածեղէն գրոց սրբոց, և յանաչառ դատաւորէն պատիժք։ Զի յիմարեցան սիրտք իւրեանց յիմանալոյ, և ոչ լուան ձայնի տեառն և պատուիրանաց նորա ոչ անսացին։ Եւ վասն այնորիկ պատրաստեալ կայ բարկութիւն այ 'ի վերայ ամբարշտաց և մեղաւորաց, որք զճշմարտութիւն այ անարգեցին յանձինս իւրեանց, որոց յառաջագոյն սպառնացաւ։

Եւ այս ամ սպառնալիք յանցաւորաց յոյժ 'ի տրտմութեան ունին զոգիս մեղաւորացն, 'ի կայանս որ ըստ իւրաքանչիւր մեղացն բաժանեալ և որոշեալ 'ի տխրական տեղիք։ Եւ որպէս երևմամբք տեառնեան իմանալեօքն զհատուցումն արդար դատաստանօք՝

զանշէջ հուրն և զխաւարն արտաքին և զլալ աչաց և զկրճել ատամանցն, այնոքիւք ահիւ տխրեալ և տըրտմեալ կան ոգիք մեղաւորացն մինչև 'ի հասարակաց յարութիւն որ Քնիւն է ։

Այլ եթէ ասիցէ ոք՝ թէ այդ յառաջ քան զհանդէս ատենին և հատուցմանցն է. և դարձեալ ո՞ւր է ասացեալն յԱռաքելոյ՝ թէ առանց մեր չառնուն ըզկատարումն առաջինքն ։ Եւ դարձեալ ասէ մարգարէն. «Մի յուսայք յիշխանս յորդիս մարդկան. զի ելցէ հոգի 'ի նոցանէ, և դարձցին անդրէն 'ի հող, և յայնմ աւուր կորիցեն ամ խորհուրդք նոցա »։

Այլ եթէ ոչ ուրախ առնին հոգիք արդարոց առանց մարմնոց, ընդէ՞ր վաղագոյն կանխէր տէր զաւետիսն. ապաքէն զի զոգիս սրբոցն ուրախ արասցէ ։ Կանխեաց և զսպառնալիս ամբարշտաց և մեղաւորաց. ապաքէն զի զարհուրեցուցանէ զնոսա, և տխրեալ տրտմեսցին ։ Ըստ այնմ օրինակի է իմանալ, որպէս թագաւոր քաջամարտկաց և յաղթողաց պարգևս խոստանայ. և նոքա հաստատեալ գիտեն եթէ 'ի դէպ ժամանակի առնուն զխոստացեալ պարգևսն, ուրախութբ ուրախ լինին մինչև առցեն զփառս և զպսակս երանութեանցն ։ Սոյնպէս և մեղաւորացն հոգիք, որոց սպառնացաւ մահ յաղագս յանցանաց որպէս թագաւորացն մահապարտքն, կան և մնան իւրեանց տանջանացն և մահու բազում տրտմութբ և դողութբ մինչև 'ի ժամանակն յորժամ առնուն ըստ արժանեացն զհատուցումն անմահ տանջանացն զպատիժս և զպատուհաս, որ մարմնով և հոգւով ընդունին ։ Այլ զոր Առաքեալ ասէ, և մեք զնոյն ասեմք. զի իւրաքանչիւր ոք զիւր վարձս առցէ 'ի հասարակաց յարութեն զոր ինչ գործեցին՝ եթէ բարի և եթէ չար ։ Եւ մի՛ յուսալ յիշխանս, ասէ մարգարէն. զի լուծանելոցեն յերկրէս ամբարտաւանեալք իշխանութեն և շրջանի հպարտ կամքն ։ Այլ յուսալ յած, ասէ, որ անմահն է և իշխան մահու և կենաց յաւիտեան ։

Այն ոմանք որ ասեն՝ եթէ որպէս մանուկն յորովայնի անզգայ և կենդանի՝ լռեալ և դադարեալ կայ

1 Հին օրինակք խնդրեն 'ի պարզել զմթութին ճառիս ։

'ի խօսելոյ և 'ի լսելոյ, 'ի գնալոյ և 'ի գործելոյ, այսպէս համարին զոգիս մարդկան լինել և ցածուցեալ։

Զայս գիտասցեն, զի 'ի սաղմնաւորութենէ անտի յառաջագայի և լինի մանուկ յօրինուածովք ըստ կերպարանին մարդ, և աճումն առնու տղայն 'ի ծնունդ և 'ի սնունդ տղայութեան՝ աճմանն մարմնոյ և մտաց յորովայնին։ Եւ յետ ծննդեան նախախնամութեն այ որպէս ինքն գիտէ կապայն հոգւոյ և մարմնոյ 'ի միասին՝ և գայ 'ի կատարելութի մարմնոյ և մտաց, և դարձեալ պակասիլ և զմահ ստանալ ըստ սահմանի այ։

Եւ այս վասն այսորիկ, զի ըստ իւրաքանչիւր հասակաց աճմանն և զառաքինութե զհանդէս ընդ նմին յարդարեսցին 'ի կատարումն Քի գլխոյն մեր հասարակաց։ Եւ հաւատով և սիրով և երկեղիւ գնալ ընդ ճանապարհս արդարոցն, որպէս առաջնորդն մեր և կատարիչ առաքինութեն Յս Քս. և բազմադիմի շնորհօք իւրովք խնամէ զարարածս յերկրի։ Եւ որ անդէն կայանք ննջեցելոցն հոգիք 'ի զգայութե և յանճառ փառաբանութե հրեշտակային օրհներգութեք։ Զի ածային գիրք՝ կենդանի և անմահ ասեն զհոգիս մարդկան։ Որով իմանալի է ոչ անզգայս, այլ ունելին և փառս տան արարչին։ Ապա եթէ ըստ մարմնոյ օրինակի իմասցիս, որպէս յորովայնի, և յետ այնորիկ գայ 'ի գիտելութի մտաց և մարմնոյ և փոփոխի։

Այլ հոգի անմահ բանաւոր և մտաւոր՝ յորժամ ելանէ 'ի մարմնոյս, յառաւել գիտութե իմաստից է իմանալ և ճանաչել զտէրն փառաց։ Որով յառաջագոյն մարմինն որպէս ամպ ինչ ծածկեալ ունէր զիմանալի տեսութիւն, թէպէտ և յուսով նահատակէր 'ի գործս բարիս 'ի ձեռն հոգևոր օրինացն. որով զխտրութիւնն առնէր բարւոյ և չարին, անարգելովն զչարն և ընտրելովն զբարին խրատու և իմաստութե տեառն երախտաւոր սիրով։ Զի ոչ է պարտ զհոգիս մարդկան մահկանացու ասել կամ անզգայս. այլ որպէս Եզեկիէլի մարգարէի 'ի միում վայրի յարութի մեռելոց նախ ոսկերաց և ջղաց և մարմնոյ միաւորեալ ամ յօրինուածովք, և ապա կոչել զհոգիսն յիւրաքանչիւր կայենից Հոգւով սրբով որպէս հողմով։ Զի «Առաքես զոգի քո և ստանաս զնոսա և նորո-

գէսդ. և որ յաւետարանսն պատմին մեռելոց յարութիւնք 'ի տեառնէ. զի հոգւոյն դարձ 'ի մարմինն վկայութիւնք այս են ։ Բերան խօսի, աչք տեսանեն, ականջք լսեն, ունչք հոտոտին, ձեռք շօշափեն, ոտք գնան, սիրտ շարժի իմանալեօք, և փառաւոր առնեն զա՟ծ կենդանարար Հոգւոյն՝ որ զա՟մ զգայութիւս շարժէ տերամբ ։ Եւ յորժամ հոգին արձակի 'ի մարմնոյն, մեռեալ կոչեցաւ. և քակտին ա՟մ յօդեալ յօրինուածք անդամոցն իւր ։ Նոյնպէս վկայութիւնք են իւրոյ հոգւոյն շարժելն, իմանալն, ճանաչելն, յիշելն. զի մարմնոյս այս տուիչ և վարդապետ և կենդանարար հոգիքն են ըստ ա՟յ կամացն ։ Ապա եթէ 'ի զգայութիւնս է պատճառ կենդանութե՟, ապա ո՛ւր է կենդանութի՟ հոգւոյն՝ որ զկեանսն ունի Աստուծով ։

Եւ այսպէս իմանալի է. զի ամենայն շարժմունք՝ հոգւոյն են, և ոգիքն տան մարմնոյն զկեանս ըստ նախախնամութե՟նն ա՟յ ։ Եւ որպէս մարմինքն վկայութի՟ ունին զգործ բնութեան բարուցն, այսպէս ոգիքն զիւրեանց բնութե՟ բարուցն ունին զվկայութի՟ ։ Եւ ոգի անուանի կենդանի 'ի մարմինս ազդելիս և չարչարելիս և մահկանացուս, յորմէ որոշի ըստ վերին կոչման արարչին 'ի պատրաստեալ օթևանս անմարմնոցն ։ Զի մարմին յերկիր դառնայ և հանգչի անհոգ. և հոգին սուրբ և բարի աւետեօք յուսոյն զուարճանայ ընդ հրեշտակս 'ի փառս ամենակալին իբրև արդէն առեալ զառհաւատչեայ երանութիւս երկնից արքայութեանն ։ Զի և հոգին, ասէ, վկայէ հոգւոյս մերում եթէ եմք որդիք ա՟յ և ժառանգակիցք Քի՟. զերծեալք 'ի ծառայութէ՟ մեղացն յազատութի՟ փառաց Որդւոյն ա՟յ ։

Որ ա՟մ հաւատացելոց ծանուցեալ եղև երախտիք սիրոյն առ արարածս իւր լուսաւոր աւազանաւն և փրկական խորհրդովն մարմնով և արեամբն իւրով, որ պատարագեցաւն 'ի վերայ խաչին և եբարձ զմեղս աշխարհի՝ որք հաւատով մերձեցան առ փրկիչն մեր. Եւ յորժամ դարձեալ գայցէ փառօք 'ի նորոգել զորդիս մարդկան, և յարուցանէ զմեռեալս, նորափետուր զարդարէ լուսով զարդարս կենդանիս և զյաւիտենից ննջեցեալս սուրբս 'ի տէր, և մուծանէ 'ի

ժառանգութիւն իւր յանմահական կենացն ուրախութիւն՝ որ կայ պահի հաւատացելոց սրբոց և յուսացելոց 'ի տէր։ Եւ ինքն եղիցի, ասէ Առաքեալ, ամենայն յամենայնի իւրով կենդանի սուրբ սիրովն և կենդանարար խնամովքն։ Զորս վայելեցուցանէ 'ի փառս աստուածութեան զճշմարտեալս ուղիղ հաւատով, և սուրբ և անարատ վարս վճարեալ զերկրաւոր կեանս, և զանանց կեանսն շահել 'ի քո զմշտնջենաւորն զերևելին յանուշակ փառս միածնին։ Որ ամենայն երանութեամբք պսակէ և փառաւորէ 'ի կամս Հօր և Հոգւոյն սրբոյ յաւիտեանս յաւիտենից. ամէն*։

* Ի ճառս յայս յորում վեր 'ի վայր յիշատակէ երանելիս զայլ և այլ կայանս հոգւոց, տեղիքն այնոքիկ կամ օթևանք հանգուցմանց ըստ իւրաքանչիւր արժանաւորութեանցն արդարոց և մեղաւորաց և որք զպարտիս յանցանացն չվճարեցին աստ անթերի. և ոչ ըստ կայանագրաց մոլորութեան խառնուրդ յամենայն հասանէ և 'ի պայմանաց մարդկան ցկատարած յաւիտենիս սպասելոց, հակառակ ամենայն նորա աստուածոցն 'ի ճառն ԺԳ ծայր 'ի ծայր և այլուր ևս։ Այս է առհա հարազատ տեսութիւն բանիցն այնոցիկ ըստ անմոլար վարդապետութեան ընդհանուր եկեղեցւոյ, որում միայն անկ է ուղիղ համառօտել մանկանց եկեղեցւոյ որպէս զաստուածեղէն պատգամսն՝ նոյնպէս և 'ի բանից ինչ հարց սրբոց՝ որ ճշգրիտ հուրեք ասացեալ չերևիցին։

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՎԱՍՆ ՄԱՐՏԻՐՈՍԱՑՆ ՎԱՐԴԱՊԵՏՈՒԹԻՒՆ ՈՒՍՄԱՆՑ

### ԺԶ.

ՍԿՍԱՆԻՄՔ այսուհետեւ եւ վասն մարտիրոսաց ճառել բանիւ. զի պատուեսցուք զյիշատակս նոցա, եւ երանեսցուք նոցա վասն ճշմարիտ վկայութեանն եւ սիրոյ, եւ բազում վարձս առնումք նոցա բարեխօսութեամբն վասն մեր: Այլ զպաշտօնն այ՟ մատուսցուք սաղմոսիւք եւ օրհնութեամբ եւ երգովք հոգեւորօք. սուրբ սրտիւ գովելով զանսկիզբն էութիւն եւ զամենազօր տէրութիւն, զի արժանիս արասցէ զմեզ մասին ժառանգութեան սրբոց աւետեացն 'ի լոյս 'ի փառս տէրութեանն: Եւ ա՟մ ժողովուրդք որ ժողովեալք 'ի յիշատակս սրբոցն, 'ի միտ առցեն հաւատով եւ սուրբ սիրով զհանդէս նահատակութեան նոցա: Եւ նոցա բարեխօսութեամբ աղաչել զա՟ծ ջերմեռանդն արտասուօք, հսկելով զտիւ եւ զգիշեր 'ի պաղատանս սուրբ սրտիւ. զի զերծուսցէ յաշխարհէ աստի չարէ առաքինասէր վարուք: Որպէս զսուրբսն զայնոսիկ՝ որոց յիշատակն կատարեն 'ի փառս այ՟, եւ զհանդէս մտերմութեան իւրեանց ցուցանել առ ամենեցունց տէրն եւ արարիչն ա՟ծ՝ որ ետ նոցա զայնպիսի յաղթութիւն առ բռնաւորսն եւ հակառակորդսն ճշմարտութեանն: Զի եւ մեզ տացի շնորհս յաղթել ա՟մ կարեաց որ յառնեն 'ի վերայ մեր ճակատամարտք երեւելիք եւ աներեւոյթք. եւ զպաշտօնն փառաբանութեամբ այ՟ ընծայել երկրպագութեամբ:

Զի այս իսկ են սրբոցն կամք, զի եւ ժողովուրդք նոցա բարեխօսութեամբն յա՟յ պաշտօնն յորդորեսցին. եւ այնպէս առնուն զաշխատութեան փոխարէնս յամենասուրբ Երրորդութենէն: Զի Պօղոս եւ Բառնաբաս արարեալ նշանս յանուն տեառն Յսի՟ Քսի՟, զառ 'ի

մօրէ զկաղն բժշկելով և զարմացուցեալ զամենե-
սեան. մինչ զի քուրմքն ածս զնոսա համարեցան յեր-
կնից իջեալ և զմարդոյ կերպարանս ունելով: Վասն
որոյ զոհիւք կամէին պատուել զնոսա որպէս զաստուա-
ծս: Եւ յաղագս այնորիկ պատառեցին զհանդերձս,
և ձիչ բարձեալ ասէին. մեք ձեզ նմանեալք մարդիկ
եմք ծառայք այ բարձրելոյն՝ որ արար զերկինս և
զերկիր և որ 'ի նոսա արարածք իցեն. և յանուն նորա
բժշկեցաւ սա: Եւ զայս ասացեալ հազիւ լռեցուցին
զամբոխն. զի լաւ համարեցան մեռանել, քան եթէ
զպատիւն այ ձգել յինքեանս և փառաւորիլ 'ի մարդ-
կանէ:

Այսպիսի ինչ արար սատանայ, զի զայ պատիւն
յինքն ձգեաց, և որոշեցաւ 'ի խնամոց արարչին իւ-
րոյ, և անկաւ 'ի փառաւորեալ կարգաց հրեշտա-
կական դասուցն, և եղև խաւար փոխանակ լուսոյ և
ժառանգորդ գեհենին պատժոց: Զի սրբոց առաքե-
լոցն և մարգարէիցն և ճշմարիտ վարդապետացն ծա-
ռայս այ՝ անարգս երևեցուցանելով. զի գիտէին զսա-
տանայի 'ի ձեռն հպարտութեան ամբարտաւանեալ և
ամբարհաւաճեալ զ'ի վայր անկումն, և զխոնարհաց
և զհեզոց զ'ի վեր ելումն 'ի տեղիս անկելոցն: Մա-
նաւանդ Քս. քանզի յայտնագոյնս եցոյց ըստ անօրէ-
նութեան զանձն զխոնարհութիւն իւր. յորս և ասէ
իսկ. «Ուսարուք յինէն, զի հեզ եմ և խոնարհ սրտիւ.
և գտջիք հանգիստ անձանց ձերոց»:

Իսկ ամենայն սուրբք իւրեանց առաջնորդութբ
ճշմարտեալ խոնարհութբ առ ածն 'ի բարձունս ըն-
թացուցանեն զամենայն հաւատացեալս յած. զի
արժանի լիցին յամենեցունց առաւելն փրկութե և
քաւութե սխալանացն բարեխօսութբ սրբոցն, և այլ
մի ևս դառնալ 'ի դժնդակ վարս սատանայի: Այլ
լսել զիւրաքանչիւրոցն նահատակութիս և զկատա-
րեալ սուրբ սէրն, որ առ ած էր յոյժ նոցա համբե-
րութեն, նախանձ ունել Քի: Որ հրով և ցրտով,
ջրով և սառամանեօք, քերանօք և հարուածովք,
բանդիւք և կապանօք, սովով և ծարաւով, սրով և
մահու, սպառնալեօք և ողոքանօք. զի երկչոտն զար-
հուրեսցի և արին կակղասցի: Այլ ոչ ինչ կարաց

այսպիսեացս չարաչար տանջանացն վիշտք և նեղութիւնք և վտանգք մարմնոյ քակտել և խզել զսուրբ սէրն որ յամենասուրբ Երրորդութիւն։ Եւ յաղագս առաւելութեն այ սիրոյն առին համարձակութիւն բարեխօսութեան առ տր։ Զի զայս ամենայն դժնդակ տանջանս 'ի հակառակաց անտի ընկալան համբերութբ բազմաւ վասն երախտաւոր սուրբ սիրոյ նորա՝ որ սիրեաց զազգս մարդկան, որ հրաւիրեաց և կոչեաց։

Արդ զհետ երթիցուք կոչողին զհետ սրբոցն սուրբ սիրով. խնդրեսցուք ջերմեռանդն շնորհալից արտասուօք զանտի զհանգիստն սատեօք աշխատութբ. ընդհուր ցանկութեցն չիջուսցուք հրով Հոգւոյն սրբոյ. և սրբեսցուք զանձինս զերևելի զգայարանս և զաներևոյթ հոգւոյն շարժմունս 'ի խղճէ չարեաց։ Զի ճշմարտեալ սիրովն որ առ ած՝ կարասցուք մասին սրբոցն աւետեացն արժանի լինել յետ զկեանս աշխարհիս լուծանելոյ։ Զի այսպէս 'ի ժողովս սրբոց հաղորդեսցուք և տօնեսցուք 'ի փառս ամենակալին այ, որ ետ նոցա զյաղթութի առ չար բռնաւորս. և փառաւորեցան յերկինս և յերկրի որ կան և մնան։

Այսպէս յուսալ և հաւատալ 'ի սրբոցն ժողովս և 'ի բարեխօսութիւնս որպէս զքահանայս որ կան առաջի այնորիկ՝ որ նստին ընդ աջմէ Հօր, և զիւրաքանչիւրոցն պատարագս ընծայեն աղօթիւք առ 'ի հաշտութի ակամայ և կամաւոր սխալանաց հաւատացեալ ժողովրդոց վախճանելոց և կենդանեաց։ Եւ իւրեանց ճշմարտեալ հաւատովն և համոզիսաւոր ճգնութբ առաքինասէր վարուք՝ արդար և սուրբ և ուղիղ բաղձանօք, շնորհալից սիրով, արտասուագոչ պաղատանօք հաւատան առնուլ զխնդրելին յամենեցունց փրկչէն ըստ յուսոյ հաւատացեալ ժողովրդոց. մանաւանդ 'ի ձեռն փրկական խորհրդոյն որբապէս կատարմանն 'ի քս յս։

Այսպէս է իմանալ զսրբոցն զբարեխօսութի առ հաւատացեալ ժողովուրդն։ Զի իւրեանց մտերիմ վաստակովքն որք զմարմինս իւրեանց պատարագեցին յերկրի վասն անուանն այ 'ի հոտ անուշից, և սուրբ հոգիք նոցա հոգևոր բարեխօսութբն զած յողորմութի աշխարհի ածեն։ Եւ նշխարք ոսկերաց նո-

ցա փրկութեան շնորհք ընծայեսն 'ի ժողովս հաւատացելոց, որպէս ամենեցուն է քաջայայտ. զի երևեսցի սէրն ա̃յ 'ի նոցա նշխարսն բնակեալ, և նշանօքն ծանուցեալ յերկրի ։

Իսկ արդ իմանալեօքն զյուսացելոց իրաց զհաւատատութիւն և զյանդիմանութիւն ա̃յ մերձաւորութեան ունին, զհամարձակութիւն բարեխօսութեան՝ որ ոչն երևի մարմնաւորացս. այլ երևելեօքս շնորհատուր զօրութեան ա̃յ 'ի նոցա նշխարս և 'ի սուրբ ժողովս զաներևոյթսն իմացուք առաւելագոյն այցելութիւն 'ի տ̃նէ ։ Զի հոգիք, ասէ, առաւել են քան զմարմինս առ արարիչն և առ արարածս ։ Զի այսպիսի շնորհք տուան յա̃յ առաքելոց և մարգարէից և մարտիրոսաց և ամենայն ընդրելոց սրբոց յերկրի աստ և յերկինս ։ Զի նոցա առաջնորդական հանդիսիւքն և առաքինասէր վարուք հաճոյասցուք ա̃յ. և նոքա պատճառք լինին մեզ փրկութեան և կենաց միշտ բարեխօսութեամբ իւրեանց ։

Եւ մեք զփառաւորեալն յա̃յ երանեսցուք. որ վասն սիրոյն ա̃յ զանձինս իւրեանց մատնեցին չարչարանաց և մահու, և առին զպատիւն և զպարգևսն անապականն յանմահ թագաւորէն ։ Այլ զպաշտօնն և զփառաբանութիւնն երկրպագութեան ամենասուրբ Երրորդութեան մատուսցուք 'ի յիշատակս կատարման ամենայն սրբոց ա̃յ ։ Զի այս են կամք ամենեցունց տ̃ն և ամենայն սրբոց նորա. զի նա է փառաւոր և պատուոյ արժանի յամենայն սրբոց և յարարածոց այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն ։

# ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ԶԳՈՒՇՈՒԹԻՒՆ ԶԳԱՍՏՈՒԹԵԱՆ ՇԱՀԱՒՈՐ ՊԱՏՐԱՍՏՈՒԹԵԱՆ ԸՆԴ ՄՏԵՐԻՄՍՆ ԵՒ ԸՆԴ ԴԺՆԴԱԿՍՆ ՊԱՏԻՒ ԵՒ ՊԱՏԻԺՍ

### ԺԵ

ԳՐԵԼ ձեզ և ուսուցանել կամիմ, եղբարք իմ և որդիք, զորս 'ի Քս աւետարանաւն ծնայ: Զի որք յարգեն զանձինս իւրեանց 'ի գործս բարութեան և յուսումն ճշմարտութե, ինքեանք իսկ պատրաստին 'ի վնասակարացն, և պէսպէս հնարիւք յառնել զբարիսն խորհին: Որպէս զի օրինակ ճշմարտութե եղիցին յառնել և յուսուցանել միշտ, և անխիղճ և անպատճառ իցեն առ հեռաւորս և մերձաւորս ըստ բանին ՏՆ. «Լուսաւոր եղիցի, ասէ, լոյս ձեր արդարութե առաջի մարդկան. որպէս զի տեսցեն զգործս ձեր բարիս, և փառաւորեսցեն զՀայրն ձեր երկնաւոր»: Եւ դարձեալ երանէ զծառայսն, յորոց անունն օրհնի և փառաւորի. և վայ և եղուկ զայնոսիկ վարկանի, յորոց անունն ՏՆ հայհոյեսցի:

Զի որք լինին քարոզք ճշմարտութեն, ճշմարտութին ինքնին յարգէ զնոսա անմոլար գիտութքն: Եւ ԱԾ փառաւորէ զնոսա, յորժամ տեսանի նոցա բարեպաշտութե ջանքն. զի զոր նոքայն տնկեն և սնուցանեն, ԱԾ աճեցուցանէ և հաստատէ աւետեօք կենացն 'ի փառս և 'ի պարծանս նոցա 'ի տիեզերական ատենին յարութեն որ 'ի մեռելոց: Եւ կարասցեն ասել. Ահա մեք և մանկունք մեր ճշմարտեալ զոր ետուր մեզ, ԱԾ: Եւ պսակեալ առաքինութքն առնուն զգրաւական խոստացեալ աւետեացն Քսի: «Զի որ արասցէ, ասէ, և ուսուսցէ, նա մեծ կոչեսցի յարքայութեն երկնից»: Զի «Սկսաւ, ասէ, ՅՍ առնել և ուսուցանել մինչև յօրն՝ յորում վերացաւ յերկինս»:

Իսկ որում հաւատացաւ վերակացութիւն ժողովրդոց, և հեղգացի 'ի նոցա խնամս 'ի հոգևոր ուսումն և 'ի խրատ, և ստունգանիցէ և կամ ոչ տայցէ զմարմնաւոր պէտս կարօտելոց, այլ ուտէ և ըմպէ անզգայաբար, յանկարծակի գայ 'ի վերայ նորա մահ՝ յորում աւուր ոչ ունի ակն. և հատանող բանին Աստուծոյ սուր՝ ընդ մէջ կտրեսցէ զնա, յինքն առեալ զշնորհսն՝ որ յԱստուծոյ է, և զվատթարն ընդ անհաւատսն դիցէ 'ի խաւարն արտաքին և 'ի հուր, ուր լալ աչաց է և կրճել ատամանց: «Զի հաւատք 'ի լսելոյ են, ասէ Առաքեալ, և լուր 'ի բանէն Քրիստոսի. զի զիա՞րդ հաւատան զոր ոչն ուսան, և կամ զիա՞րդ աղաչեսցեն զոր ոչ գիտեն»:

Այս դարձեալ առ մարգարէն Եզեկիէլ ասէ օրինակաւ առ ամենայն վերակացուս. ասէ. «Դէտ կացուցի զքեզ. զգուշացի՛ր անձինդ և ժողովրդեանդ, և ասասցես ցանօրէնն՝ եթէ մահու մեռցիս: Եթէ ոչ զղջասցի և դարձցի խոստովանութեամբ յապաշխարութիւն, մեռցի զմեղացն զմահ. և դու ապրեսցիս, զի զգուշացուցեր յառաջագոյն: Ապա եթէ զղջասցի և դարձցի խոստովանութեամբ յապաշխարութիւն, կելով կեցցէ զարդար կեանս և մի՛ մեռցի զմեղացն զմահ: Ապա եթէ ոչ զգուշացուցեր նմա, 'ի մեղս իւր մեռցի 'ի պատուհաս, և զարիւն նորա 'ի ձեռաց քոց խնդրեցից», ասէ զայս ամենեցունց Տէրն:

Այս Դանիէլ բանիւք և արդեամբք եցոյց զիրաւացի դատաստանն առ ծերսն՝ որք էին վերակացուք Իսրայէլի՝ զպատիժս պատուհասիցն: Որ և 'ի գբին յառիւծուցն ապրեցաւ՝ մատնելով ոսոխացն 'ի մահ, որ անդէն իսկ 'ի նոսին դառնայր մահն յառիւծուցն: Եւ այնպէս երևելի եղև ճշմարտութիւն արդարոյն և ամբարտաւանութիւն զրպարտող չարեացն: Եւ այսպէս փառաւորէ Աստուած զփառաւորիչս իւր և զճշմարիտ վերակացուս: Որ և զերիս մանկունսն արկին 'ի հնոցն առ 'ի յայրել վասն առ 'ի յԱստուած զհաւատսն ամբողջ պահողաց. զի հրաման, ասէ, թագաւորին սաստկանայր, և հնոցն բորբոքէր առաւել, և հուրն ոչ կարէր մերձենալ առ սուրբսն որք օրհնէին զՏէր Աստուած: Այլ զչարսն զորս գտանէր, այրէր հուրն. զի

այնու ծանուցեալ եղև արարիչն արարածոց. և Թագաւորն խոստովան լինէր այ զմեղսն :

Իսկ զԵրեմիաս արկին 'ի գուբն 'ի մահ յաղագս յանդիմանելոյ զանիրաւսն և 'ի դարձ ածելոյ, զի ապրեսցին 'ի բարկութենէն որ գալոցն էր 'ի վերայ ժողովրդեանն : Որ և զգրեալ զխրատսն և զմարգարէութիւնն այրեցին, և ըստ արժանեացն ընկալան ըզհատուցումն մեղաց իւրեանց, և մատնեցան 'ի սով և 'ի սուր և 'ի գերութի : Եւ մարգարէն փառաւորեալ պատուեցաւ 'ի Թագաւորէն և 'ի մեծամեծացն, և վերստին նորոգեաց գրով զմարգարէութիւն և զուղիղ խրատսն : Եւ զի ասաց, « Անիծեալ ամենայն որ գործէ զգործ տն ծուլութբ : »

Իսկ տրն որ յաւետարանսն առ Պետրոս ասաց. դու ես վէմ, և 'ի վերայ այդր վիմի շինեցից զեկեղեցի իմ. այսինքն զհաւատացեալ ժողովուրդն այ. և դրունք դժոխոց զնոսա մի յաղթահարեսցեն, զարձակեալսն յերկրէ սուրբս և արդարս ճշմարիտ հաւատով յերկինս. և զոր կապիցես յերկրի զանսուրբս և զանիրաւս և զայլահաւատս, եղիցին կապեալ 'ի յերկինս 'ի պատիժ սպառնալեացն : Առ Պետրոս բանս 'ի տնէ առ ամենայն վերակացուս սուրբս ասացաւ, որք զճշմարտութիւն իրաւ ունին :

Նայակիսի ընտրութիւնք են 'ի մէջ լաւաց և անիրաւաց, որք իւրեանց սրբութբն և առաքինասէր վարուք եղեն արբանեակք և քարոզք բանին ճշմարտութեանն 'ի զգուշութի անձանց և ժողովրդոց, արհամարհողաց և անհնազանդից, անսրբոց և պղծոց և որ այլ ևս դժնդակութեան վարք իցեն, յնմի խելամտեալք ճանաչելով զերկաքանչիւրոցն զշարժմունս, և ընդ սխալեալսն մարտիցէ զինուք ճշմարտութեան ողոքանօք կամ սաստիւք. որով կարասցէ շահել զմեղապարտսն : Եւ զհեծանոցն 'ի ձեռն ունել. զի հողմոյ հոգւոյն սրբոյ շնչելով որոշեսցէ զցորեանն յշտեմարանս սրբոց, և զյարդն պատրաստիցէ 'ի նիւթ հրոյ գեհենին, որպէս ասացաւ. զի ընտրութի է 'ի մէջ բարւոյ և չարի :

Իսկ որ 'ի ճշմարիտ վերակացութէն օտար են, բարկութիւն այ 'ի վերայ նոցա պատրաստեալ կայ 'ի տնէ

ըստ բանի Առաքելոյն. «Որք զճշմարտութիւն անիրաւութեամբ ունին, և ոչ ըստ աւետարանին Քսի՟»: Զի արժան է առաջնորդաց վերագոյն ըստ արդարութեան օրինացն եղեալ յամենայն 'ի հաճոյս այ՟, և զժողովուրդն զգուշացուցանել ճշմարիտ վարդապետութեամբ վասն իւրաքանչիւրոց փրկութեանց. զի մի սպառնացեալ պատուհասն 'ի վերայ հասանիցէ 'ի ձեռն հրեշտակի չարի: Որպէս մարգարէին ցուցաւ սատակել զանիրաւսն և ոչ ումեք ողորմել, ծերոյն և տղայոյն, կուսին և երիտասարդին, և քահանայից և ժողովրդոց:

Բայց աւա՜ղ, որք հեծեն և յոգոց հանեն և սգան զայլոց անիրաւութիւնս, խնայել հրաման առնուն նշանաւն որ 'ի ճակատն առեալ 'ի տնէ՟, զի ապրեսցին 'ի սատակմանէ անտի: Եւ սկիզբն սատակմանն 'ի քահանայից անտի առնու, յորոց վերակացութիւն ժողովրդեանն է յայ՟. որ զշահս մարմնոցն առնուին, և հոգևոր շահիցն անփոյթ առնէին. զի այ՟ դատաստանքն ճշմարիտ են. զի «Ամենայն դպիր աշակերտեալ արքայութեան այ՟, ասէ տէրն՟, նման է առն տանուտեառն՝ որ հանցէ 'ի գանձէ իւրմէ զնոր և զհին»:

Տանուտէր անուանեաց զառաջնորդս եկեղեցւոյ՝ զաշակերտեալս ճշմարտութեան աւանդիցն, և գանձք զիմաստս սրտին, որ 'ի հնոյ և 'ի նորոյ ունի զատոյգ գիտութիւնն, և վայելեցուցանէ զմերձաւորս և ըզհեռաւորս բարի խորհրդովք և բարի գործովք և անարատ սրբութեամբ: Եւ զչար գործոցն զմթերս արտաքս պեղել, մինչ ոչ մնայցեն նշխարք չար գանձուցն 'ի բարի ուսմանցն, ընտրելով զլաւն 'ի վատթարացն:

Նոքեանք, ասէ, օրինակ լիցին կացիւք գնացիւք, ամ՟ առաքինութեան հանդիսիւք. զի աշակերտեալքն յորդորեսցին 'ի ճշմարիտ վարս, որ փառս է վարդապետաց, գնալ 'ի ճանապարհս արդարոց, և խորհել 'ի պատուիրանս տեառն, և առաջնորդել լուսաւոր վարդապետութեամբ 'ի սրբութեան վարս և յարդարութիւն ամ՟: Զի զամն՟ ժառանգորդս արասցեն արքայութեան այ՟, գործակից լինել կենարար աւետարանական խրատուն, և մի իւիք զանց առնել 'ի ճշմարիտ աւանդիցն:

«Զի եթէ միովիւիք ինչ, ասէ, գլթիցես, եղեր ամ̃ օրինացն պարտական»։ Զի ճշմարտեալք հաւատով և սրբեալք 'ի խղճէ չարեաց, միշտ մերձաւորք լիցին մարմնոյ և արեանն տեառն, 'ի ներքին մարդն բնակել քոյ, որ լուսաւորէ զտուրքս անարատ և ամբիծ երախտեօք սուրբ սիրոյն, հոգևոր և մտաւոր դարմանօք յամենաստուրբ Երրորդութենէն միշտ։

«Իսկ յորժամ քո յայտնեսցի կեանքն մեր, ասէ Առաքեալ, յայնժամ և դուք ընդ նմա յայտնեսջիք փառօք»։ Որպէս զի եղիցի մեզ ամենեցուն որ զգեցաք զքո, ճշմարտեալ հաւատով և առաքինասէր վարուք հաճոյացեալք մերձենալ 'ի լոյսն անմատոյց, և պայծառանալ 'ի փառացն քոյ յուսոյն մերում 'ի տիեզերական ատենին յարութեան որ 'ի մեռելոց։ Եւ փառաւորեսցուք զամենազօր տէրութին միշտ ընդ հրեշտակս յաւիտեանս յաւիտենից. ամէն.

## ՆՈՐԻՆ ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ԳՈՎՈՒԹԻՒՆՔ ԱՍՏՈՒԾՈՅ ԵՐԱԽՏԵԱՑՆ ՀԱՆԴԻՍԻՒՔ ՄԱՐՏԻՐՈՍԱՑ ՔԱՋԱՑ ԱՌԱՔԻՆԵԱՑ

### ԺԲ

ՄԻԱԲԱՆ են խնամք բարերարին և անշեղջ պարգևք կենարարին, որ հաստատեաց զզօրս երկնից 'ի փառս անուան իւրոյ սրբոյ, և զմարդիկ յանարգութէ նմանապէս 'ի գովեստ փառաց շնորհաց իւրոց. ետ իշխանութի՛ 'ի վերայ ամենայն երևելի արարածոց, և խոստացեալ զանպատում երանութիւնսն։ Զի անձնիշխան կամս ստացան 'ի տնէ երկնաւոր զօրքն և երկրաւոր որդիք մարդկան. զի հաղորդ լիցին բարերար կամաց արարչին, խորհել միշտ զբարին և առնել 'ի կամարար մտաց ըստ կամացն նյ, զի շահեսցին զօգտակարն անձանց։

Այլ ետ դաստիարակս երկուս, զաւետիսն և զըսպառնալիսն։ Եւ վարդապետս յօրինեաց զհոգևոր օրէնսն խրատուն կենաց, որ յիւրմէ կանուխ գիտութէն ծածկեալ անձնիշխան կամացն բոյսք։ Այլ զի որ 'ի լաւագոյնսն հնազանդեցաւ մտերիմ հաւատութբ տն, փառօք պսակեսցի։ Իսկ արհամարհողն և անհնազանդն և ապստամբեալն 'ի ճշմարտութէ աւանդիցն՝ պարտաւորեալ պատուհասեսցի։ Եւ արարչին բարերար կամք ոչ եթէ հակառակ ինչ էր իւր կանուխ գիտութեն, այլ հաւան ըստ նախախնամական սիրոյն իւրոյ առ 'ի հաստատուն կալ 'ի բարիսն։ Եւ զպատիւ խոստացեալ աւետեացն արդարոցն յուշ առնէ միշտ. այլ և զպատիժս արհամարհողացն և անհնազանդիցն 'ի հոգևոր օրինացն։ Զի զամենեսեան զգուշացուսցէ 'ի հնազանդութի պատուիրանին, զի մի զրկեսցին 'ի վարձուցն հատուցմանն։ Այլ յորդորէ յօգտակարսն, սակայն ոչ բառնայ զանձնիշխան կամս, թէպէտ և յառաջագէտ է։

Որպէս առ մանկութեան խահակայ, մինչդեռ յորովայնի մօրն էին, ընտրութիւս առնէ. զՅակոբ սիրէ՝ որ բարի բացայայտի, և զԵսաւ ատեայ՝ որ չար երևիւր։

Եթէ այդպէս է, զիա՞րդ չարն, ասեն, յառաջադայի, և ոչ բարին միշտ յառաջադայի։ Եթէ այդպէս էր, բառնայր պատիւ անձնիշխան կամացն, և կորնչէր ընդրութիւք արդարոցն, և զրկեալ լինէին քաջքն յաղագս հանդիսի պսակացն և փառօքն։

Ո՛վ արքայութիւն երկնից, ասէ տէրն, աւար է, և բռունք յափշտակեն զնա։ Զի առաքինասէրք վարուք և մեռեալք մեղացն փոխին որպէս 'ի մեռելոց 'ի կենդանիս՝ 'ի սրբութիւն և յարդարութիւն ըստ ճշմարտութեան աւետարանին։ Զի մեղք՝ նոցա ոչ տիրեն. զի ոչ են ընդ օրինօք, այլ ընդ շնորհօք։ Զի այլ պարգևք 'ի տեառնէ է որ ընդ շնորհօք են, և այլ պատիւ և փառք որ առաքինութեան և քաջութեան են շահեալք. և այլ է որ 'ի գիւտից վայելէ՝ 'ի խոնարհութենէ պատկառանաց զգաստացեալ, և այլ է որ 'ի հանդէս առաքինութեան մրցին ըստ հարկեաց սխալանաց անձանց։ Զի զամենայն բարութիւս զերկնաւորսն և զերկրաւորս որ փառօքն և պարծանօքն է՝ վայելեսցեն 'ի բարի տուողէն։

Այնպէս է իմանալ վասն հրեշտակաց և դիւաց, արդարոց և մեղաւորաց. զի նախ ընտրութիւն լինի 'ի մէջ քաջացն և վատացն, և ապա ըստ իւրաքանչիւր արժանաւորութեան զհատուցումն առնէ ըստ արդար դատաւորութեան։ Զի քաջացն որպէս պարտս տայ զպատիւն, և վատացն որպէս ողորմութիւն՝ որպէս շնորհս և պարգևս ինչ։ Զի զօրէնսն իբրև զբովս եդ 'ի փորձ, և նովաւ առնէ զընտրութիւն 'ի վեր և 'ի խոնարհ, և ըստ արժանեաց տայ զպատիժս և զպատիւ արդարոց և մեղաւորաց։ Զի հոգևոր օրէնքն կենդանարար են. զարդարասէրսն առաւելուն 'ի բարի գործս, և զպղերգսն զարթուցանեն յառաքինութիւն սպառնալեօք պատուհասից, և փառացն ցանկացող առնէ։ Ուստի հանդէսք լաւութեան կենացն նորոգին, և պսակեալ քաջութեան ըստ յաղթողելոյն տայ յաւետիս արդարոցն մտանիցեն։

Որդւորքն են որ զարժանն և զիրաւն առնեն, և ժառանգաւոր լինին վերին կոչմանն՝ որ 'ի կեանսն տանի. զի ըստ միոյ միոյ առաքինութե՟ և պսակքն փառաց և գովութե՟ յօրինեն 'ի տեառնէ։ Զի բազմապատիկ են տանջանք Ճգնաւորացն, որ զբազմաշահ օգուտսն ժողովեն 'ի խրատուէ կենարար օրինացն Քրի՟. զի ըստ ամ՟ Ճշմարտութե՟ եղիցին որդիք լուսոյ Հօրն երկնաւորի, և ժառանգակից Քրի՟։ Որ իւր մտերիմ վաստակօքն էառ զմեծութիւն անբաւ բարութեանցն, և պատուոյն և փառացն և արքայութեն երկնից ժառանգաւոր։ Զի եկամուտ եղև անհնազանդութի՟, 'ի կամաց և ոչ 'ի հարկէ, հանդերձ ամ՟ դժնդակութե՟ք. և փշալիցարար զամ՟ անդս մտաց և անդամոցն՝ զմտաւորս և զբանաւորս բուսովք չարութեն և մնոտի խաբէութե՟ բանսարկուին։ Վասն այնորիկ 'ի մշակութե՟ կացոյց զորդիսն ստուգութե՟. զի բազում Ճգնաւորական հանդիսիւք քաղիցեն զորոմն չարութեն 'ի մտաց և 'ի մարմնոյ զբոյսս փշաստակարս, զխաբէութի՟, զստութի՟, զհպարտութի՟, զագահութի՟ և զամ՟ չար ցանկութիւնս հանդերձ ամ՟ փշաստակարօք երևելեօք և աներևութիւք առ չարն հակամիտութի՟։

Այլ մարտ պատերազմի քաջացն ոչ միադիմի, այլ բազմադիմի է։ Նախ զի մի հաղորդեսցի բանից խաբէիցն՝ ողոքանաց և պատրանաց, որ զմիտս և զանդամս շարժէ 'ի փշաստակար և յաղտեղի ցանկութիւնս։ Երկրորդ զի մի անկցի 'ի բուռն ամբարտաւանութե՟, հպարտութե՟ և մնափառութե՟. որ փակէ զմարմին և զհոգին ներքոյ կորստեան անհնարին չարեօք։ Երրորդ զխաբէութեանն և զստութեն և զայլանդակութե՟ շարժմունս շիջուցանիցէ. ընդ նմին և զբարկութի՟ և զանզգամութի՟ և զստահակութի՟ սանձեսցէ խոնարհ սրտիւ։ Չորրորդ որ զտեսիլ շռայլութեան և որկորստութե՟ զհետ շրջի շեղջակուտեալս ցանկութե՟ դիջութե՟, ամ՟ծայրին ցանկութե՟ս և պարկեշտութե՟ ազատանայ. ընդ նմին և զամ՟ ցոփութի՟ս և զգռեհութի՟ս յանձանց թօթափել, և զամենայն անօգուտս որ աւէրկոծեն զմիտս և զզգայութի՟ս՝ յանձանց 'ի բաց ընկենուլ բարի յուսովն։ Հինգերորդ որ ոչ վրիպէ և ոչ

մոլորի և ոչ գայթակղի յերախտաւոր բարերար տես-
չութենն. որ հեռացուցանէ յերանութենէն, և 'ի մթա-
գին ափշութի ընկենու, ստերիւրեալ 'ի ճանապար-
հայն արդարութե՝ որ տանի յօթևանս հանգստեան:
Վեցերորդն երդմնահարութե և յափշտակութե և
զրկանաց. որ արկանէ յամօթ և 'ի տոյժս և 'ի տու-
գանս սպառնալեօք. և առանց պատասխանւոյ է դատն
եթէ ոչ զգաստասցի 'ի սոցանէ: Եօթներորդ որ ըզ-
սրտմտութի բարկութբ շարժէ և խռովեալ պղտորէ
զմերձաւորս, որ 'ի փորձանս խորհրդոց և բանից և
գործոց. եթէ ոչ յաղթահարեսցի հեզութբն, ար-
կանէ 'ի պատիժս յաւիտենից պատժոցն: Ութերորդ
ոխութի և նախանձ և ատելութի. որ թէ ոչ ազա-
տեսցի յայսոցիկ չարեաց, մահ անձին և այլոց սատա-
նայ. զի քինայ և զչարի 'ի խորհուրդս ղեղաւորս, և
զկծոյնս դառնութեան հեղու զորս [1] ատեն: Իններորդ
որ զանհաւանութե և զծուլութե արմատս խլէ, որ
մթերք են ամ չարեաց և պատճառք անզեղջ կորըս-
տեան և դրունք մահու հոգւոյ և մարմնոյ: Տասնե-
րորդ որ անխտիր է յամբարշտութիւն և 'ի դարշելի
ախտս և յամ անօրէնութիւնս. որ եթէ ոչ զգաս-
տասցի յահ և յերկիւղ տեառն զղջմամբ, կորիցէ
զյաւիտենական զկորուստն:

Այս են բոյսք չարութե, զոր ժիր մշակքն քաղա-
հան առնեն, և զբարի բոյսսն սնուցանեն ոռոգմամբ
շնորհալից արտասուօք և առաքինասէր վարուք. Եւ
յայսոսիկ է մարտն և յաղթութի քաջացն և առա-
քինեացն, որ վկայք են ճշմարտութեն, և կենդանի
մարտիրոսք սիրեցեալք 'ի տեառնէ: Զի սպանին ըզ-
թշնամիս արդարութե, և զնորոգումն կենացն՝ որ 'ի
քս եղեն՝ կեցին, և յոյս նոցա հաստատեալ կայ ընդ
քսի: Ճշմարտեալ հաւատովք և հանդիսիւք առա-
քինութբն 'ի լաւագոյնսն միշտ կալ զօրութբ Հօրն
ամենակալի և օգնութբ Որդւոյն բարերարի և շնոր-
հօք ամենասուրբ Հոգւոյն, միոյ ածութեն որ ապա-
ւէն է յուսացելոց իւրոց:

Առաջին և նախ քան զամենեսին ճշմարիտ հաւա-

1 Մխեան զոր ատեքն:

տոցն հաստատութի՟՝ որ 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգւոյն սուրբ՝ սիրով և յուսով։ Զի այսու վկայեցան առաջինն սուրբքն. իմացան և ծանեան զառ 'ի Նմանէ յօրինուածս ամ՟ արարածոց, և զնախախնամութի՟ սուրբ սիրոյն և զվստահութիւն յուսոյն որ առ ած՟, որ ոչ երևի։

Երկրորդ լինել ճշմարիտ բանին քարոզութի՟ առ գիւտս կորուսելոցն և առ պահպանութի՟ գտելոցն։ Որով կարգին ընդ սուրբ հրեշտակս՝ որ առաքին 'ի սպասաւորութի՟ որ ժառանգելոց են զփրկութի՟ և զերանութի՟ 'ի յոյս կենացն յաւիտենից։

Երրորդ որ յստակ խորհրդովք աղբիւրանան 'ի բարեգործութիս՝ յորդորումն առ երախտիս ամ՟ հեռաւորաց և մերձաւորաց. ոռոգել զանդս մտաց և մարմնոց հոգևոր շահիւք և մարմնաւոր պիտոյիւք. և այնպէս բազմացուցանել զպտուղս արդարութե՟ արմտեացն 'ի վայելումն անմահ կենացն։

Չորրորդ որ զհաւանութե՟ և զհնազանդութե՟ և զմիաբանութեան զհանգամանս ունի յօդիւ Հոգւոյն սրբոյ, 'ի միասին ժողովելով 'ի խաղաղութի՟ և 'ի փառաբանութիւն այ՟, և զմիմեանս օգտեցուցանել աննախանձ օգնականութեամբ, և յերանելի կեանսն յուղարկել։

Հինգերորդ որ անարատ և ամբիծ յորդեռանդ հոգևոր սիրովն խնամէ զամենեսեան ըստ իւրաքանչիւր պիտոյից. ձեռնտու լինել զրկելոց և վշտացելոց, և եթէ այլ ինչ աղէտք իցեն որ պէտս ունին օգնականութե՟ հոգւոյ և կամ մարմնոյ. և այսպիսի երախտեօք մտեալ 'ի ժառանգութի՟ կենացն Քի՟։

Վեցերորդ որ լինին մատակարարք ճշմարտութե՟ աւանդիցն՝ որ հաւատացաւ նոցա յայ՟՝ հոգեկանաց և մարմնականաց. տալ 'ի ժամու զհոգևորական զօգուտս և զմարմնական զպէտս, և առնուլ զառհաւատչեայ երանութեանցն զպարգևս յարքայութեանն արդարոց։

Եօթներորդ սրբութի՟ և զգուշութի՟ և պահպանութի՟ ամ՟ առաքինութեցն. արթուն և զուարթուն կալ յամ՟ գաղտաձիգ նետս չարին, որով՝ սպանն զանմեղս 'ի մեղս։ Զի յամենայնի ամրացեալք և յաղ-

թեալք նորա խորամանկութեն՝ առցուք զպսակն անեղծութե։

Ութերորդ լինել խոնարհ սրտիւ և հեզ բարուք և խաղաղարար առ ամենեսին՝ առ հեռաւորս և մերձաւորս, նմանել Քո հեզոյն և խոնարհին և խաղաղարարին. զի հայեցեալք յառաջնորդն հաւատոց՝ զհետ երթիցուք, և գտցուք զանտի զհանգիստն 'ի խոնարհ և 'ի հեզ և 'ի խաղաղարար սիրոյն։

Իններորդ որ պարկեշտութբ և համեստութբ բարեմտեալ ըստ ամի առաջնորդական խրատուն փրկութե և կենդանարար, հասանել 'ի գուռն կենաց և մտանել 'ի յարկսն յաւիտենից 'ի հանգիստն՝ որ պատրաստեալ է 'ի փրկչէն մերմէ ըստ իւրաքանչիւր վարուց։

Տասներորդ Քո փրկական պատարագին լինել խորհրդածու և խորհրդակից ըստ արժանաւորութե մաքրման հաղորդելով. աղօթանուէր պաղատանօք և շնորհալից արտասուօք և ջերմեռանդ հոգւով եռացմամբ սուրբ սիրոյն առլցեալ 'ի Քո, ընդ երկնայինսն մերձենալ առ ած և անտի լուսաւորել զհոգի և զմարմին, և բուռն հարկանել զկենացն յաւիտենից։ Եւ զերկնայինսն միշտ խոկասցի, և զերկրաւորս արհամարհեսցէ, խորհրդակից և գործակից ունելով միշտ զամենազօր տէրութին. և մտերիմ կամօք զանձն անշարժ ունել 'ի ճշմարիտ վարս և յուղիղ հաւատս. երախտաւոր սուրբ սիրոյն յառաջանալ 'ի բարիսն, և զայլս յորդորել 'ի խոստացեալ բարիսն և 'ի կեանսն։

Այս են քաջացն և առաքինեացն հանդէսք, որ 'ի վերին կայանսն տանի. և լսեն յամենեցունց տեառնէն, ով ծառայք բարեգործք և հաւատարիմք, որով 'ի սակաւուդ հաւատարիմ եղեայք յերկրի աստ, 'ի վերայ բազմաց կացուցից զձեզ 'ի մշտնջենաւոր կեանսըն. եկայք մտէք յուրախութի տեառն ձերոյ յանվախճան երանութիւն՝ որ պատրաստեցաւ ձեզ։

Այսպիսի խրատու լինել աշակերտ և խորհրդակից, և մերկանալ զզբօսանս աշխարհիս և զհոգս սնոտիս, և զգենուլ զհոգևոր ազատութեն լուսաւոր ըզգեստն՝ որ յառաքինութէ կազմի անհամեմատ լուսոյն։ Եւ հանապազօր քննող լինել խորհրդոց և բա-

նից և գործոց. եթէ ստունգանեալ իցէ, ուղղեսցի լաւագոյն խրատու ա̃ծային գրոց 'ի ձեռն զղջման. «Զի զոր ինչ ասէք 'ի սիրտս ձեր, յանկողինս ձեր զղջ-ջացարուք. և մատուցէք պատարագս արդարութե̃ և յուսացարուք 'ի տէր» որ արդարացուցանէ: Զի փա-ռաւորք են 'ի վարդապետաց որք առնեն զայս և ու-սուցանեն 'ի նոյն ինքն 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ. որում փառք այժմ և յաւիտեանս. ամէն:

# ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ՀԱՅՈՑ ԼՈՒՍԱՒՈՐՉԻ

## ՅՈՐԴՈՐՈՒՄՆ ԱՊԱՇԽԱՐՈՒԹԵԱՆ ԽՈՍՏՈՎԱՆԵԱԼ

### ԺԹ

Մեծ են յարգանք հրամանաց տեառն և անբաւ շնորհք բարերարին այ. զի զորս յառաջին ճանաչէր, զնոսին և կոչեաց 'ի յոյս կենացն անվախճանից, և արդարացոյց և փառաւորս արար։ Որ հաւատով և երկիւղիւ պահեցին զպատուիրանս նորա, և հնազանդեցան ընդ ամենախնամ սուրբ սիրոյ նորա, և ընկալան զբանն կենաց յանձինս իւրեանց, և եղեն պտղաբերք և աճեցուցանք առաքինութեան վաստակովքն, որոց վարձքն կան և մնան 'ի հանդերձեալ կեանսն։ Իսկ ծուլիցն և անհնազանդիցն որք արհամարհեցին զբանն ճշմարտութեան, և խափանեցին զպտուղս արդարութեան, և ընկալեալ զչարաչար սերմանս 'ի թշնամւոյն՝ և եղեն մեղաւորք ճշմարտութեան աւանդից և խնամակալ սիրոյն՝ մոլորեալք յուղիղ ճանապարհացն, որոց կատարածն 'ի կորստեան վիհս ընկենու։

Սակայն բարերարին այ բարերար խնամքն ոչ անտես առնէ որք դառնան առ նա. բանայ զգրունս ողորմութեան շնորհացն, և ընդունի գթութեամբ երախտաւոր սուրբ սիրովն, և յանձանձէ զապաւինեալսն 'ի նորա գթութիւն։ Եւ 'ի ձեռն ճշմարիտ խոստովանութեան, և խոնարհեալ և բեկեալ սրտին 'ի զղջումն սգաւորի՝ գթայ 'ի նա և ողորմի և այցելու լինի փրկիչն։ Զի զծածկեալ մաղձն դառնութեան 'ի բաց փոխեաց. և եցոյց՝ եթէ զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի՝ զառողջութիւն և զսրբութիւն և զարդարութիւն։ Եւ ըստ ունակութեան ցաւոյն 'ի մարդասէր բժշկէն զառողջութեան դեղս ընկալցի՝ զարդարութեանն վարս, որ ընդդէմ մեղացն և դժնդակ ցաւոցն զոր

ունէր. զի այլ մի ևս անկանիցի 'ի նոյն, և այլ ոչ ևս գտցէ զմարդասէր բժիշկն։

Զի կոչէ բանն Տեառն զծանրաբեռնեալսն խոստովանութեամբ յապաշխարութիւն. զխաւարեալսն մեղօք 'ի լոյս արդարութեան. զմոլորեալսն 'ի գիտութիւն ճշմարտութեան, և զվրիպեալսն 'ի ճանապարհացն արդարութեան ածել յուղղութիւն. և զմահաբեր վէրս 'ի կեանս վերստին նորոգել խոստովանութեամբ, լուծանել զամենայն խարդախութիւնս սատանայի։ Զի զամենայն մարդ կամի զի կեցցեն, ասէ Առաքեալ, և 'ի գիտութիւն ճշմարտութեան հասանել ամենագիւտ սիրոյն տեսչութեամբք։

Զի խոստովանութիւն, ասէ մարգարէն, մեծվայելչութիւն է առաջի Այ և քահանայից նորա. զի «Ասացից եթէ պատմեցից յինէն զմեղս իմ, և դու թողցես զամենայն ամբարշտութիւնս մեղաց իմոց»։ Զի ըզվէրան բանայ և զցաւսն յայտնէ, և զդեղ բժշկութեան 'ի վերայ ածէ զղջմամբ զապաշխարութեան եռանդմամբ հոգւոյն 'ի հանապազորդ արտասուալից աղօթս անդադար 'ի տուէ և 'ի գիշերի. և ողորմ կերպարանս ստանալ ճնշելով զմարմինն պահովք, զի զԱծ խոնարհեցուսցէ 'ի գութ բազմախնամ շնորհօք առ 'ի թողութիւն մեղաց։ Զի ապաշխարութիւն ոչ միով իւիք կարգի, այլ բազում իրօք շինի. և 'ի մի հասակ արդարութեան կանգնի անկեալն և աւերեալն։

Զի նախ առաջին զղջանալ և խոստովան լինել զյանցանս, և արտասուաց ընդունարան առնել զանձն յապաշխարութեան ժամանակս անդադար աղօթիւք և ջերմութեամբ և միշտ պահովք, և մեծաւ ապաշաւանօք սգալ զյանցանս գործեցելոց հանապազ։ Երկրորդ զի ատեսցէ զմեղս և զգործակիցսն մեղաց ըստ ամենայն փաստուցն. և կշտամբել զմիտս և զզգայութիւնս որք 'ի չարին հակամիտեցին, և ոչ պահեցին զհոգևոր օրէնսն՝ որ նոցա աւանդեցաւ յարարչէն։ Երրորդ սիրել զարդարս և զառաքինիս, և գործակիցս իւր առնասցէ զնոսա աղօթիւք առ Ած, և յամենայն գործս բարութեան յորդորիչս 'ի ճշմարտութեան աւանդս կարգաց։ Չորրորդ զի 'ի յանցաւորաց անտի խորշեսցէ միօք և բանիւ և ամօթով և տեսութեամբ պատ-

կառ․ լաւ համարել զնեղութիւն կրել ընդ արդարս, քան զհանգիստն ընդ անիրաւս ։ Հինգերորդ յահ և յերկիւղ տն կրթել, և չթողուլ 'ի մտաց զօր վախճանին, այլ և զպատիժս մեղաւորաց. և մեռուցանել զանդամն կարեօքն և ցանկութիւքն ։ Վեցերորդ 'ի տուէ և 'ի գիշերի հսկել վասն փրկութեան անձին. եթէ որպէս կարասցէ լուծանել զմեղս, և ապրել 'ի բարկութենէն որ գալոցն է 'ի վերայ անապաշխարիցն ։ Եօթներորդ զի մի մոռասցի զբեկութիւն անձին իւրոյ և պղերգասցի 'ի բարեպաշտութեան ճգանցն և դարձցի 'ի նոյն վնաս, և վերստին ոչ կարասցէ բժշկել ։ Ութերորդ զի առողջացեալ զգաստացեալ սրբեալ, իմասցի զներքին մարդն և զարտաքին և զյիշատակս խոստացեալ աւետեացն ստոյգ ապաշխարողացն ։ Իններորդ զամենայն հրամայեալսն արարեալ ըստ հոգևոր օրինացն և աւետարանին Քի, և ակն ունել վերստին նորոգման 'ի ձեռն քաւութեան պատարագին ։ Տասներորդ առաւելեալ յամենայն բարեգործութիս երևելեօք և աներևութիւք, և զսպիս մեղացն ջնջել զհոգւոյ և զմարմնոյ, և յաղթող երևել 'ի հանդիսի ապաշխարութեան՝ կարասցէ համարձակել 'ի մեղսաքաւիչ խորհուրդն կենդանարար, և լինել հաղորդակից և մարմնակից և կցորդս անճառելեացն ։ Եւ յայսմհետէ զվերինն խորհել, ուր Քս նստի և սուրբք ընդ նմա առհաւատչեայ երանութեան ։

Սոյն ստոյգ խոստովանողք և ապաշխարողք ազատեալք փրկաւէտ մարմնով և արեամբն Քի. զի նա է յոյս մեր և առիթ քաւութեան, և նովաւ լինի ազատութիւն և մուտ յուրախութիւն և 'ի ժառանգութիւն արդարոցն երախտեօք Քրիստոսի սուրբ սիրոյն, որ արդարացուցանէ զմեղաւորս՝ որ ապաշխարեցեն ։ Զի որպէս սուր որ հատանէ զմարմին և վտանգէ զանձն, և կարօտանայ բժշկի որ զիջուցանէ զվտանգսն դեղովք ոմամբք յառողջութիւն, այսպէս դեղովք ապաշխարութեան զհարուածս ցանկութեան և զաղտեղի յիշատակս ջերմեռանդ արտասուօք լուանալ զվէրսն և բժշկել անարատ սրբութեամբ ։ Զի արտասուաց դրունք են վիշտք նեղութեանց և ախ-

տից ինչ ցաւք, վնասուց կսկիծք, հոգւոց տագնապք, վրէպք օգտից, պատահարք թշուառութեանց, վտանգք 'ի բռնաւորաց, տնանկութիւն յանկարծահաս, կորուստ սիրելեաց, ցաւք պէսպէս դժնդակաց անըմբերելի, և որ այլ ինչ սոցին նմանեալ: Իսկ հոգւոյն շարժմունք յայսոյն չարութէ յափշտակեալ յանխտիր ցանկութիւնս՝ վշտացուցանէ զմիտս 'ի դժնդակ խորհուրդս ապախտաւորս, որ ոչ ունի զկայանս արդարութե:

Ապան այսորիկ պիտոյ է պաղատանս արտասուալից առ փրկիչն, զի զերծուսցէ յայնքան վնասուց: Եւ խնամալեօք ընդ վրէժխնդրութի նոցա նայել, և 'ի վայր կործանել զինուք առաքինութե զնոսա, և զօրավիգ ունել զապաւէն կենացն մերոց զՔս Յս. և աստէն զայցելութիւն առնուլ բարեացն ցանկութիւք, գութ առ ընտանիս հաւատոց, անձուկ հեռաւորաց սիրողաց այ, ծարաւ մտերմութե գիւտից հոգևորաց, փափաքումն առ սուրբս, քարոզ խաղաղութե, խոկումն խոնարհութե, քաղցրալից բարբառք խրատուց՝ որ զկարծրացեալ միտս շարժէ 'ի յորդորումն առաքինութե: Զամենեսեան օգտեցուցանել առ խնամն սիրոյ փրկութե, և առ օգուտս 'ի լրումն[1] հոգևորացն, և 'ի շահս բարեաց վայելից, և 'ի համբերութի 'ի նեղութե վայելել 'ի պարգևս շնորհաց, որ տայ 'ի յստակ աղբերէն կենաց: Վասն որոյ աղօթք և խնդրուածք մտերմութբ 'ի բոլոր սրտէ՝ տանի 'ի նաւահանգիստն շնորհօք:

Եւ ճնշեալ զմիտսն 'ի զղջումն արտասուաց յիշատակս աւետեաց խնամալից պաղատանօք եռանդնասէր խանդաղատանօք հեղուլ զարտասուս շնորհալից առ 'ի մաքրութի մտաց և մարմնոց, որ զանմաքրութի ստացեալ ունէին զչար և զաղտեղի ցանկութիս: Զի արտասուք զմեղացն հարուածոց դառնութիւն սրբէն և ողջացուցանեն, և զխոտանն 'ի բաց ընկենուն 'ի մտաց և 'ի զգայութեանց. և լինի ընդ հովանեաւ նախախնամական սիրոյ փրկչին, և առնու յուսով զմխիթարութի: Արտասուք շարժեն զմիտսն առԱծ, և զարթուցանեն յափշութէ[2] մեղացն որպէս

1 Միւսն 'ի շարժումն:

2 Միւսն յափշտակութենէ:

'ի քնոյ, և վառեն 'ի զգուշութիւն զգաստութեան շահաւորն օգտից սիրով։ Արտաքուստ արբուցանեն զհոգևոր ըմպելին 'ի խնամս սուրբ սիրոյն 'ի գութ յիշատակաց բարերարին տեսչութեան քաղցր կամացն 'ի շնորհալից աղբերէն բղխեալ յազատութիւն և 'ի ժառանգութիւն կենդանարար յուսոյն յաւիտենից։

Այսչափ շահք օգտից 'ի զղջմանէ արտասուաց. որ շարժեն զբարս հոգանուտս 'ի գիւտս փրկութեան և 'ի պահպանութիւն այ կամացն, և զմիտս ամփոփեն 'ի հաճոյս այ։ Եւ որքան 'ի յայտնանէ շահք բարեաց, այնքան առաւել վնասք 'ի ծուլութենէ և յարհամարհանաց զարտօսր՝ որ 'ի խորութենէ սրտի յառաջագայի, և 'ի պղերգութենէ արգելեալ՝ դժնդակացն լինի մուտք 'ի չարին ազդմանէ. և շարժեն զմիտս և զանդամս 'ի յանխտիր չարիս. և ելք զղջման և արտասուաց 'ի ծուլութենէ և 'ի խստացեալ ամբարտաւան սրտէ, որ քամահէ զզեղջ շնորհացն և ոչ հոգայ վասն այնր որ զրկեցաւն։ Եւ ընդունի փոխանակ բարեացն զչար զարհամարհութիւն, զամբարտաւանութիւն, զապիրատութիւն, զյամառութիւն, զամբարշտութիւն, զնանափառութիւն, զագահութիւն, զորկորստութիւն, զցանկութիւն, և որ այլ ևս են մուտք չարին։ Եւ որ յայտնի ըմբռնեալ է, դժուարաւ բժշկելի է։

Բայց ոչ անյոյս առնէ մարդասիրութեան բանն որ զղջանան և գան 'ի հնազանդութիւն ահիւն այ, և ընդդէմ չափեն մեղացն զուղղութիւն, անիրաւութեան զիրաւունս, անսրբութեան զսրբութիւն, ամբարտաւանութեանն զխոնարհութիւն, բարկութեան զհեզութիւն, որովայնամոլութեանն զպարկեշտութիւն, հեղգութեան զպնդութիւն, ստութեան զճշմարտութիւն միշտ. անհնազանդութեան զհնազանդութիւն, ագահութեան զչափաւորութիւն, կեղծաւորութեան զպարզամտութիւն, երդմնահարութեան զչերդնուլն, մախանացն զբարերարութիւն, ոխութեան զանոխակալութիւն, խստութեան զքաղցրութիւն, ատելութեան զսուրբ սէրն միշտ. անզղջութեան զզղջումն արտասուաց, անխոստովանութեան անխղճի զխոստովանութիւն խղճի մեղացն, անյուսութեան զյոյսն ուղիղ, թերահաւատութեան զուղեղ հաւատս յանձին հաստատել և այլոց քարոզել զճշմարտութիւն։

Այս է ստոյգ աւանդիցն դէմք ապաշխարութեան. ամ̃ որ ինչ հակառակ է մեղացն՝ առնել զարդարութիւնս ամ̃ որ երեւին եւ որ ոչն երեւին՝ ի խորհուրդս մտերիմս եւ ՚ի յիշատակս աւետեացն ստոյգ ապաշխարողացն, եւ դարձեալ ՚ի սպառնալեաց անապաշխարողացն յամենեցունց տեառնէն։ Յայսոսիկ զգուշանալ եւ ՚ի պատրաստի ունել զհաճոյսն այ̃ ահիւն տեառն, յիշատակօք անվրէպ գիտութե̃ն այ̃ համարս առնելոյ արդար դատաւորին յաւուրն դատաստանի, յորում ոչ ինչ ծածկի ՚ի խորհրդոց եւ ՚ի բանից եւ ՚ի գործոց։

Զի ընտրութիւնք են առաքինեաց եւ պղերգացն, հաւատացելոց եւ անհաւատից, եւ ըստ արժանեացն հատուցմունք։ Պատիւք եւ մեծարանք եւ երանութիւնք յաղթողացն են՝ որք մարտեան ընդդէմ մեղացն եւ հակառակորդին, եւ յաղթեցին եւ պսակեալ փառաւորին. եւ դարձեալ որք ստոյգ ապաշխարեցին զմեղս իւրեանց։ Իսկ ահաւոր սպառնալիք տանջանացն պաշարէ զանիրաւսն եւ զամբարիշտսն՝ ի տոչորումն պատժոց, որ ոչ անկան յապաշխարութիւն։ Եւ զխոնարհեալսն եւ զնուաճեալսն ընդ կարգաւ ապաշխարութեան ընդունի յօթեւանս կենացն ըստ արժանաւորութեան մաքրմանն ըստ բազում ողորմութե̃ն իւրոյ։ Զի նեղեալն եւ վտանգեալն արտասուօք եւ բարի շարժմամբք յողորմութի̃ դարձուցանեն յաղագս սխալանաց ինչ այսպէս զմարդասէր տէրն։

Եւ որպէս տղայքն որ ոչ գիտեն բառիւք զպէտս ՚ի մարցն խնամոցն առնուլ, այլ արտասուօք զպիտոյսն խնդրեն եւ առնուն ՚ի խնամոց սիրոյն, զի ոչ դադարեն ՚ի լալոյ մինչեւ ամենայն խնամք ՚ի մարցն կատարի՝ ապա դադարէ եւ զուարճանայ եւ հանգչի, այսպէս պարտ է մեզ լինել առ բարեգութ տէրն, որ խնամէ զմեզ յաներեւոյթս արարչական սիրովն. որ նստի յանարուեստ աթոռս, եւ բարերարութն̃ իւրով խնամէ զարարածս. որ ՚ի ձեռն նախահարցն ծանոյց զա̃ծգիտութիւն, եւ ՚ի ձեռն մարգարէից եցոյց զապաշխարութե̃ հանգամանս՝ որք դառնան։ Իսկ ՚ի գալստեանն իւրում եբաց զդուռն ողորմութե̃ եւ ասէ. ոչ եկի կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութի̃ խոստովանութե̃ արարչական խնամակալ

սիրովն։ Զի փութացեալք 'ի կոչումն աւետեացն՝ տացուք զպարգևս 'ի շնորհողէն ապաշխարութեն ըղքաւութի. որ յաներևոյթմն զհոգիմն բժշկէ, և յերևելիս զգայարանս։

Ո՛չ Նախ յաւազանէն է թողութի հաւատացելոց յամենասուրբ Երրորդութին Ճշմարիտ խոստովանութե։ Զի ասէ ցաշակերտսն. երթեալ մկրտեցէք, ասէ, զհաւատացեալս յանուն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. և ուսուցէք պահել զամենայն պատուիրեալսն 'ի քէն։ Զի որք 'ի քո մկրտեցան, զքո զգեցան, և եղեն որդիք լուսոյ և ժառանգք արքայութեն վերստին ծննդեամբ։ Զի շնորհօք լինին որդիք տուընջեան, 'ի գիշերային ծննդենէն ազատեալք յիշխանութե խաւարի, և լուսաւոր վարուք կեալ յերկրիս օգնականութեամբ բարերարին։ Եւ ըստ արաւետոից Նորին շնորհաց զհեռաւորս մերձաւորս առնելով և զօտարացեալսն ընտանեցուցանել Ճշմարտեալ հաւատով և անբիծ սիրով։ Եւ զըմբռնեալսն 'ի սատանայէ 'ի մեղս և վասն մեղացն 'ի մահ արդարացուցանէ և կենագործէ և հրաւիրէ յիւր արքայութին և 'ի փառսն զոր պատրաստեաց սիրողաց։

Դարձեալ և յաղագս մեղուցելոց և զպարգևս ապաշխարութեն եցոյց և յայտնի արար առաջնովքն։ Որպէս զԴաւթայ լսեմք մեղուցեալ, և խոստովանեալ դարձեալ և ապաշխարեալ. որ լայր զամենայն գիշերն և զըմպելին արտասուօք խառնէր վասն բարկութեն ա̃յ. յորոյ աչացն վտակք արտասուաց հոսէին առ 'ի չպահելն զպատուիրանն ա̃յ. որ զցանկացող աչսն մաշէր յարտասուս և սրբէր 'ի մեղաց։ Եւ զՊետրոս 'ի Նորայս է իմանալ, որ ուրացաւ և ոչ յիշեաց զյառաջագոյն ասելն ա̃յ. մինչև հայեցաւ յուշ դայ 'ի հաւուն ձայնն. և ելեալ, ասէ, արտաքս՝ ելաց դառնապէս։ Եւ յաղագս ջերմ արտասուացն եգիտ զթողութի. և առաքելական շնորհքն անդէն մնացին, որպէս Դաւթի մարգարէականսն։ Թողում ասել և զայլ ևս զհնոյն և զնորոգս մեղուցեալս և ապաշխարեալս որպէս աստն ա̃ծայինն գիրք, որք ցուցանեն զօրինակս զստոյգ ապաշխարութե։

Նաև այսպէս ոչ փակի դուռն կենաց ապաշխարու-

թեան մինչև 'ի վախճան աշխարհի ։ Զի զհանապազորդ սխալանսն հանապազորդ արտասուօք աւազանին լուանալ և սրբել. և զի հանապազօր մեղանչեմք՝ որ խորհրդով, որ բանիւ, որ լսելով, որ տեսանելով, որ շարժմամբ իւիք այսոքիկ, հանապազորդ աղօթք և լուացք արտասուաց մի պակասեսցէ ։

Զի որ կտակաւն են մեղք, այսինքն ըստ կանոնօք, այնոցիկ ժամանակք որոշեն և զատուցանեն յեկեղեցւոյ և 'ի ժողովրդենէ և 'ի սեղանոյ. զի ըստ մեծի վնասուցն և մեծ ջանք և աշխատութիւք պիտոյանան ։ Եւ որոց նուազ ունին սխալանսն, և բժշկութիւն արտասուօք սրբել ։ Իսկ որ 'ի խորութեան սրտին է աղտ ապականեալ անդամօք; անդ վտակք արտասուաց և հուր և եռացումն հոգւոյ պիտոյանան. որ սրբէ և հալէ և 'ի բաց մերժէ ։ Եւ որ փոքր ինչ սխալանս ունի ակամայ վրիպեալ, զղջանալ և յոգւոց հանել և արտասուօք անդէն իսկ սրբել ։

Այլ որ սաստիկ ունի զվէրս մեղաց, և կամաւ ըմբռնեալ, որ կանոնաւ ունի զանուն և զկարգ որ 'ի մնէ, ունի զհանդամանս սպառնալեաց. բազում ջանք և ջերմեռանդ[1] արտասուք և բեկումն սրտի և որոշումն ժամանակաց ըստ յանցանացն 'ի ներքս բերիցէ առ 'ի լուծանել զդժնդակ ձմեռն խստութեան մեղացն ։ Զի գարունն հոգևոր երևեսցի 'ի շնչել հարաւոյ ջերմութեան հոգւոյն. և 'ի վերուստ սաստիկ անձրևով զհօսանս արտասուաց. նոր երկիր զբոյսս և զծաղիկս բացայայտէ, և տունկք զսաղարթս և զպտուղս առ 'ի վայելս թագաւորաց և ռամկաց, որովք զուարճանան ։ Այնպէս և որ ջերմութիւն հոգւոյն զհոսանս արտասուացն հեղու և լուծանէ զկապանս ձմեռնային մեղացն, արձակին բոյսք առաքինութեան և պտուղք արդարութեան տնկոյն. որով ուրախանան երկնաւորք և երկրաւորք 'ի փառս այ ։

Զի այսպիսի միտս և բարս պարտ է ստանալ ապաշխարողաց. զի ազատեսցին 'ի պարտեաց հարուածոց գեհեննին անշէջ հրոյն և անմահ որդանն ։ Եւ ճշմարտեալ ստոյգ ապաշխարութիւն արտասուաց ա-

1 Ոմանք ջերմեռանդին արտասուաց ։

ւազանաւն ժառանգաւորք արքայութեան եղիցին, զգեցեալ զպատմուճան արդարութեան լուսոյն ճառագայթեալ առաքինութեան հանդիսիւք, պսակեալ և վայելեալ յանվախճան երանութեան ընդ սուրբս ։

Օ ի ապաշխարութիւն է ստգտանելն զինքն և հրաժարել 'ի մնասակարացն և 'ի չար ցանկութեանցն ։ Եւ փոխանակ միոյ միոյ չարեացն զարդարութիւնն ընդդէմ դնել, զի խափանեսցէ զմեղսն, և զարդարութիւն աճեցուսցէ սուրբ սիրով և արտասուալից աղօթիւք, և պահովք ցամաքեցուսցէ զպղտորեալ զանժոյժ բղխումն գիջութեան որ ապականութիւն է յանդամս ։ Զի ջուրք աղբերաց և սրսկմունք անձրևաց զերևելի հուր շիջուցանեն. իսկ առ Աստուած սէրն և ջերմեռանդն արտասուք զհուր ցանկութեան շիջուցանեն, և խափանեն զկամս մարմնոյ, զինքնագործութեան շօշափելեօք զաղտեղի շարժմանցն զհոսմունս. և այլ մի ևս մերձենալ 'ի նոյն գարշութիւնս ախտից, այլ մաքուր մտօք զմաքրութիւն ստանալ ։ Զի մի ապառնացեալ պատուհասն անսրբութեան 'ի վերայ հասանիցէ յանկարծ յորում ոչ գիտիցէ, և 'ի ժամու յորում ոչ կարծիցէ, և տայցէ վրէժս ըստ մնասուցն ։

Այլ սիրել զսրբութիւն 'ի տէր որ 'ի սուրբս բնակէ ։ Եւ զանսրբոցն ասէ. «Որդն նոցա ոչ մեռանի և հուրն ոչ շիջանի. և եղիցին տեսիլ ամենայն մսեղեաց» ։ Եւ զամենայն արկուածս մեղաց 'ի մտաց և 'ի մարմնոյ 'ի բաց թօթափել. մինչ զի կարասցէ ասել, գայ իշխան աշխարհիս այսորիկ մեղասէր, և յիս ինչ ոչ գտանէ զմեղացն նշխար. այլ Քրիստոս ըստ աւետարանին կենաց՝ որ վերստին նորոգեաց ստոյգ խոստովանութեամբ և արտասուօք ապաշխարութեամբ և գթով տնանկաց հանդերձ ամենայն առաքինասէր վարուք յարդարեալ 'ի հաճոյսն Աստուծոյ ։ Եւ մշակք լինել այգւոյն ճշմարտութեան 'ի սկզբան հաւատոց և ուղիղ վարուց, որով կայ 'ի վերայ երկրի և առաքինանայ ։ Եւ ելանելով յաշխարհէս՝ ընդ իւր տանի զարդարութիւն ամենայն, զողջութիւն անմեղութեան, զմանկութիւն անարատութեան, զերիտասարդութիւն անբծութեան, զծերութիւն զմաքրութեան, գլխաւորելով ըստ իւրաքանչիւր հասակացն զամենայն առաքինութիւն, և ընդ-

վարձս առցեն ըստ իւրաքանչիւր վաստակոց յամե-
նեցունց տնէն գործողաց այգւոյն հաւատացելոյ ըստ
ժամանակացն փոփոխմանց ։ Օժանդակ լեալ առ
վերին կոչումն, ուր Քս նստի ընդ աջմէ այ յԵրու-
սաղէմն վերին՝ որ է մայր մեր ամենեցուն . ուր և յա-
ռաջագոյն գանձք առաքինութեան բարեաց ամբարե-
ցան . ուր յոյսն մեր է հաստատեալ՝ անմահ երանու-
թիքն, անսպառ վայելչութիքն, անվախճան ուրա-
խութիւն, անզեղջ բարութիքն 'ի վայելումն Քսի ։
Միահաւան խնդութի երկնաւորաց և երկրաւորաց
երանութի 'ի փառս Քսի գործակցութբ բարերար ե-
րախտեօք սուրբ սիրոյն ։ Որ մատոյց 'ի յորդէգրու-
թիւն Հօր և 'ի խնամս սուրբ Հոգւոյն և 'ի ժառան-
գութի արքայութե իւրոյ ։ Որ աստ արդարացոյց,
և անդ թագ 'ի գլուխ պսակեալ փառաւորէ յածե-
ղէն խրախճանութիւն, հանապազորդ 'ի հրճուանս
յանսպառ բարիսն ամենասուրբ Երրորդութեան ։ Զի
նմա վայելէ փառք իշխանութիւն և պատիւ յաւի-
տեանս յաւիտենից . ամէն ։

## ԵՐԱՆԵԼՈՑՆ ՍՐԲՈՑՆ ԳՐԻԳՈՐԻ

## ԱՌԱՋՆՈՐԴՈՒԹԻՒՆ ԱՄԵՆԱՐՈՒԵՍՏ ԽՐԱՏՈՒ ՀԱՆԳԱՄԱՆՔ ԳԻՏՈՒԹԵԱՆ ԵՒ ԻՄԱՍՏԻՑ

### Ի

ՈՐԳԻՍՄԻ գոհութ՟ի և օրհնութ՟ի և փառս տալ արժան է ամենակալ ՟տրութ՟են ամենառատ բարերարութ՟են. որ ոչ թողու 'ի խնամակալ սիրոյն իւրոյ, այլ յանձանձէ և աղբիւրաբար բաշխէ զշնորհս յարարածս իւր: Նախ զի իշխան կացոյց և տէր 'ի վերայ երկրի, որ ընդ իշխանութ՟բ են վերնոցն. զի ծանիցուք զնորա խնամս արարչական սիրոյն, և աշակերտեալ նորա պատուիրանին՝ կատարեսցուք զարդարութիւն ամենայն, և առցուք զհատուցումն բարի 'ի ժամանակի այցելութ՟ե. և ըստ ժամանակի՝ անապականութ՟ե վարուցն հետևող լինել:

Որպէս 'ի սկզբանէ նախաստեղծին կեանքն յարդարեցան 'ի ՟նէ անմեղութ՟բ, զայն սուրբ սէրն հաստատել 'ի մեզ: Որպէս և ՟Քս սիրեաց զմեզ, և զանձն իւր մատոյց պատարագ 'ի հոտ անուշից: Որ բարկացուցաք զարարիչն, զի ոչ պահեցաք զպատուիրանս նորա: Զխնամս սիրոյն իւրոյ ոչ որպէս առ երախտաւորս եցոյց, այլ յապախտաւորս որպէս ՟այ վայել է: Զի զբարիսն զոր եցոյց մեզ ՟այծ, ոչ ըստ մերում արժանաւորութ՟ե, այլ յաղթեալ յարարչական սուրբ և անբիծ սիրոյն՝ դարձաւ յողորմութ՟ի: Որ և ոչ իսկ փոխարէնս խնդրէ 'ի մէնջ փոխանակ երախտեացն. այլ կամի՝ զի կեցցուք արդարապէս, և ժառանգորդք լիցուք երկնից արքայութ՟են:

Ո ի նա է լոյս և կեանք մեր և աղբիւր բարեաց: Զի ոչ խնդրէ աղբիւր ջուր, և ոչ արեգակն լոյս. այսպէս և ՟այ տուող է բարեաց և ոչ առող ինչ յաղագս մեծի բարերարութ՟են իւրոյ և անկարօտ լինութ՟են: Այլ որ առ միմեանս լինին երախտիք, զայն իւր

համարի, և ինքն առնէ զփոխարէնս յերկրի և յեր-կինս որ կան և մնան։ Զի միմեանց բարի առնել, փոխարէնս 'ի նմանէ առաքին երևելիք և աներևոյթք։ Զի որպէս արիւնն Աբելի առ ած բողոքեաց, որ սպանաւ 'ի Կայենէ և պատժի[1] 'ի տեառնէ, սոյնպէս բարի բողոք զած 'ի բարի խնամս շարժէ բարեգործաց։ Զի որք ոչ խնդրեն զվրէժս 'ի զրկողաց, ինքն առնու վրէժս ըստ արդար դատաստանին. զի ըստ արժանեացն է հատուցումն առ բարեգործսն և առ չարսն։

Եւ այ̃ նմանել այս է, որ ապերախտին երախտաւոր լինի, զկորուսեալսն խնդրելով, զգտեալսն պահել իւրով աշխատութբ̃ և ջանիւ։ Նմանել Որդւոյն այ̃՝ որ ետ զանձն իւր 'ի մահ վասն մեր, և կամաւոր չարչարանօքն ազատեաց 'ի ծառայութենէ մեղաց, և բարեաց կենաց և աւետեաց զմեզ հրաւիրեաց, և Հոգւոյն սրբոյ ընդունելութեան արժանի արար։ Եւ զամենակալ Հօրն զանհամեմատ զերանութիւն խոստացաւ. զի միաւորական Երրորդութեն միշտ հանգուցք օրհնութիւն, որ հանապազ 'ի բաց առնի զդրունս փրկութե̃ կենաց հաւատացելոց, և ապաւէն ամենեցուն որ կարդան առ նա։ Եւ աշակերտեալ առաջնորդական բանին՝ գործակից լինել բարեբար կամացն, և խորհել զբարին և առնել, և լնուլ զհաճոյս արարչին 'ի խնամըս մերձաւորաց և հեռաւորաց։ Զի զփոխարէնսն առցեն զբարեացն ըստ անմեղութե̃ սուրբ սիրոյն. և 'ի նոյնս յառաջանալ 'ի լաւսն, և պատերազմել ընդդէմ մեղացն առաքինութե̃ հանդիսիւք. և 'ի բոլոր սրտէ ապաւինեալք 'ի խնամս մարդասիրութեն, և լուծել զամ̃ բոյսս անօրէնութե̃ 'ի մտաց և 'ի զգայութեց հանդերձ ամենայն աղտեղի և չար ախտիւք։ Եւ 'ի բաց բառնալ զհպարտութիւն 'ի միջոյ, զագահութի, զխորամանկութի, զբարկութի, զոխակալութի, զնենգութի, զստութի, զերկմտահաւատութի, զնախանձ, զորովայնամոլութի արբշռաց։

Զայսոսիկ վնասակարութիւնս և որ սոցին նմանն են դժնդակութիւնք մեղաց՝ սպառնալեօք յաւիտենական տանջանացն արտաքս հանել, և մերկել զբարեացն

1 Մեքն գրոցն ։

տունկսն 'ի միտս և 'ի վարս հանդերձ յարմարական առաքինութեամբքն և անարատ սրբութեամբ և ճշմարիտ հաւատով, խրախուսեալ յԱստուած յուսով աւետեացն խոստմամբքն. զպատուութեան առհաւատչեայ պատ առեալ, և հրաւիրեալ 'ի պատրաստեալ արքայութիւն երկնից 'ի յոյժ կենդանեաց; 'ի բարութիւն անվախճան երանութեանցն, որ ոչ մտօք իմանալի է և ոչ բանիւ ճառելի որ անդէն երանութիւնքն:

Ոչ՝ որպէս մանկունք որ յորովայնի մարցն լինին յապաժոյժ, և 'ի խաւարի թաղեալ. և ոչ գիտեն զերկրիս վայելչութիւն, զարեգական պայծառութիւն, և զլուսնի և զաստեղաց և զժամանակաց և զամսոց շրջագայութիւն, և զծառոց և զտնկոց պտղաբերութիւն, և'ի վայելս կենդանեաց և որ այլ ևս անասնոց նախիրք և գազանաց և թռչնոց որ 'ի կերակուր և որք 'ի հնազանդութիւն են անկեալ, որք 'ի ցամաքի և որք 'ի ջուրս են ղուզակք՝ որ պատրաստեալ որոգայթիւք ըմբռնին յորսողաց, և որ այլ ևս իցեն վայելչութիւք և պայծառութիւք հանդերձից, և ոսկւոյ և արծաթոյ և ականց պատուականաց՝ որ 'ի զարդ մարդկան գործեցաւ և 'ի փառս թագաւորաց՝ յորս ուրախանան աշխարհասէրք, արդ որպէս ոչ գիտել մանկանցն զայս կեանս և ոչ նման է յորովայնի կենացն, սոյնպէս և ոչ մեզ իմանալ զհանդերձեալ կեանսն. և ոչ համեմատի այս լոյս և կեանք առ այնր կեանք և լուսաւորութիւն փառաց ամենազօր տէրութեան, զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և 'ի սիրտ մարդոյ ոչ անկաւ զոր պատրաստեաց Աստուած սիրելեաց իւրոց զանվախճան երանութիւն 'ի Քրիստոս Յիսուս:

Նա և ոչ որք յաշխարհիս են նեղութիւնք և վիշտք և չարչարանք և տանջանք հրով և ջրով որպէս Սոդոմայն և Ջրհեղեղին, ոչ համեմատեն անշէջ հրոյն և յաւիտենական տանջանացն՝ որ պատրաստեալ է ամբարշտաց և մեղաւորաց: Զի Աստուած զմիտս և զզգայարանս գործի կենաց ստեղծեալ ամենիմաստ կամօք 'ի սրբութիւն, 'ի ճշմարտութիւն, յամենայն բարեգործութիւն. և չարհիւք բարեացն լցուցէ զանձն իւր և զայլս, և ուրախ արասցէ զտէրն. զի 'ի բերանոյն քարոզեսցի ճշմարտութիւն հաւատոց և անբիծ վարուց: Զի ար-

թուն և զուարթուն պահեսցէ զմիտսն և զամենեսին զհաւանեալսն յողջախոհութիւն. և ահիւ և սուրբ սիրով կալ 'ի հնազանդութիւն հոգևոր օրինացն, որ ատել տայ զչարն և սիրել զբարին, որ քաղցր և անոյշ բարեօք լի է. և գովելիք գոհութիւնքն 'ի վեր ելանեն առ Ած, և պատրաստեն զերանութիւնն արքայութեան երկնից: Զի հաճոյացան այ 'ի նեղութեան և յանդորրու. և անքակ մնացին 'ի սիրոյ Նորա ճշմարտեալ հաւատով, խաղաղասէր և բարեսէր առ ամենեսեան. մեկնեալ յամ իւրաց չարեաց, յերևելեաց և յաներևութից սխալանաց: Զի «Ես եմ, ասէ, Ած որ ատեմ զանիրաւութիւն և սիրեմ զարդարութիւն»: Եւ 'ի յայսմ երևին սիրելիք այ և ընտանիք հաւատոց, զի զնոյն սէր ունիցիմք առ սրբութիւն և արդարութիւնն Այ միշտ: Եւ դարձեալ զատելութիւն առ զազիր ցանկութիւնս և առ ամենայն մեղս: Զի գրեալ է՝ ասէ. «Զմեղս ատեցի և անարգեցի, և զօրէնս քո սիրեցի»:

Ոչ իր այսպիսիքն են բերան այ, որ դարմանօք կենդանարար խրատուն լի է, և որպէս յաղբերէ բղխէ զկենացն խրատս: Զի Ամ որ կարդասցէ զանուն Տն կեցցէ, որ զյայսն յարդարէ 'ի Քս Յս: Իսկ որ ապիրատս խօսին առ 'ի կորուստ բազմաց խորամանկութեան, այլանդակութեան, պատրանաց և պէսպէս մոլակարութեանց, որ վրիպեցուցանեն զոգէսս 'ի ճշմարտութեան աւանդիցն, որ տայցեն վրէժս վասն կորըստեան անիրաւելոցն ըստ արդար դատաւորութեանն այ. որ ժառանգորդ լինին անշէջ հրոյն և յաւիտենից տանջանացն:

Այլ աչքն որ ճշմարտութեամբ զտեսութիւն ունին, առաջնորդութեամբ իմանալեօքն անվրէպ զգուշանալ 'ի վնասակարացն. Այ անդամոցն անարատ և սուրբ և անբիծ զտեսութիւնն հրահանգել յԱծ: Զի ճրագ մարմնոյ ակն է՝ ասէ տէրն: Զի որոյ աչքն լուսաւոր են, Այ մարմինն լուսաւոր եղիցի. որ չունի մասն խաւարի զմեղացն իւրս, այլ լուսաւորեալ կացցէ 'ի լոյսն այ: Ապա եթէ խաւարեալ է 'ի նշողիցն լուսոյն 'ի ցանկական աղտեղութիւն և յԱմ աշխարհասէր պառրանս երևելեացս ամենաչար, որ շղթացուցանէ 'ի ճըշմարիտ տեսութեէ, և 'ի մեղացն որպէս բիժ զանկամ

եկեալ՝ ոչ թողացուցանել տայ զպատշաճն՝ այլ զխաւար չարին, նոքա են որ ժառանգորդ լինին խաւարին արտաքին, ուր լալ աչաց և կուրութի յանշէջ հուր գեհենին ։ Զի երկաքանչիւրոցն է հատուցումն, ճշմարտասէր տեսողացն և ցանկասէր վատթարատեսացն ։

Նա և լսելիք որ բանայ զդրունս ունկնդրութե ճշմարիտ քարոզութե, և ընդունակ առնէ կենդանարար բանին զմիտս և զզայարանս ամ հաւատոց և ամ ճշմարտութե ըստ պատուիրանին յերևելիս և յաներևոյթս, ընդ նոյն լսելիս մտանեն բարբառք աւետեացն. «Եկայք մտէք, ասէ, յուրախութի տեառն, և վայելեցէք զբարիսն զանճառս և անվախճանս, որ 'ի սակաւուդ հաւատարիմ երևեցայք յերկրի» ։ Իսկ որ խնու զականջսն առ ճշմարտութի աւետարանին, և մուտ առնեն կորստեան բարբառոյ և ամենապատիր փսսակարաց, և առնեն զմիտսն բոյն խժից և քարբից՝ զի մի առցեն զկենաց դեղ զզայութեցն 'ի դեղատուէ ամենայն բանիցն, լսելոց են զբօթ և զզոյժ ահաւոր ապառնալեօք 'ի տեառնէ. «Երթայք յինէն անիծեալք 'ի հուրն յաւիտենից, որ պատրաստեալ է սատանայի և հրեշտակաց նորա յաւուրն այցելութե» ։

Նա և հոտոտելիք հոտոցն են զգայութիք, որք որոշեն զանոյշ սրբոցն հոգւոցն զհոտ բուրմանն շնորհացն. որ սրբեալ են յամ գարշութեանց ախտից մարմնականաց, ըստ Առաքելոյ. «Հոտ անոյշ եմք Քի 'ի մէջ փրկելոցն և 'ի մէջ կորուսելոցն. ոմանց հոտ 'ի մահուանէ 'ի մահ, և ոմանց 'ի կենդանութենէ 'ի կեանս. և առ այս ո՞վ իցէ բաւական» ։ Որք որոշեն ըզլաւն 'ի վատթարէն՝ զհաւատոցն և զվարուցն ամբծութի, որք վայելեն յանոյշ բարիսն ։ Իսկ որ զհոտ անսրբութե և զամբարշտութեան ոչ որոշեն և զաշխարհական ցանկութեց՝ որ լին է ժահահոտութե և անառակ և անխտիր շարժմամբք, հրաժարեալ 'ի շնորհալից հոտոցն, առնլոց են ախպախաքն զհոտ ժախից հարուածոյն անշէջ որդանցն և կիզման հրոյն. և զրաւին 'ի ներքս յապաժոյժ տանջանսն 'ի հաշուումն և 'ի մաշուումն հոգւոց և մարմնոց ։

Այլ ձեռք՝ի խնամս տեսչութե գործաւորութեան տու՝ի պտղաբերութի յարդարեսցին միշտ, և գլորելոյն և կարօտելոյն օգնական և ձեռնտու լինել ըստ ամենայն պիտոյից, և՝ի գործ այ ոչ դանդաղանօք. զի զանձին պէտս ինչ իւրաց և զմերձաւորաց և զհեռաւորաց ստուգապէս ներգործեսցէ ըստ շնորհելոյ նմա ՚ի տեառնէ աջողութիւն: Այս ձեռք առնլոց են՝ի տնէ զվարձս ազատութե, զմուրհակն որդեգրութե, զպսակն անապական՝ որ փառօք և պարծանօք յօրինեալ է՝ի ձեռաց այ: Իսկ ձեռք որ ըստ աղտեղի ցանկութեց՝ի յամօթոյն շարամերձեալ ինքեան և կամ գործակցաց ախտասիրաց, և դարձեալ որ գողանայ, որ տանջեն և նեղեն և սպանանեն, այն ձեռք կապին հրեղէն կապանօք և մատնին անվախճան տանջանացն անշէջ հրոյն, և ջնջին՝ի կենդանի գրոյն տախտակացն Քսի:

Այլ ոտք որ եղեն երիվար չքնաւթե և խաղաղութե սուրբ վարուց և ճշմարիտ քարոզութե առ ամենայն օգուտս հոգևորս՝ի հեռաւորս և՝ի մերձաւորս ՚ի հաճութե կամաց տէրութեն, և արհամարհեցին զաշխատութիս ոտից առ հանդէս վերին կոչմանն, այն ոտք եղանին՝ի գրունս կենաց և մտանեն յօթևանս ուրախութե հարսանեաց զարդուն վայելչութե ընդ աջմէ մեծութե յանանց ուրախութեանն: Իսկ որ զարտուղեցան ոտք յարդարութե ճանապարհէն, և զհետ եղեալ մոլորեցան՝ի չար անդր՝ի վտասակարան ընթանալով, յանօրէնութի, յաւազակութի, յապիրատութե, ՚ի ստահակութի, անիրաւ յամենայն ճանապարհս գնալ որ տանի ՚ի կորուստն յաւիտենից, այնպիսի ոտք մեկնեալ ՚ի կենաց անտի առաքին՝ի վիհս դժոխոց, որ ոչ իցէ վախճան և կամ հանուստ ՚ի կապանաց տանջանացն լուծանել:

Այլ իմաստք խելացն՝ որ բնակեալ է յուղեղն որ ՚ի գլուխն է, որ է ՚ի վերայ ամենայն անդամոցն պսակ՝ և զգայութեցն գործարան, շարժմանցն առաջնորդ, և տեսուչ և վարդապետ և հրամանատար ամենայն անդամոցն: Որ զթիւրեալ անդամն ուղղէ, զվրիպեալսն հաստատէ, զանգէտսն իմաստնացուցանէ, զկարօտեալսն լցուցանէ, ամենայն հնարիւք զգիւտս

փրկութեան անձինն ստանալ և այլոց, և լինի տուն գանձուց հոգևոր իմաստից մերձաւորաց և հեռաւորաց ըստ շնորհելոյն նմա 'ի Հոգւոյն սրբոյ՝ որ աղբիւրն է ամենայն բարեաց և իմաստից, տուող ծագէ լոյս գիտութեան և զամենայն մարմինս լուսաւորէ ըստ Քսի աւետարանութեան սուրբ և բարի հանդամանցն, և լինի զամենայն անդամս երանութիւնք ըստ ճշմարտութեան բարերար կամացն, և առնու զթագ արքայութեան որ 'ի Քս: Իսկ խելք՝ որ մոլորեցան 'ի ճշմարտութեան իմաստիցն, և անկան 'ի ցանկութիւնս ախտից և յամենայն վնաս անիրաւութեան անխնայ մեղացն, և փոխանակ կենաց մահու պատճառք եղեն անձանց և բազմաց, և նոքա կրեն սաստիկ պատուհաս. «Կորիցեն, ասէ, մեղաւորք յերկրէ 'ի դըժոխսն, և ամբարիշտք ոչ ևս գտցեն զհանգիստ 'ի չարաչար տանջանսն»: Զի այս է որք 'ի վտանգս անկանին, չար կորուստ է նոցա և մութ և խաւար 'ի չարաչար և դառն տանջանացն, և զլոյս ոչ տեսանեն, և ոչ զայլ ոք 'ի մխիթարութիւն առ տանջանսն:

Իմանալի է և զսիրտն՝ որ ընդունարան է հոգւոյն շարժմանց. «Զսիրտ սուրբ հաստատեա յիս Ած, և զհոգի ուղիղ յանձինս նորոգեա»: Որ խնդութեամբ յուսոյն վերաստեղծու 'ի զգայութիւն առաքինական վարուց, և շարժէ զամենայն անդամս 'ի վատթարացն 'ի լաւագոյնսն բարի խորհելով. առհաւատչեայ յուսոյն առնուլ զազատութեան զկտակ, և մըտանել 'ի ժառանգութիւն արքայութեան երկնից: Իսկ որ 'ի սրտէն բղխէ զգունդս չարութեան, որպէս ասաց Տէրն, զամենայն դժնդակացեալս 'ի սրտէն, զչնութիւն, զամբարտաւանութիւն, զբարկութիւն և զայլ ամենայն չարիսն, նոքա ելանեն 'ի խնամոց բարերարին 'ի խաւարն արտաքին և 'ի կորուստն յաւիտենից. զոր ոչ բաւեմ ասել զայնքան աղէտս տանջանացն:

Եւ իմանալ և 'ի փորոտին սրբութիւն ըստ ամենայնի. որով ներքին մարդն նորոգի օր ըստ օրէ, որպէս ասաց Առաքեալ: Զի առժամայն թէ և նեղութիւնք պյաճախութիւն բարեացն գործէ յանձինս 'ի ցաւս և 'ի հարուածս փորոտեացն մի ըստ միոջէ՝ որք զանուանսն ունին, լեարդ և թոք և փայծաղն և ա-

ղիք և երկիւղածունք. այնպէս տնօրինեալ, որպէս 'ի սկզբանն էին առանց սխալանաց: Եւ ամենայնիւ մեղուցեալ երևելի մարմնով և աներևոյթ հոգւով և ամենայն փորոտեօքն, դարձեալ լինել բարի խորհրդոց ընդունարան: Զի ամօթոյ անդամքն առաւել ևս պարկեշտութի՟ ունին, ասէ Առաքեալ. այսինքն զանարատ սրբութի՟ և զամբիծ մաքրութի՟, մեռուցանելով զնա Ճգնաւորական պարկեշտութե՟ք, և զհուր ցանկութեան հրով Հոգւոյն և շնորհալից արտասուօք շիջուցանել:

Օ ի ամենայն անդամօք և փորոտեօք և հոգւով 'ի կամակար մտաց պարտաւորեալ՝ և արդարացաք 'ի ձեռն լուսաւոր աւազանին և վերստին ծննդեանն շնորհօքն Ք՟սի: Որ ազատեաց զմեզ 'ի ծառայութենէ մեղաց յազատութի՟ նորոգման իւրոյ. զգեցաւ զնոյն մարմին և զհոգի, և խառնեաց ընդ ա՟ծութեանն իւր յաղագս անբաւ սիրոյն իւրոյ, և զամենայն կիրս մարդկայինս կրեաց բաց 'ի մեղաց. և զմեզ յորդորէ հայել յելս գնացից իւր, և նմանող լինել Ճշմարտութե՟ սուրբ վարուցն մարմնաւորաց. զի եթէ կցորդեսցուք չարչարանացն՝ և փառացն հաղորդեսցուք 'ի սիրոյն նորա:

Եւ պատուիրան առաք սիրել զնա, որպէս և նայն սիրեաց զմեզ, և ետ զանձն իւր փրկանս ընդ ամենեցուն: Զի յայս երկու պատուիրանս օրէնք և մարգարէք կախեալ կան ասէ Տ՟րն. սիրելն զԱ՟ծ և սիրել զընկերն: Զի որ սիրէ զԱ՟ծ, հեռի է յամենայն անիրաւութենէ յերևելեաց և յաներևութից, և մերձ յամենայն արդարութի՟ և 'ի սրբութի՟. զի իշխանութի՟ առեալ ա՟ծային սիրոյն՝ խափանէ զանիրաւ սէրս որ գերեն զմիտս և զզայարանս: Նմանապէս և որ զընկերն սիրէ նմանութե՟ք Ք՟սի սուրբ սիրոյն, որ եհեղ 'ի մարդիկ առատապէս: Զնոյն սէր, ասէ Առաքեալ, յանձին ունել. համաշունչք և միախորհուրդք առ հաՃոյս Ա՟յ: Փախչել յանձնասիրութենէ պարտեաց, և խոնարհութե՟ք առաւել համարել զընկերս քան զանձինս: Զի հոգևոր և սուրբ առ Ա՟ծ և առ ընկերս Ճշմարտեալք, երկնայնոցն լիցուք ժառանգորդք: Որ զսերմն բարի սերմանեաց Ք՟ս, և թշնամին արդարութե՟ սատանայ՝ զորոմն անիրաւութե՟. զոր Ք՟ս հրա-

մայէ խլել 'ի ժամանակի և նիւթ հրոյ արկանել. և զբարի սերմանսն փչեցուցանել, որ բերէ պտուղ ըզհարիւրաւորսն Կ. և որ ըստ իւրաքանչիւրոցն է սերմն առաւել կամ պակաս սերմանեալ:

Եւ սատանայ 'ի սկզբանն ոչ թշնամի արարաւ, այլ յանձնիշխան կամացն եղև հակառակ բարւոյ. զի ըստ եբրայեցւոց բառիցն Հակառակ թարգմանի: Որպէս և զՊետրոսէ լսեմք 'ի Տ̃նէ. ասէ. «Երթ յետս իմ, սատանայ. զի ոչ խորհիս զԱ̃յն, այլ ըզմարդկանն»: Որ անգէտ էր փրկական չարչարանացն, և հակառակէր արգելուլ: Եւ ամենայն որ բարւոյ հակառակ կայ, սատանայ անուանի:

Զի ամենայն արարածք 'ի բարերարէն բարի ըստեղծան. և 'ի կամակար մտացն եղեն չար դևք: Զի զսատանայ անձնհաճ հպարտութիւն իւր ընկեաց 'ի փառաց. Նմանապէս և զմարդիկ որ զնոյնն ախտացան 'ի սատանայի խաբմանց՝ զա̃ծութեանն զպատիւ խոստանայր, զի ա̃ծամարտ լիցին իբրև զինքն: Եւ Գաբրիէլ հրեշտակապետ էր, այլ աւետաւոր լինի առ կոյսն, զուրախ լեր բերկրեալն աւետարանելով և ազգի մարդկան փրկութ̃ի: Որ 'ի ձեռն մարմնանալոյ Որդւոյն Ա̃յ որով ազատեցան տիեզերք 'ի յանցուածոցն որ 'ի սատանայէ՝ պարտեցան և զմահ ըստացան: Զոր Ք̃ս կենդանացոյց և արար հաշտութ̃ի, արարիչն ընդ արարածս. և հրաւիրեաց զհաւատացեալս յամենասուրբ Երրորդութիւնն առաքինասէր վարուք յերկնից արքայութ̃ին: Զոր և դևքն խոստովանէին Որդի Ա̃յ՝ և զիւրեանց զպատիժս. «Գիտեմք զքեզ ով ես՝ Որդի Ա̃յ. որ եկիր յաշխարհ, և յառաջ քան զժամանակն տանջես»:

Զի եթէ չար բնութ̃ի էր և սուտ, զիա՞րդ կարէր արդար ասել զեղեալսն և զլինելոցն դևքն. զի չիք ոք եղեալ բնութ̃ի չար, այլ 'ի կամաց և 'ի գործոց իւրոց առնու զանուն ճշմարտիւ, և ըստ չար կամաց ունի զհատուցումն: Վասն այսորիկ որք ուսուցանեն զչարն և որք ուսանին, առնուն զհատուցումն յանշէջ հուրն: Որ հրապուրէ և ուսուցանէ զչար՝ սատանայ է. և որ ոչ հրապուրին և ուսանին զչար՝ մարդիկ: Զի գողն և գողակիցն 'ի միում պատժի են.

և որ այլ ևս չարագործաց հաղորդակիցք իցեն, ընդ-
նոսին տայցեն վրէժս։ Զի «Երթիցեն, ասէ տրն, մե-
ղաւորքն 'ի հուրն յաւիտենից, զոր պատրաստեալ է
սատանայի և հրեշտակաց նորա» որ հրապուրիչք են։

Իսկ զաւետարանին գործակիցսն զքահանայսն մր
և զպատուականս եկեղեցւոյ, որ սրբութեցն են ըս-
պասաւոր հրեշտակային կարգաւորութե, ոչ վարկ-
պարազի համարեսցուք. այլ որպէս յայ կարգեալ 'ի
փրկութիւն հաւատացեալ ժողովրդոց այ։ Զի զա-
ռաջնորդս եկեղեցւոյ 'ի տեղի առաքելոցն կարգեաց
քարոզս և ասաց՝ եթէ «Որ զձեզ ընդունի, զիս ըն-
դունի. և որ զձեզ անարգէ, զիս անարգէ». և դար-
ձեալ ասէ. «Զոր կապիցէք յերկրի, եղիցի կապեալ
յերկինս. և զոր արձակիցէք յերկրի, եղիցի արձա-
կեալ յերկինս»։ Զի իշխանութիւն որ յայ է, զօրու-
թի ունի մեղաց թողութեան, և ախտաժետաց ա-
ռողջութե, և դիւաց հանութե 'ի մարդկանէ։ Զի
զոր այծ կարգէ, զգործս այ գործէ շնորհօքն քսի։
Եւ երախտիք որ 'ի նոցանէ յառաջագայի՝ պարգևք
են. որ զյուսահատսն 'ի յոյս կենդանի ածէ, և զփըր-
կութի աւետարանէ, զմահապարտս և զամենայն յան-
ցաւորս խոստովանութե յապաշխարութի ածէ ըս-
տոյգ և ճշմարիտ վարդապետութե ըստ հոգևոր օ-
րինացն և ըստ աւետարանին փրկանաց 'ի փառս և
'ի գովութի ամենասուրբ Երրորդութեն։ «Զի հրեշ-
տակ տն ամենակալի է, ասէ մարգարէն, և 'ի բերա-
նոյ նորա օրէնս հայցեն»։ Զի որ սուրբք են առաջ-
նորդք բանին և ուսմամբ աշակերտեն 'ի ճշմարիտն,
նոքա առցեն զերանութեանն զփառս և զպսակ ընդ
սուրբ հրեշտակապետս և ընդ ամենայն սուրբս յա-
մենակալ տրութեն։

Այս ընդդրութիք են հրեշտակաց և մարդկան յեր-
կինս և յերկրի։ Արդ հրեշտակապետք և հրեշտակք՝
առաջնորդք սուրբք և ամենայն ընդրեալք և սիրե-
լիք այ։ Արդ 'ի վերին զօրացն որոշեալ 'ի հրեշտա-
կապետացն հակառակ բարւոյ՝ սատանայ անուանե-
ցաւ. և զօրքն իւր՝ դևք, հաւանեալք կամաց նորա
և ապստամբեալք 'ի բարի կարգաց։ Սոյնպէս և սոսա
մարդիկ թիւրեալ 'ի հերձուածս կորստեան և 'ի վարս

անօրէնութեան բազում ժողովուրդք. որք և առաջնորդք կոչեցան, և հպարտացեալ փառօքն[1] անկան. և բազմաց եղեն պատճառք կորստեան, որսացեալք 'ի սատանայէ 'ի նորա կամսն ըստ ամենայն վնասուց։ Զի ճշմարտութե̃ վերակացուք առաքեալք և մարգարէք և քահանայք սուրբք միաբանեալ են ընդ սուրբ զօրս երկնաւորաց 'ի լուսաւորութի̃ վերնոց և ներքնոց։ Եւ ապստամբեալք 'ի մերոց և ամբարշտեալք 'ի բանէն որ աշակերտեցաք զճշմարտութե̃ն՝ օտարացան և յետս կացին. որպէս քուրմք և կախարդք և այլ ևս չարք։

Զի բարի են գործք և արարածք ա̃յ. և անիրաւքն նմանապէս յանձնիշխան կամաց եղեն չարք, դևք և մարդիկ։ Որպէս տաճար բարութե̃ք է Թագաւորի, սոյնպէս բանդք բանդակալաց։ Բարի մասն ուրախութե̃ն և ամենազեղ զարդուքն մտերմացն և բարեխօսք բարեգործացն է։ Իսկ գանն և խրատն և զանազան տանջանքն՝ անիրաւաց և պղծոց է՝ որ անխտիր են յամբարշտութե̃։ Զի բանդ ասի դժոխքն, որ զպոռնիկս և զկախարդս և զսպանողս և զամենայն անիրաւս 'ի տանջանսն ըմբռնէ, որք արհամարհեցին զբանն տ̃ն և ոչ պահեցին զարդարութի̃։

Ապա եթէ իշխանութի̃ դժոխոցն սատանայի է, յայտ է՝ եթէ վրէժխնդիր ա̃յ է ըստ արդար օրինացն սատանայ։ Այլ մի՛ լիցի այսպէս իմանալ. զի և դըժոխք 'ի տ̃նէ վասն նորա պատրաստեցաւ և նորա արբանեկացն և ոչ վասն մարդկան։ Այլ որք ախորժեն զնոյն խորհել և գործել զչար, ընդ նոսա պարտաւորեալ տանջին զանմահ մահն։ Զօրէնսն ա̃յ և զհրաւէրսն երևելի արարածովքս իմացեալ՝ տեսանի՝ զի անձրևք պիտանիք և շայեկան ցօղք զխընամոցն ա̃յ բացայայտեն առ պէտս արարածոց։ Իսկ որոտմունք և կարկուտք և հրացանութի̃ք գուշակեն մեզ զահեղ բարկութե̃ն՝ զսպառնալիս ամբարշտաց և մեղաւորաց, զոր յայտնելոց է 'ի վախճանի։

Զի և ջրհեղեղն համաշխարհական վասն անսըրբացն և պղծոցն 'ի տ̃նէ անօրինաց լինի 'ի ջնջումն, 'ի

[1] Յերկրաւորն օրինակաւն զարդօղն ։

յերկնէ և 'ի յերկրէ պատուհասից. և զարդարոյն պահէ ընդ ամենախնամ ողորմութեան իւրոյ 'ի ձեռն տապանին և զայլ եւս շնչաւորս, թողլով աշխարհի սերմանս։

Նոյն զսոդոմայեցիսն սաստկեաց հրով և ծծմբով, զի հրով ցանկութեան և զաղիր գիջութեան ապականեալք էին. և զարդարն զՂովտ ապրեցոյց 'ի դառն հարուածոց սաստկման։ Որ հող և ջուր և քար և տունկք և բոյսք բնակչօքն հանդերձ տոչորեալ հըրդեհեցան։ Եւ այսոքիւք ցուցեալ եղև ամբարշտացն և մեղաւորացն սաստկագոյն սատակումն յարդար դատաւորէն ա̃յ, և փրկութիւն արդարոց 'ի խնամակալ սիրոյն։ Եւ այժմ տեսանի 'ի Սոդոմ և 'ի Գոմոր բարկութեան ա̃յ պատիժք 'ի հող և 'ի ջուր և 'ի քար և 'ի տունկս։ Զի տեսեալ զայնոսիկ արհաւիրսն այժմ, և երկիցեն 'ի բարկութենէն որ գալոցն է. որք զմեղս իւրեանց որպէս սոդոմայեցւոցն պատմեցին և յայտ արարին, ասէ մարգարէն։ Նա և այլ եւս գայցեն այժմ յաղագս մեղաց սով և սուր և գերութիւն և տարաժամ մահք և պէսպէս ցաւք և հիւանդութիւնք և վտանգք առ 'ի խրատ և յանդիմանութիւն. զի զղջասցին և ապրեսցին 'ի բարկութենէն որ գալոցն է յերկնից։

Արդ յամօթ լիցին ո՛ զսատանայ ասեն խրատու պատուհասիցն տէր, և ոչ զամենակալն ա̃ծ։ Զի յումմէ օրինադրութիւն է, նորա և հրաման պատուհասից և ողորմութեան ըստ իւր խորին իմաստութեան և մատակարարութեան։ Զի բովք է ամենայն մտաց. որ զմտերմացն հանդէսս յայտնէ իւրեանց սիրոյն և երկիւղին, վկայութիւն բարերար երախտեացն 'ի բարերար կամացն յարդարեալ։ Զի ա̃ծ միշտ ցուցանէ զսուրբ սիրոյն իւրոյ զերախտիսն, զտեսչութիւն շնորհաց իւրոց առ հնազանդեալս և ողջախոհս. զի որպէս որդւոց մտերմաց ժառանգութիւն և կեանս պատրաստեաց ամենայն բարեօք։

Իսկ որ ցուցանեն զարհամարհութիւն առ օրէնսն և զանհնազանդութիւն առ կամս նորա, և գնան խոտորնակս և անխտիր յաղտեղի իրս և յամենայն դժընդակութիւնս մեղաց, վասն այսորիկ, ասէ, գայ բարկութիւն ա̃յ 'ի վերայ որդւոցն անհաւանութեան, ասէ Ա-

ռաքեալ ։ Զի ցուցցէ զիւրոյ արդար իրաւունսն արդարոց և մեղաւորաց. զի արդար դատաստանն յերկրի, և 'ի հանդերձեալսն որ կան և մնան երանութիւնք և տանջանք ։

Զի հարուածք որ գան յաշխարհ, վասն մեղաց է իմանալ. զի զղջացեալ զգաստասցին և դարձցին յապաշխարութիւն փրկութեան ։ Եւ առ այնոսիկ ասէ Տէր մարգարէիւն. «Մխիթարեցէք, ասէ, քահանայք՝ զժողովուրդ իմ, զի լի եղև տառապանօք. թողեալ լիցին դմա մեղք իւր, զի ընկալաւ 'ի ձեռանէ Տեառն կրկին զհատուցումն մեղաց իւրոց»։ Զի հարուածք՝ դարձելոցն 'ի թողութիւն մեղաց լինի պատուհասիւքն 'ի վերայ եկելոցն 'ի Տեառնէ ։ Զի «Ես եմ, ասէ Տէր, որ սպանանեմ և կեցուցանեմ. հարկանեմ և բժշկեմ. և ոչ ոք իցէ որ հանիցէ զձեզ 'ի ձեռաց իմոց»։ Զի զամենայն ակնկալութիւն արարածոց դարձուցանէ 'ի ճշմարիտ կենդանի յոյսն, զի մի մոլորեսցին զկնի սուտ կարծեաց և պատիր խաբէբայ բանից այլանդակաց և աղանդաւորաց. այլ յաստուածայնոցն իմացեալք 'ի ճշմարտութիւն աւանդիցն սուրբ գրոց և յուղիղ հանգամանաց. որոշեալ յամենայն սնոտի կարծեաց, 'ի մշտնջենաւոր երանութիւնն վերացուսցուք զմիտս հանապազ ։

Վասն այսորիկ միտք և զգայութիւնք յիշխանական կամաց լի են ամենայն շահիւք իմաստութեան՝ առաջնորդեալ յառաքինասէր վարս յերևելիս և յաներևոյթս ։ Զի նովաւ կեամք և շարժիմք, և նովաւ յառաջիկայսս 'ի բարիսն ընթանամք միշտ յաղագս աւետեացն և անսուտ խոստմանցն ։ Զի նա է արարիչ մեր, և մեք արարածք նորա. զի մեք կարդասցուք զնա Հայր մեր՝ առնելով զկամս նորա, և նա ասասցէ՝ որդիք իմ էք, և ես ընկալայց զձեզ սիրով, այլ և եղէց ձեզ Աստուած, և դուք եղիջիք ինձ ժողովուրդ ասէ Տէր ամենակալ ։ Եւ զի ասէ մարգարէն. «Եկայք որդիք իմ և լուարուք ինձ, և զերկիւղ Տեառն ուսուցից ձեզ»։ Եւ ետ մեզ Որդին Աստուծոյ Հայր կոչել զմիութեան Հայրն իւր և զԱստուած մեր. և ոչ համարեցաւ զմեզ անարգս՝ հաղորդս առնել եղբայրութեանն և ժառանգորդս իւր արքայութեանն ։ Եւ Հայր 'ի վերուստ ասէ

զմիրելութի̃ Որդւոյ և առնել զկամս նորա, և զա-
մենայն որ ինչ 'ի Հօրէ առաքաւ։ Եւ վասն Հոգւոյն ա-
սէ. նա եկեալ ուսուսցէ ձեզ զամենայն կամս Հօր և
Որդւոյ 'ի փրկութի̃։ Զի 'ի Հօրէ և յՈրդւոյ և 'ի
Հոգւոյն սրբոյ աղաւտեալք առցեն շնորհս, և կատա-
րեսցեն զառաքինութի̃ս։

Բայց զարմանալ արժան է, զի անուանք արարչին
յարարածս խոնարհեցան, Հօր առ հարս, և Որդւոյ
առ որդիս, և Հոգւոյն սրբոյ առ հոգիս մարդկան.
զի այսու իմասցուք զառաւելեալսն 'ի մեզ սուրբ սի-
րոյն իւրոյ զնախախնամութի̃ն։ Ապա եթէ զայսքան
երախտեաց և առաւելեալս 'ի մեզ սուրբ սիրոյն զանց
արասցուք, մի թէ անիրաւ ինչ է ա̃ծ որ առնէ զբար-
կութի̃ իւր 'ի վերայ այնոցիկ՝ որ զբարերարութեանն
զսէր արհամարհանօք արհամարհեն, և թողուն 'ի
մտաց զյիշումն առատ պարգևացն և սուրբ սիրոյն զոր
եհեղ 'ի մեզ առատաբար։ Եւ որպէս 'ի ձեռն Մովսէ-
սի առնն ա̃յ այս է՝ դատաստանն. որ ապականնէ բռն-
նաւոր այր զկին տկար յոյժ կամաց, անզօր եղեալ 'ի
նորա զօրութենն, այրն մեռցի, և կինն կեցցէ ըստ ար-
դար դատաստանին. Նոյնպէս է իմանալի մեզ զսա-
տանայի զակամայ 'ի մեզ զսխալանս իրաց ինչ խոր-
հրդոց և կամ շարժմանց անդամոց։ Զի ասէ մար-
գարէիւն տ̃րն. անձն հօր իմ է, և անձն որդւոյ իմ
է. և անձն որ մեղիցէ, նոյն և մեռցի։ Զի կամաց է
մեղանչել անձինն։ Եւ դարձեալ ասէ ցարդարսն. կե-
լով կեցցէ, որ զարդարութի̃ զհետ երթիցէ. և մե-
ռանելով մեռանիցի, որ զհետ անօրէնութեան։ Զի
արդար է տ̃ր և ուղիղ են դատաստանք նորա արդա-
րոց և մեղաւորաց։

Եւ անձնիշխան կամօք կարող եմք զա̃ծ 'ի բարի
կամս դարձուցանել 'ի ձեռն բարի գործոց. և դար-
ձեալ 'ի պատուհաս ըստ չար գործոց։ Զի 'ի մեր կամս
է վայելել 'ի բարիսն և կամ արտաքսել։ Զի ոչ կա-
մի զմահ մեղաւորին, որպէս զդառնալ նորա 'ի չար
ճանապարհէն և կեալ ապաշխարութ̃բ. «Զի ողոր-
մած եմ ես, ասէ տ̃ր, և ոչ պահեմ ոխս դարձու-

1 Միւսն 'ի լուսանցսն ասէ։

ցեղոցն յուղղութիւն։ Զի որում արժան է գթալ կամ ողորմել կամ ներել, ոչ անտես առնէ. այլ որպէս մարդասէր բժիշկ բժշկէ զներքին և զարտաքին անդամսն, և զանբժշկելին 'ի բաց կտրէ՝ որ յայլսն զխնամսն առնեն։ Զի որք ոչ դառնան յապականեալ վարուց, յուշ լիցի նոցա ջրհեղեղին կորուստ և սոդոմայեցւոց հրով տոչորումն և սատակումն, որ աստ դատեցան և անդ դատելոց են ըստ բանին տն որ յաւետարանսն։

Իսկ որ զղջանան և դառնան յապաշխարութիւն, նմանեն նինուէացւոցն. զսպառնալեաց բարկութիւն և զեկեալ պատիժս 'ի տնէ ըստ մարգարէութեն Յովնանու յողորմութի դարձուցանեն. և այցելութիւն տն կանխէ առ նոսա, և ընդունին զխնամս սուրբ սիրոյն։ Իսկ որ խստացուցանեն զսիրտս իւրեանց նմանութե Փարաւոնի, զսոյն հարուածս կրեսցեն. որ ոչ լուան Մովսէսի և Ահարոնի զառ 'ի յայ պատուիրեալս նոցա. որ և անդէն սատակեցաւ իւրովքն, և ժողովուրդն այ ապրեցան։

Ոի մի է ած արարիչ երկնաւորաց և երկրաւորաց, և յանձնիշխան կամս արարեալ զհրեշտակս և զմարդիկ. և 'ի նոցանէ 'ի կամակար մտաց չարք որոշեցան 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ։ Եւ անմարմնոց և մարմնաւորաց սրբոց փառք և պսակք պատրաստեալ կան 'ի տնէ։ Եւ պատիժս և տանջանք և դժոխք դիւաց անմարմնոց չարաց, և մարմնաւորաց ամբարշտաց և պղծոց ըստ արժանեաց իւրաքանչիւրոցն յարդար դատաւորէն։ Զի 'ի գործոց չարեաց ունին զանուանս դևք հանդէպ իւրեանց. և մարդիկ չարք կախարդք և պիղծք յառաջ եկեսցեն 'ի չար անդր և միաբանեալ ընդ չար դևսն։

Այլ որ կամիցի 'ի հակառակացն փախչել և հրեշտակ լինել, ածասէր լիցի, և զհաճոյս նորա կատարեսցէ յամենայն սրտէ և յանձնէ և 'ի զօրութէ, և զընկերս սուրբ սիրով երևելեօք և աներևութիւք. ամենայն բարեաց երախտաւոր լինել հեռաւորաց և մերձաւորաց. սուրբ, անբիծ, անարատ, առողջ, միամիտ, հաւան, հլու, հնազանդ, խաղաղարար, ճշմարիտ, մեկնեալ յամենայն իրաց չարաց. սիրել զբարի և ատել

զչար, և 'ի գործոց բարեաց զբարի անուն առնուլ և 'ի փառս լինել։ Եւ որ 'ի բարւոյն մեկուսանայ, և նմանող լինի սատանայի հակառակ բարւոյ, անհնազանդ, մեղասէր, ցանկասէր, հպարտ, ամբարտաւան, խորամանկ, նենգաւոր, սուտ, բանսարկու, խռովարար, չարասէր և ոչ բարեսէր. մեկնեալ 'ի ճըշմարտիցն, և զչար գործոց զանուն առնու չար, և ըղհատուցումն բարկութեան անմահ տանջանացն. զի ըստ արժանեացն է պարգևք և պատուհասք։

Որդ. մտաւորաց և բանաւորաց տուեալ զանձնիշխան կամս 'ի պատիւ և 'ի փառս, զի փառաւորեսցէ զբարեգործն Ած, և առաքինասէր վարուք յանձնիշխան կամաց յօրինեսցեն անձանց պսակս հրեշտակային կարգաւորութեան. և շնորհս ընդունել 'ի Տնէ յաղագս հանդիսաւոր և սուրբ վարուց առաքելութեն, մարգարէութեն, քահանայութեն։ Զի ճշմարտեալք ըստ ամենայնի առցուք զարքայութիւն պատրաստեալ։ Զի որպէս Այ սեփական է արքայութիւն, և մեզ կազմեցաւ սեփական առնել զարքայութիւն 'ի ձեռն ուղիղ հաւատոց և ճշմարիտ վարուց վասն բազում սիրոյն որ սիրեաց զմեզ և եցոյց զերախտիսն։ Եւ որոց վարք անսուրբք և պղերգ են յառաքինութիւն, և մտախաբք և մեղասէրք, նոքա նուաղեալ են 'ի փառացն Այ. աղարտին, անարգին, անկանին 'ի շնորհացն յամօթ և 'ի նախատինս ամենեցուն։

Եւ վասն այսորիկ Ած և տէրն զարքայութիւն արդարոցն կազմեաց, և մեղաւորացն կպատիժս պատուհասից. զի ծանիցեն ամենեքեան զուղիղ դատաստանն, արդարք և ամբարիշտք։ Եւ մի ոք զարմասցի որ աստ նեղէ. «Զի քաղցրութիւնն Այ, ասէ, զնոսա յապաշխարութիւն ածէ»։ Ապա եթէ ոչ զղջասցին, առանց ողորմութեան դատեսցին յաւուրն բարկութեան երևման։ Եւ տեսցեն մեղաւորք զփառս արդարոց, և կորացեալ հալեսցին 'ի տխրականս և յամօթս յաւիտենական. որ յերկրի մեծ գոլ զինքեանս քան զարդարսն համարեալ՝ զհպարտութիւն ոչ թողացուցանէին տեսանել զինչ արդարքն իցեն և զինչ մեղաւորքըն։ Բայց զկնի վճարելոյն երևի արդարոցն փառք և մեղաւորացն ամօթն յաւիտենից։

Նու այս յայտնի է, զի ոչ տոհմից փառաւորութիւն փառաւոր է առ ա̃յ, այլ առաքինութիւն բարետոհմութիւն: Զի 'ի Հայս ոչ ինչ մեծագոյն և 'ի Պարս՝ քան զարշակունեաց տոհմ. որ և յԱբրահամէ սերեցան ասեն, նա և յա̃մ ազգս թագաւորք երկրի ըստ անսուտ բանին տեառն ամենեցուն: Այլ եթէ ոչ զգաստանայցեն 'ի բարի, աւելի պատուհաս ընկալցին 'ի տեառնէ: Եւ ծառայք նոցա որ հաճոյ եղեն ա̃յ, թագաւորեալք փառաւորեսցին 'ի տեառնէ. և նոքա պարտաւորեալք յաղագս մեղաց պատժեսցին յարդար իրաւանցն: Եւ թագաւորք և իշխանք և դատաւորք եթէ արդարախորհք և արդարակշիռք 'ի յիրաւունս ա̃յ, և արդարադատք ըստ հոգևոր մատենին և ըստ մարմնաւոր, որբոյն և այրւոյն տեսուչք և ա̃մ զրկելոց խնամակալք, և ձեռնտու ա̃մ վտանգելոց, նոքա են հիմունք բարեաց, որ հաստատեալ ունին զաշխարհ հնարագիտութեամբ իւրեանց 'ի հնարս սիրոյ ամենեցուն արարչին: Որով աշխարհի բարին յառաջանայ 'ի գովեստ փառաց շնորհացն ա̃յ, և 'ի գովութիւն ամենազօր տէրութեան Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. որում՝ պատիւ իշխանութիւն և փառք վայելեն այժմ և միշտ և յաւիտեանս. ամէն:

## ԵՐԱՆԵԼՒՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ՎԱՍՆ ՏՐՈՑ ԻՄԱՍՏՈՒԹԵԱՆ ՈՐ Ի ՀՈԳԻՈՅՆ ՍՐԲՈՅ ՊԱՐԳԵՒԵՑԱՒ ՍՈՒՂ ԻՆՉ ԲԱՆՍ

### ԻԱ

ԱՆԲԱՒ են խնամք տնտեսութեան արարչին, և լուսաւորութիւն 'ի յօրինուածս արարածոց իւրոց ։ Զի որում շատն տուաւ, բազում խնդրէ զարմնոյ բարեացն ա՟ծ ․ և որում սակաւն, յաւելուածս շահիցն ըստ առաւելն առցէ զշահն ։ Որպէս յառակս տաղանդացն է իմանալ յաւելուածովն 'ի սակաւուցն, և ընտրողական մտօք, զոր ետ ա՟ծ հրեշտակաց և մարդկան․ զի լիցին արքանեակք բարերարին կամացն և քարոզք շնորհաց նորա, սերմանել զերախտիս նորա ընդ ամենայն արարածս հաւանական կամօք և ընտրողական շնորհիւ ։ Եւ զի գոն առաւելութիւնք իմաստութեան և զօրութեան և մեծութեան յերկինս և յերկրի ։

Օ այս լաւութիւն կանխագիտութեանն ա՟յ կարգեալ է 'ի մեզ․ զի որ բազումն առ՝ առաւել սիրեսցէ, և զառաւել բարիսն ընծայէ ա՟յ․ իսկ որ սակաւն, և այն յա՟յ խորհին գիտութեանն ըստ կարին և զմտերիմ շահիցն զիւրաւն խնդրէ ։ Եւ դարձեալ որ դժնդակ վարս ունին, և առ նոսա է զանազանութիւն չարի առաւել և կամ նուազ ։ Եւ որք դառնան, ոչ անտես առնէ 'ի խնամոց սիրոյն, թէպէտ և արքանեակք եղեն չարին 'ի կամակար մտաց․ զի այսու ցուցցէ բարերարութեան խնամքն ։ Զի մի ոք կարծեսցէ ակնառութ՟ք բաշխել զշնորհս յարարածս, այլ ըստ արժանեացն ։

Առնէ այցելութիւն և անարժանիցն, թէպէտ և ոչ զգան․ զի խաւարեալ է առաջնորդական միտքն, և ոչ տեսանեն զլոյսն իւրեանց ։ Զի մտահոսանան խորհուրդք երկրասիրաց՝ ոչ թողացուցանէ տեսանել զպատճառսն [1] ․ այլ 'ի հոգս վնասակարս ծփին, յօ-

1 Միւսն զպատճառն ։

րոց բարի ինչ ոչ, այլ չար: Եւ վասն այսորիկ արգելեալ է 'ի նոցանէ շնորհն, զի արգելեալ է 'ի նոցանէ սուրբ սիրոյն կամք և առաքինութեանցն յօժարութիւք, բազմագարման երախտիքն կատարեալ հանդիսիւքն բազում համբերութբ՟ և ճշմարիտ հաւատով. որպէս զի արժանի լինէին արքանեակք ճշմարտութեն՟ 'ի կեանս, և փառս անձին և այլոց: Եւ եթէ արդարոցն միայն էր բազմացուցեալ զմիտս իմաստութեն՟, երևէր թէ յաղագս այնորիկ յառաջանան արդարք յառաքինութին՟. այլ ամենեցուն իմացեալ, զի զարդարումն այ՟ երկիւղն յորդորէ, և զմեղաւորս աներկեղութին՟ լքուցանէ: Եւ վասն այսորիկ մեղան և խաւարեցան 'ի խորհուրդս իւրեանց և կուրացան մեղօք անմտութբ՟: Որք զանձինս իմաստունս համարեցան, և յաչս իւրեանց խորհրդականք, և զճանապարհս իմաստութե՟ ոչ ծանեան. զի ոչ է երկիւղ այ՟ առաջի աչաց նոցա: Եւ վասն այնորիկ ապականեցան և պղծեցան, և ընդ ուղիղն ոչ գնացին:

Բայց ած՟ասիրաց իմաստութեն՟ առաջնորդեալ յարդարութիւն ամ՟ 'ի լաւն և յառաւելն, զի միշտ անքակ մնացէ 'ի վերին իմաստութենէն 'ի սուրբ և 'ի խաղաղարար և 'ի պտղովք բարեօք: Զի ստուգութբ՟ կարգօքն լուսաւորեալ 'ի միտս առնու զարդարութի ճշմարիտ, և ուղղէ զիրաւունս արդարութե՟ միշտ: Զի իմաստութի խօսիմ առ կատարեալս, որ գիտեն որոշել զմշտնջենաւորսն յանցաւորացս. զիմաստութի ոչ զաշխարհիս այսորիկ զխափանելոց, այլ որ յայ՟ արդարութիւք են, ճշմարիտ հաւատք և սուրբ սէր, սրբութի և խոնարհութի, հեզութի և ճշմարտութի ամ՟ առաքինութբ՟ յարդարեալ ահիւն այ՟. և զգուշանալ ամենապատիր պատրանաց, և որոշել ընդդրողական իմաստիւք զբարին խորհրդոց և բանից և գործոց: Զի դուռն կենաց իմաստութեն՟ բաց է. և հակառակորդք բազում են գործակցաւ բանսարկուին որ որսայն զոգիս մարդկան 'ի կորուստ: Այլ ած՟ ոչ թողու զյուսացեալս իւր, որ կարդան առ նա 'ի տուէ և 'ի գիշերի, և խնդրեն զողորմութի և զյաղթութի առ ամ՟ չարաստկարութիս դիւաց. զի փառաւորեսցի ած՟ այժմ և միշտ և յաւիտեանս յաւիտենից. ամէն:

## ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ՎԱՍՆ ԱՆՓՈՓՈԽ ԻՆՔՆՈՒԹԵԱՆ ԷՈՒԹԵԱՆՆ ԱՍՏՈՒԾՈՅ

### ԻԲ

Որ տկարութիւն դնէ ա͞ծութեան զօրութեանն, արտաքոյ ճշմարտութեան հաւատոց է։ Զի ասեն, երբեմն կարող և երբեմն ոչ։ Անմիտք. եթէ ա͞ծ տկարանայ, ո՞վ է որ զօրացուցանէ։ Ի բաց լիցի չար վարդապետին և չար ուսմունքն. զի ա͞ծ կարող է և կատարեալ. ոչ երբէք նուազէ 'ի կատարելութենէ և 'ի զօրութենէ. այլ զամենեսեան լնու և զօրացուցանէ, և ինքն ոչ յումեքէ լնու և զօրանայ։

Վասն այսորիկ արարչութեան անուն հաստատեալ կայ ա͞յ միշտ. և 'ի հրեշտակաց և 'ի մարդկանէ զառաքեալս և զմարգարէս և զսուրբս ընտրեաց, զի եդիցին վկայք ճշմարտութեան ա͞ծգիտութեան և արդարասէր և սուրբ վարուց. այլ և զօրութե͞ք, նշանօք և արուեստիւք, զի նոքօք ա͞ծ փառաւորեսցի։ Եւ ոչ օգնութիւն առնու արարիչն յարարածոց յերկնաւորաց և յերկրաւորաց. այլ նա նոցա է օգնական և զօրացուցիչ։ Զի որպէս մարգարէին ասէր ա͞ծ, թէ «Մինչև ստեղծեալ էի յորովայնի՝ գիտեմ զքեզ. և մինչև ելեալ էիր յարգանդէ՝ սրբեցի զքեզ շնորհօք մարգարէ»։ Այնպէս ըստ կանոնս գիտութեան իւրոյ հրաւիրէ և կոչէ և արդարացուցանէ և փառաւորս առնէ սիրով։

Զի ամենայն արարածք յարարչէն միշտ կարօտանան օգնականութեան, և ոչ արարիչն յարարածոցս։ Զի անփոփոխելի է ա͞ծ, և փոփոխումն ունին արարածք. որպէս տղայն յերիտասարդութիւն, և երիտասարդն 'ի ծերութիւն, և ծերն յապականութիւն. և որպէս գարուն յամառն, և ամառն յաշուն, և աշունն 'ի ձմեռն՝ որ խափուցանէ զա͞մ կենդանեաց յորդորումն և զանկաց և

զբուսոց։ Եւ արեգակն փոփոխումն ունի ըստ ժամանա-
կաց ժամանակաց ըստ սահմանելոյն այ զերկայնութն
աւուրց և զպակասութն։ «Ի ծագաց երկնից ելք նո-
րա, ասէ. հանգիստ նորա ի նոյն. և ոչ ոք իցէ՝ որ թա-
քիցէ ի լուսոյ տապոյ նորա». և այսպէս կայ ի սպասա-
ւորութն ըստ հրամանի արարչին յարարածս։ Նմա-
նապէս և լուսին զիւրն ունի սպասաւորութն զժա-
մանակացն զփոփոխումն ի մաշելն և ի լնուլն. զի
նովաւ ծանիցուք զմաշումն երկրաւորացս և զնորո-
գումն յարութն։ Այլ և աստեղք սպասաւորեն ի
գիշերի նաւագնացաց, և ըստ այլ ևս շարժմանց առ
ի պէտս մարմնաւորաց. այլ ոչ ըստ հեթանոսական
բարբանջմանցն, որ բախտս և ծնունդս ասեն։

Ո ի ած է որ արար զամենայն և յօրինեաց, և սահ-
ման եդ և ոչ անցանեն ըստ կարգն։ Եւ ամ արա-
րածք ի նմանէ են, և կան ունին ի խնամակալ զօրու-
թենէն յօղուածովք իմաստութեան։ Եւ գիտութիւնք
հնարից և արուեստք պիտոյից և կարգք յօրինուա-
ծոց և չափք կշռոց ի նորա տեսչութենէ և ի խնա-
մոց յօրինեալ է։ Եւ չիք ոք գեր ի վերոյ քան զնա և
կարող, որ ի նմանէ առնու զհնարագիտութն կամ
զզօրութիւն։ Զի ինքն իսկ է ած յամի աղբիւր բա-
րեաց, որ լնու զերկինս և զերկիր և որ ի նոսա արա-
րածք են։ Որ յոչընչէ արար զամ, և դարձեալ եղ-
ծանէ որպէս և կամի։ Նորա առաջի է գիտութն և
հանճար և իմաստութն և զօրութն։ Որպէս և յա-
րարածս է տեսանել. որ զօրութբ բարձեալ ունի
զջուրն երկինք՝ որ ի վերոյ քան զնա, և երկիր զծով
և զգետս և զլերինս և որ այլ ևս արարածք իցեն։
Եւ ոչ կարօտանայ սեանց և օգնականի և հիմանց եր-
կինք և երկիր. այլ զօրութբ նորա պահեալ կան, և
ոչ ապականին առանց նորա։

Արդ որպիսի պատիժս պատրաստեալ է որ խօսին
զայ զհայհոյութն։ Նովաւ տկարք զօրութն առնուն.
նովաւ արդարք խրախուսեն և յաղթեն հակառա-
կորդաց բռնաւորաց, և հանդիսանան ի պահել զպա-
տուիրանս նորա, և իմաստնանան ի բարիս։ Ո՞վ է
վերակացու և օգնական վտանգելոց ի նեղութն՝ որ
առնէ զփորձութն զելս, եթէ ոչ նոյն ած։

Նայլ և զայնս յետս հարցուք պչար լեզուսն, որ 'ի վերին զօրացն պէտս ունին օգնականութեան. կամ յերկրէս արդարոցասէն զամենակալն ած: Զի ոչ ինքն 'ի նոցանէ առնու օգնութիւն, այլ սպասաւորաւն վասն այնոցիկ՝ որ ժառանգելոցն են զփրկութիւն նոքօք ըստ կամաց արարչին: Զի նոքա իսկ են արարածք վերին զօրք յանգայից արարեալ. և 'ի նոքա շնորհացն ընտրեցան սուրբք 'ի մարդկանէ: Եւ զմտաւորսն և զբանաւորս զօրս հաստատեաց յանձնիշխան կամս, և դարձեալ փառաւորէ զողջախոհսն 'ի միասին զերկնաւորս և զերկրաւորս, որք պահեցին զհրամանս նորա և ժառանգորդք արքայութեան նորա եղեն: Եւ երևեցի ած ամ յամենայնի հրեշտակաց և մարդկան անդամնօր: Զի Բանիւ տեառն երկինք և երկիր հաստատեցաւ, և Հոգւով բերանոյ նորա ամենայն զօրութիւնք նոցա:

Եւ յաղագս այնորիկ սուրբ մանկունքն 'ի հնոցին զամ արարածս 'ի փառաբանութիւն ամենակալ և ամենազօր և ամենապարգև տէրութեան յորդորեն հանապազ: Քանզի ասէին. օրհնեցէք ամենայն գործք տեառն զտէր. օրհնեցէք զարարիչն երկնի և երկրի և որ 'ի նոսա արարածք իցեն, որ երևին և որ ոչն երևին: Զամենեսեան յանուանէ կոչեն 'ի գովեստ օրհնութեան և փառաբանութեան ամենասուրբ անուանն, զմտաւորս և զբանաւորս, զտիւ և զգիշեր, զլոյս և զխաւար, զծով և զցամաք զողջակոզ և զեռնոք, զգազանս և զանասունս, զսողունս և զթռչունս, զամպս և զանձրևս, զեղեամն և զձիւն, զցուրտ և զտօթ, զօդս և զերկիր, զտունկս և զբոյս, զլերինս և զբլուրս, զդաշտս և զանդունդս խորոց, զփշապս և զկէտս, զհուր և զջուր աղբերաց և գետոց: Ի վ՟ր ամի զիսրայէլ կոչէ յօրհնութիւն. յորոց ընտրեալ հարքն և մարգարէքն և առաքեալքն և ծնացորդք ընտրութեան շնորհացն երևեցան ծառայք այ բարձրելոյ և քահանայք տեառն, և անձինք և հոգիք արդարոց և սուրբք և խոնարհք սրտիւք. և 'ի վերայ ինքեանց աւարտեն զօրհնութիւնս առ ած, զի մի այլ ազգ ինչ կծուիցին. այլ զի ծանիցեն ամենեքեան թէ և նոքա արարածք իցեն ամենեցունց արարչին, զորս 'ի փառաբանութիւն կոչեցին հոգևոր երգովք անուամբք:

Որ և մեզ աւանդեցաւ այս հոգևոր երգ. զի այս-

պիսի հոգւոր երգովք յօրինուածովք խորհրդածութեք ըստ տօնից, ըստ Քնի մարդանալոյն, և մերոյ փըրկութե, և նահատակութեան սրբոց յիշատակաց, և զղջման ապաշխարողաց, և հանգուցելոց յայսոսիկ շարալծեալ, օրհնեսցուք գովեսցուք և բարձր արասցուք զամենասուրբ Երրորդութին, որ արար զամ արարածս, և ետ մեզ մխիթարութի և զյոյս բարի 'ի փառս իւր: Զի որ անսկիզբն է և ամենիմաց և մշտնջենաւոր և աղբիւր ամ բարութեց վերնոց և ներքնոց, նորա խնամովք 'ի բարի գործս արարան, և կան 'ի կամս նորա միշտ: Զի ամենայն եղեալք՝ որպէս գոյութի բնութեանցն եկամուտ է, այսպէս և ամ ինչ որ ըստ ոսցայն է ըստ իւրեանց կարգին եկամուտ է. խրատ գիտութեան և իմաստութե, և ամ քաջաց և առաքինեաց է զօրավիգ: Որ 'ի չգոյէ 'ի գոյ էած, և երևելիս և փառաւորս արար զսուրբս և զարդարս. և հրաւիրանօք կոչեաց յիւր արքայութիւնն և 'ի փառսն, յանփոփոխ երանութիւնսն, յանապառ յուրախութիւն, և յանեղծ և յանապական կեանսն: Ուստի հեռի են ամ տրտմականք և տխրականք, և մերձ յանմատոյց լոյսն. 'ի փառս և 'ի գովութի և յօրհնութիւն ամենասուրբ Երրորդութեն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ յաւիտենից յաւիտեանս. ամէն:

# ԵՐԱՆԵԼՈՅՆ ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ

## ԽՐԱՏՔ ՃԳՆԱՒՈՐԱՑ ԵՒ ՑՈՅՑՔ ՀԱՆԴԻՍԻՑ ՈՐ ՑԱՌԱՔԻՆՈՒԹԻՒՆ ՑՈՐԴՈՐԵՆ

### ԻԳ

ԱՄԵՆԱՅՆ որք հրաժարեցան յաշխարհէս և ընծայեցին ա̃յ զանձինս ՚ի հնազանդութիւն ճշմարտութե̃ սուրբ հարցն աւանդից՝ կուսութք̃ ճգնաւորել յաղագս խոստացեալ աւետեացն, զգոյշ կացցեն խորհրդոց և բանից և գործոց. զի մի խայթեսցէ դարանակալ օձն, և խափանեսցէ ըստ ա̃յ զգնացս սրբութե̃ և արդարութե̃ առաքինասէր վարուց։

Ամենայն հոգևոր խրատուց անխարդախ կալ. բարկութեան զհեզութիւն միշտ. անզգամութեան զհանդարտութիւն. թշնամանաց զբարեբանութիւն. անհնազանդութեան զհնազանդութիւն. ստահակութեան զհաւանութիւն. անհամբերութե̃ զհամբերութիւն. ոխակալութեան զանոխակալութիւն. մախանացն զաննախանձութի. դառնութեան զքաղցրութիւն. չարութե̃ զբարերարութի. անգործութեան զգործասիրութիւնն. մեղմեխութեան զուոշնութիւն. յարատութեան զհամեստութի. կատականաց և ծաղեր զարտասուս. ատելութեան զսէրն սուրբ ունել. անյուսութեան զյոյսն առնուլ. տրտմութեան զզուարթութիւն. փորձանաց զերկայնմտութի. ագահութեան զչափաւորութիւն. ընչասիրութեան զարհամարհանս. պատուասիրութեանն զնուաստութիւն. թերահաւատութեանն զհաւատս ճշմարիտս, և որ այլ ևս են չարին մեքենայք՝ որ ընդդէմ ճշմարտութեան զպատերազմ առնեն ընդ աչս և ընդ լսելիս և ընդ ունչս և ընդ ճաշակելիս և ընդ լեզուս և ընդ ձեռս և ընդ ոտս և ընդ սիրտս՝ որ խորհրդոցն է շտեմարան ՚ի լաւն կամ ՚ի վատթարն հակամիտել։ Զորս պարտ է վերագոյնս առնել ա̃մ ճնասակարաց առաքինասէր վարուք ըստ յառաջ ա-

տացելոց հանգամանաց խրատուց, որ ընդ չարեաց ըղ-
պատերազմն առնէ զկարուցեալսն 'ի վերայ Ճգնաւո-
րացն Ճակատամարտ միշտ: Յայտնիսկ է մարտ մեծ. և
դարձեալ յաղթութի մեծագոյն, որովք հակառակա-
մարտն կործանեցի՝ որ յայտնիսկ է պանծացեալ, և
հրապուրանօք յուսայ յաղթել նորամուտիցն:

Բայց դու, ով անձն, որ ընձայեցար այ, մի՛ զնա քեզ
խորհրդակից առնուր. այլ մարտիր զքաջիոքն մարտն,
և բուռն հար զայսոցիկ խրատուց, խնամուաց ունե-
լով զախոյեանն սուրբ Ճգնաւորաց, որ շաղեն և պա-
տեն զօգիս և զմարմինս փուշ ունելով մտերիմ խոր-
հրդով և արժանաւորապէս ըստ աւետարանին Քրի
կրօնաւորիլ: Մերկանալ զաշխարհական ցանկութիս
ամ, և զգենուլ զնոր մարդն ամ բարի գործովք զար-
դարեալ ներքոյ և արտաքոյ սուրբ և անարատ կա-
տարեալ արդարութբ և սրբեալ յամ ցանկութեանց
երկրաւորացս:

Նախ զածսիրութեան զհանգամանս յանձին հաս-
տատել սուրբ սրտիւ և անկեղծաւոր հաւատով. պատ-
րաստ լինել ըստ արժանի իւրոյ ընծայութեն յոր կո-
չեցաւն. յամ բծից անարատ և մաքուր և հաճոյ այ
լինել: Մտօք և ամենայն անդամովք հաստատուն և
անշարժ և անդրդուելի կալ 'ի կարգի Ճգնաւորա-
կան հանդիսիցն: Մարտնչել 'ի հոգևորական մարտին
ընդդէմ հանապազորդեան թշնամւոյն. որ ընդ ըղ-
գայութիւն և ընդ խորհուրդսն 'ի ներքս պատերազմ
է, և յաղթութիւն 'ի վերին օգնականութէն. իմաս-
տութե հոգւոյն առաջնորդել յամ արդարութիս,
և 'ի վայր կործանել զհակառակամարտսն բարեձևու-
թե կարգաց և կրօնից: Զի զէն զինուորութե Ճգնա-
ւորաց չէ մարմնաւոր, այլ հոգևոր յայ առ վանումն
չարին: Անարբութեն զսրբութիւնն 'ի ներքս ամբա-
րել յամ անդամսն. և յանմաքուր խորհրդոյն զողջա-
խոհութի սրբեալ յամի: Որկորատութեն զպարկեշ-
տութիս. արբշռութեն զժուժկալութիս. շուայտու-
թեն զհամեստութիս. ծուլութեն զհանդէսս առ ամ
ջանս: Թուլութեն զպնդութիս. ձանձրութեն զփոյ-
թըն. ամբարտաւանութեն զխոնարհութիս. հպար-
տութեանն զնուաստութիս. սնափառութեանն զան-

փառութիւնն. սուտութեան զստուգաբանութիւն. երդմնահարութեան զճշմարտութիւնն. խորամանկութեան զկատարեալ սէրն:

Այս զգուշացեալ ամրացեալ կացցես աղօթիւք և պահովք ջերմեռանդ արտասուօք, սուրբ սիրով, շնորհալից յուսով և բաղձալից գթով առ այ̃ կամսն: Ահիւ և երկիւղիւ 'ի բարեպաշտութեան ջանս յառաջանալ միշտ, և առաւելուլ 'ի բարի գործս, և ոչ պակասեցուցանել յառաքինութեան վաստակոց յերևելեաց կամ յաներևութից. և զհանգամանս չարին խափուցանել հանդիսաւոր յառաջադիմութեամբ: Զփառասիրութիւն զամենայն 'ի բաց ընկենուլ և զցանկութիւն չարեաց և զմեղս դիւրաշարժս իրաւամբք արդարութեան, առողջութեան անարատութեան: Անքիծ երախտեօք սուրբ սիրոյն անհանգիստ կալ 'ի ճգնաւորական մշակութեան ըստ բարերար սիրոյ երախտեացն այ̃ առ 'ի հնազանդութիւն այ̃ և առ որս հաղորդութիւն եղև սիրով:

Զի ճշմարտեալ պահեսցէ զմիաբանութիւն յօդիւ խաղաղութեան անբարեփորձ միաձնութեամբք առ 'ի կատարեալ հաւանութիւն և 'ի հնազանդութիւն եղբայրութեան և հաւատացեալ առաջնորդին. որով և զխոստովանութիւն նովաւ ընծայեաց այ̃ ստուգապէս. որով և զպտուղ առաքինութեան առնէ ըստ սխալանաց խորհրդոց և բանից և գործոց: Զի զթողութիւն մեղացն առցեն 'ի փրկչէն վկայութեամբ առաջնորդին և եղբայրութեան. և յայնոսիկ անշարժ հաստատուն արմատացեալ կացցեն 'ի նոյն վանս: Եւ մի երկմտեսցեն. զի որ երկմիտն է, նման է հողմակոծեալ և տատանեալ ալեաց ծովու. մի ակն կալցի մարդն այն առնուլ ինչ յայ̃ բարիս: Այլ ճշմարտեալ հաւատով և անքիծ վարուք կատարեսցէ զառաքինութիւնս ահիւն այ̃, 'ի շնորհաց սուրբ Հոգւոյն զօրացեալ համբերութեամբ բազմաւ ըստ Առաքելոյ խրատուն, 'ի նեղութիւնս, 'ի վիշտս, 'ի չարչարանս, 'ի գանս, 'ի բանտս, 'ի խռովութիւնս, յաշխատութիւնս, 'ի հսկմունս, 'ի պահս, 'ի սրբութեան, 'ի քաղցրութեան, 'ի բարութեան Հոգւոյն սրբոյ յարդարեալ:

Զի որ սիրէն զիս, ասէ տէրն, զպատուիրանս իմ

պահեսցէ զոր սուրբ Հոգին աւանդեաց. ապա ես և Հայր իմ եկեսցուք և օթևանս առ նմա արասցուք: Ո՛րքան է մեծութիւն և փառք և շնորհք, որք տաճար լինին ամենասուրբ Երրորդութեան. զի «Բնակեցայց 'ի նոսա, ասէ, և սրբեցից և եղէց նոցա ա՟ծ, և նոքա եղիցին ինձ 'ի ժողովուրդ, ասէ տէր ամենակալ»:

Արդ քանզի որ զայս աւետիս ունին ճգնաւորք, կատարեսցուք զսրբութիւն ահիւն ա՟յ. անխիծ անարատ սուրբ սիրով հնազանդել ընդ ամենահեշտ լծովն՝ որ թեթև է առաքինեաց անձանց և ծանր աշխարհասիրաց, զորս և կոչէ քաղցր ձայնիւ. ասէ. Եկայք առ իս ա՟մ աշխատեալք և բեռնաւորք, և ես հանգուցից զձեզ. առէք զլուծ իմ 'ի ձեզ, և ուսարուք յինէն ըզհեզութիւն, զխոնարհութիւն և զհնազանդութիւն և զա՟մ արդարութիւնս, և գտջիք հանգիստ անձանց ձերոց. զի լուծ իմ քաղցր է յաղագս յաւոյն, և բեռն իմ փոքրոգի յաղագս առաւել վարձուցն հատուցմանց:

Զամենայն դժնդակ ապարասանութիւնս զբարուց չարաժամանց սանձել խաղաղարար ազատութեամբն և անարատ սրբութեամբն, և մտել 'ի նաւահանգիստն հանդարտութեան հոգւոյ և մարմնոյ, և յա՟մ վշտագին հարուածոց չար ցանկութեանց ազատել: Ունկնդիր լինել առաջնորդաց խրատուց և հպատակ կալ նոցա հրամանացն. և նոքա մի՛ անհոգ լիցին ժողովրդեան ուխտին, զի համարս տալոց են վասն նոցա յաւուրն այցելութեան:

Լիցի յամենեսեան ճշմարտասիրութիւն. մի՛ բանսարկուս, մի՛ խորամանկս, մի՛ հակառակողս առ հրամանս վերակացուին, մի՛ տրտունջողք 'ի գործ կամ յայլ ինչ իրս, մի՛ խռովարարք և թշնամանողք: «Զի որ ըզձեզ խռովեցուցանէ, կրեսցէ դատաստան ո՟ք և իցէ» ասէ Առաքեալ: Այլ զհետ երթալ խաղաղութեան և զսուրբ սիրոյ. և լինել որդիք ա՟յ և ժառանգակիցք Ք՟նի, որ արար խաղաղութիւն յերկինս և յերկրի: Եւ հնազանդել և հաւանել միմեանց երկիւղիւն տեառն: Անխղճելի պահել զմիաբանութիւն եղբայրութեան հաւանական սուրբ սիրովն, որ 'ի միմեանս կապէ և ոչ թողու քայքայել և անջատել 'ի միմեանց պատճառանօք, որ զանձին վրէժ խնդրեն և ոչ զմիաբանութիւն սիրոյ:

Իսկ որ վերակացուն, է զգաստ լիցի առ մերձաւորս

և նախատես առ հեռաւորսն․ խրատել զեղբարս խորագիտութեամբ ըստ ժամանակին, ըստ ընդունելութեան, ըստ բարուց սրտին։ Զկրսերսն խրատել յահ և յերկիւղ տեառն և ՚ի հնազանդութիւն եղբարցն։ Եւ հաւանեալ ամենեցուն ՚ի կամս առաջնորդին եղբայրութեան՝ ոչ ինչ ՚ի գործելեացն առանց կամաց նորա եղիցի։ Եւ որ արտաքոյ նորա կամացն խորհի ինչ կամ առնէ կամ գործէ, պարտաւոր է ապաշխարութեան․ զի զառաջնորդն արհամարհեալ՝ զԱծ արհամարհէ․ քանզի ասաց տէրն․ «Որ զձեզ անարգէ, զիս անարգէ․ և որ զձեզ ընդունի, զիս ընդունի․ և որ զբանն ձեր պահեսցէ, զիմն պահեսցէ»։

Այլ խոնարհութեամբ և կամաւոր հնազանդութեամբ նուաճեալք առ հասարակաց օգուտն, և հաւանութեան Այ պատուիրանին և հաւատացեալ յԱյ առաջնորդին։ «Զի որք են, ասէ, յԱյ կարգեալ են․ և որք ընդդիմակացքն են, կրեսցեն դատաստան ոյք և իցեն»։ Եւ հաւանեալ ՚ի մի վանս և ՚ի մի միաբանութիւն փառաց ամենասուրբ Երրորդութեանն միաշունչք և միախորհուրդք, ոչ ըստ գրգռութեան իրիք և ոչ ըստ մնապարծութեան, որպէս օրինադրէ Առաքեալ․ այլ խոնարհութեամբ զմիմեանս առաւել լաւ համարել քան զանձինս։ Նոքա են՝ որ զսուրբ սիրոյն զխուղն միշտ յինքեանս ունին, և պայծառ լապտերօքն մնասեն յառագաստն։ Զորս ամենակալ Հայրն ուրախ առնէ յաւիտենից երկնաւոր փեսայիւն յանսպառ ուրախութիւնսն։

Բայց որ որոշին և մեկնին ՚ի միաբանութենէ եղբայրութեան, նոքա նմանեալք են յիմար կուսանացն, և զիւղ սիրոյն ոչ ունին․ որոց փակի առագաստն յաղագս չիջանելոյ հարսանեկան [1] Ջահիցն։ Որք լինին ՚ի ձայնէ փեսային, զի որով ոչ ցուցէք յեղբարս զսէրն, և զխաղաղութեան կապն խզեցէք, երթայք ՚ի խաւարն արտաքին։ Եւ որք զմիաբանութիւն սիրոյն հոգւոր առ եղբայրութիւն առողջ պահեցին և զխոնարհութիւն առ վերակացուն, երանելիք են․ և զամ բարեաց հանդամանս և առաքինութեան ցոյցք ՚ի նոսա է տպաւորեալ։

1 Ի լուսանցս օրինակին մերոյ հարսանեաց ։

Եղբայր զեղբայր յորդորելով 'ի բարի գործս 'ի հանդէս բարի նախանձու. 'ի սէր ա՟ծութեան ա՟մ հաւատարմութե՟ զիւրաքանչիւր գործն յառաջացուցանել փութայցէ, և անդադար զփառաբանութիւնն կատարել 'ի սէր. և որ ըստ օրէն յաւելուած լիցի լաւութե՟ և պիտանութե՟: Զգաստութի՟ և զգուշութի՟ եղիցի գործաւորացն որ 'ի նա հաւատացաւն իւրոցն՝ զամենայն ստուգութե՟ աւարտեսցեն հաճոյ այ՟ և առաջնորդին և եղբայրութեանն:

Ես հասարակաց պաշտօնն մի պատճառանօք ինչ խափանեցի, բայց եթէ 'ի պէտս ինչ եկեղեցւոյն ըդբաղձեալ հրամանաւ վերակացուին. սակայն և անդ կատարեցի աղօթքն: Եւ ա՟մ ուրեք պաշտօն աղօթիցն հոգևորապէս կատարեցի անխափան. 'ի նըստել 'ի տան, 'ի գնալ 'ի ճանապարհի, 'ի գործել և 'ի ննջել և 'ի յառնել: Եւ չթողու 'ի մտաց զյիշատակօրն այ՟ հայր և զկամսն նորա առնել ըստ ա՟մ արուեստից ուղղութե՟ և արդարութե՟. և միօքն հանապազ դեգերեալ կացցէ 'ի դրունս ողորմութեան այ՟ անդադար խնդրուածովք եռանդնասէր հոգւով և արտասուօք ջերմեռանդ միշտ, զի ընդունելութե՟ արժանի լինիցին աղօթքն. և պարգևատու լինի ամենակալն ա՟ծ, որ զամենեցուն կամի զփրկութի՟, և արքայութեան արժանաւոր լինել 'ի ք՟ս յ՟ս:

Եւ դիւրաւ հաւանութի՟ ճշմարիտ սիրով առ վերակացուն եղիցի ամենեցուն. և մի ըստ իւր կամացն խնդրեսցէ զգործն 'ի նմանէ, այլ զոր նայն հաւատայ 'ի հասարակաց օգուտն, 'ի մարմնաւոր պէտս և 'ի հոգևոր շահս: Զի կարասցեն ասել ա՟մքեան՝ թէ յորմէ հետէ ընծայեցաք այ՟, զա՟մ կամս մարմնոյ և զմտաց խափանեցաք, և տուաք զանձինս 'ի ծառայութի՟ նախ տեառն և ապա առաջնորդաց 'ի հնազանդութի՟ ըստ պատուիրանին այ՟, որ 'ի սուրբ հարցն մեզ աւանդեցաւ:

Ո ի որպէս անդամք մարմնոյն մի մարմին են յօդեալ և պատշաճեալ, սակայն իւրաքանչիւր զիւր ներգործութիւն առանձին ունի, աչք տեսանեն, ականջք լսեն, ունչք հոտոտին, լեզու խօսի և բերան ճաշակէ, ձեռք գործեն, ոտք գնան և միտք իմանան, և

նովաւ շարժեն զգայութիւնքն 'ի գործ հոգեւորաց եւ մարմնաւորաց, այսպէս ժողովուրդ այ սիրով յօդեալ եւ միաւորեալ 'ի կամս այ եւ առաջնորդական միտքն 'ի վերակացուն՝ որ զտեսչութիւն եղբայրութեան ունի միշտ. եւ այլք զհաւանութի ըստ իւրաքանչիւր ներգործութեան: Զի որ թուին յանդամսն եթէ տկարագոյնք են, կարեւորք են այլոցն առ սպասաւորութեան հանդամանս: Եւ որպէս չէ հնար յառողջ անդամոցն հատանել, բայց ապականեալն յանբժշկելեացն 'ի բաց հատումն՝ որ առանց բժշկութեան ունի զվէրս. եւ զի ոչ է հնար յայլոց անդամոց յայլս յարել, նոյնպէս առանց բժշկութեան է որ 'ի միաւորեալ եղբայրութենէն հատանի եւ 'ի վանացն որոշի, եւ զուխտն եւ զսէր եւ զդաշինսն որ առաջի այ՝ անարգէ, եւ լինի պարտաւոր յաւիտենից տանջանացն:

Բայց եթէ 'ի կամաց վերակացուին եւ 'ի հասարակաց եղբայրութեան բռնադատեսցի յեպիսկոպոսութի կամ յառաջնորդութի այլոց եւ 'ի քահանայութիւն՝ որ զնոյն կարգ ունիցին 'ի տէր, եւ զայս ոչ յօժար կամօք ընդունել: Բայց եթէ յառաջնորդէն եւ յեղբարցն հարկաւորեալ բռնադատեսցի, բազում արտասուօք եւ աղաչաւանօք յաղագս փրկութեան այլոց հաւանեսցի, եթէ իցէ այնպիսի ոք՝ որ ոչ հայհոյեսցի անուն տեառն այ մերոյ: Բայց ճշմարիտ սուրբ սիրոյն 'ի յեղբայրութենէն եւ հաւանութի յառաջնորդէն մի հանցի. այլ որպէս զմիմեանս հոգայցեն 'ի հոգեւոր լրումն: /.

Նա եւ ամ ուղղափառ ժողովք եպիսկոպոսաց՝ որ զուղղափառ հաւատոն հաստատեցին եւ կանոնս սահմանեցին եկեղեցւոյ, եւ զայս սահմանեցին նզովիւք: // Եղբայր ոք, ասէ, մի իշխեսցէ 'ի վանացն ելանել կալ ուր եւ կամեսցի առանց կամաց վերակացուին եւ եղբայրութեան. եւ որ ոք յանդգնեալ զայս առնէ, ընդ նզովիւք կապեսցի 'ի հարցն: /Զի ամ ոք յոր ինչ կոչեցաւն՝ 'ի նոյնն կայցէ ասէ Առաքեալն այ: Զի ամենեքեան 'ի մի յոյս կոչեցան 'ի Քս. զի մի մարմին պատուական 'ի սուրբ մարմնոյ նորա եւ յարենէ պատրապարեցան 'ի փառաւորութի: /

Ապա եթէ ունի ինչ պատճառս մեկուսանալոյ,

մի՛ ծածկեսցէ յառաջնորդէն և յեղբայրութեանն. և բազմացն վկայութիւքն հաւատարիմ է առաջի այ՟ և ա՟մ ուխտին ։ Զի արհամարհեալ ուրուք զօրէնսն Մովսէսի՝ առանց ողորմութեան առ երկու կամ երիւք վկայիւք մեռանէր. իսկ ո՞րչափ սաստիկ պատժոց արժանի համարեսցուք զայնոսիկ՝ որ մարմնով և արեամբ դաշնաւորեալք 'ի միաբանութիւն ըստ ուխտի և հրաժարման յաշխարհէս սկզբման կարգին 'ի պահել զաւանդն միաբանութեան մինչև ցվախճան ։ Եւ գիտեմք զայն որ ասացն տէր. «Իմ են վրէժխնդրութիւնք, և ես հատուցից ասէ տէր՝ զհնոյն և զնորոյն պատիժս»։

Եւ այս ջան 'ի մտի կայցէ վերակացուին՝ գաղտնի և յայտնի խրատ առ ամենեսեան, զի կարասցէ ուղղել զթիւրեալսն 'ի ճանապարհացն արդարութեան 'ի ճշմարտութեան աւանդսն ։ Եւ յա՟մի ոչ անհոգ լինել 'ի խոստովանութիւս և յուղղութիւս հոգւով և մարմնով. զի զա՟մ որք նմա հաւատացան՝ կատարեալս կացուսցէ առաջի բեմին Քի՟ ։ Զի որ արասցէ և ուսուսցէ, մեծ է առաջի այ՟ ։

Եւ որ տնտեսն է՝ համարեսցի զինքն այ՟ մատակարար. աչիւ և երկիւղիւ տնտեսեսցէ զհաւատացեալսն յա՟յ աւանդսն, և զգուշասցի անօթոցն. մի՛ 'ի ծուլութենէ կորուսցէ, և կամ յարհամարհանաց արտաքս ընկեսցէ. և անփոյթ արարեալ աւանդիցն յաճախ 'ի ծախս առից ոչ 'ի հաճոյս այ՟, և կրեսցէ դատաստան 'ի տեառնէ՝ որ 'ի մէտ առնու զա՟մ զխորհուրդս և զգգործս. զի ա՟մ ինչ յա՟յ է նուիրեալ յաղագս պիտոյից եղբայրութեան ։ Մի՛ հեղգասցի 'ի գործ կամ 'ի բաշխելն անհաւասար. այլ յա՟մի զա՟ծ առաջի աչաց կալցէ, և աչիւն այ՟ ստուգապէս մատակարարեսցէ հրամանաւ վերակացուին ։ Արթուն և զգաստ լինել առ ա՟մ կամս ապաստաւորութեան. ըստ իւրաքանչիւրոցն արժանի ըստ պիտոյիցն զդարմանսն առնել ։ Ծերոցն հիւանդաց, տկարաց, ճանապարհորդաց, վաստակաւորացն և որ 'ի պ՟նասուցն կարգի իցեն, ըստ արժանեացն եղիցի մատակարարելն հոգևորապէս ըստ այ՟ ։ Մի՛ աչառանօք և կամ խեռիւ, զի մի՛ զրկեսցին 'ի վարձուցն հատուցմանց. այլ որպէս մայրենի գթովք առ ա՟մենեան լիցի, զի առցէ զվարձն յամենակալ Հօրէն՝

եկայք օրհնեալք Հօր իմոյ, ժառանգեցէք զարքայութիւն. զի որովհետեւ արարէք տնանեսութի եղբարց, ինձ արարէք: Թողում առնել և որք այսպէս ոչ արարին՝ զպատիժ պատուհասիցն, զհուրն անշէջ:

Այլ որք շաբաթաւորքն են, կահուցն զգուշասցին, և զգործոյն մաքրութե̄ կատարեսցեն:

Այլ տեսուչք հիւրոցն մի՛ անտես առնել զկարօտեալսն, և զհիւրին դարմանսն ըստ իւրաքանչիւրոցն զպէտսն ընդ զուարթամտութեամբ. և մի՛ աղմկել առ խնդիրսն, այլ սիրով և անխռով զամենեսեան յուզարկել բանիւք և իրօք: Եւ ինքեանք մի՛ լուծցեն պատճառանօք հիւրոյն զպահս և զաղօթս, զի մի՛ զըրկեսցին 'ի վարձուցն ա̄յ. այլ զգաստասցին ա̄մ գործառայք 'ի ժամ աղօթիցն, զի մի՛ 'ի հեղգացելոցն 'ի դատաստանս անկանիցին: Եւ յա̄մ իրս 'ի կամաց վերակացուին եղիցի հրամանն. զի առաքեալն 'ի նմանէ ընդունելի եղիցի ա̄մ յամենայնի 'ի կամս տեառն: Եւ որ ինչ նորօք մատակարարին, նմա պարտ է գիտել զամենայն որպէս արժանն է:

Նոյն և որ տեսուչք են եզանց հողագործաց կամ խաշանց արօտականաց և հօտից կթոց և գրաստուց բեռնակրաց, ամենեքին ուշ կալցին խնամելոյ, և հաւատարմութե̄ ցուցանել զարդիւնս շահեկանս ա̄մ ճշմարտութե̄, որպէս ա̄յ գործավարք և իմաստուն մշակք արդիւնականաւք՝ ժողովել յշտեմարանս, զի իցէ աննուազ տալ ում պիտոյ իցէ: Տալ զնոցա աշխատութեցն պտղաբերութիւն 'ի տուն տեառն ա̄յ. և ըզհատուցումն առցեն յարարչէն ըստ իւրաքանչիւր վաստակոց. որ տեսանէ 'ի ծածուկ և հատուցանէ յայտնապէս յաւուրն այցելութե̄ զանսպառ բարիսն. որ 'ի սակաւուն հաւատարիմ եղեալ՝ 'ի բազում բարիսն վայելեն:

Սոյնպէս և որոց օղն հաւատացաւ՝ զիւրաքանչիւրոցն զպէտսն կօշկաց կատարեսցեն առանց հակառակութե̄ և ակնառութե̄, և որ այլ ինչ պէտք են օդոյն: Ամենեցուն հեզութի եղիցի նպաստաւոր խնդրողացն և կատարողաց զառ 'ի պէտսն արժանաւոր սիրով և խոնարհ սրտիւ, զի ժառանգեսցէ զօրհնութիւն:

Նոյնպէս և ամենայն ոք որոց գործ հաւատացաւ

և հոգւոյ առ 'ի պէտս եղբայրութեան, ահիւ և զգաստութեամբ առանց խարդախութեան ըստ ամենայնի լիցի։ Միշտ զած ունել առաջի աչաց, և ոչ երբէք 'ի ճշմարտութենէն վերջանալ. այլ ստուգապէս որպէս այ մշակ անխարդախ յամի։ Ամենեցուն գործավարաց և գործակալաց սկիզբն վերստին յերկիւղ տեառն լիցի. և երկիւղիւ յարմարել զգործն 'ի շահ օգտից հոգեխառն յառաջադիմութեան հաւատարիմ 'ի գործ մշակութեան անվեհեր փութով։ Ոչ որպէս մարդկան հաճոյ, այլ որպէս այ՝ որ քննէ զսիրտս և զերիկամունս. 'ի միտ առնուլ զիւրաքանչիւրոցն զյօժարութիւն, զքան և ըզգործ։ Որ հաւատարիմն են յամի հոգևոր շահիւքն և մարմնաւոր ըստ այ պատուիրանին, և շինութեան եղբայրութեան 'ի հաւանութեան ուխտին, ժառանգեն ըզկեանսն յաւիտենից։

Իսկ որ զհակառակութեան և զանսաստացուութեան և զպղերգութեան զմիտս ունիցին, մեկնեալ 'ի ճշմարտութենէ, 'ի հեռ և 'ի խախանձ, 'ի ստահակութիւն և 'ի տրտունջ, 'ի բամբասանս և 'ի շաղմողութեան բանս արկեալ, բարկութիւնն այ կայ և մնայ 'ի վերայ նոցա. հուրն ահեղ և անմահափորձ՝ որ այրէ զխոտանսն, և զսուրբսն լուսաւորէ անշիջանելի լուսովն։

Այլ եղիցի վերակացուն հայր բարեմիտ, բարեխօրհ և բարեգործ. օրինակ լինել այ բարեձևութեան կարգաց և կրօնից, աղօթից և պահոց, խոնարհութեան և հեզութեան, ուղղութեան և ճշմարտութեան, աքնութեան և արտասուաց, խաղաղութեան և համբերութեան, սիրոյ և երկայնմտութեան, իրաւանց և արդարութեան, աշխատութեան և ժուժկալութեան, պարկեշտութեան և զգաստութեան, անարատութեան և անբծութեան. անբաժանս յամենայն 'ի վերադասեան՝ ըստ օրինաց արդարութեան եղեալ յամի. և հաւատացեալ նմա յայ ժողովուրդ իմաստութեամբ և գիտութեամբ խրատել. 'ի սրբութեան և յամենայն առաքինութեան վարս զամենայնին սէրն զօրացուցանել յանձինս, և արհամարհել զաշխարհիս սէր։ Եւ երկաքանչիւրոցն հաւատալը երևել առ ամենեսեան՝ ամենայնոյ սուրբ սէրն։ «Զի որ սիրէն զիս, պահէ տէրն, զպատուիրանս իմ պահեսցէ. և որ ոչն սիրէ զիս, զպատուիրանս իմ ոչ պահէ»։

Այլ զի վերակացուն հայր հոգեւոր կոչեցաւ, եւ ծնեալքն առ 'ի նմանէ հոգեւոր որդիք ըստ կարգի Ճգնաւորաց. որ առաւել ունի զհանգամանս քան ըզմարմնաւոր ծննդոց. որպէս զմկրտութենն ունի զնմանութի՟ ըստ ամի՟։ Եւ այսպէս լինել որդիք լուսոյ. եւ որդիք արդարութե՟ հրաժարեալք յաշխարհական 'ի զբաղմանց, որ մթացուցանեն զմիտս եւ խաւարեցուցանեն զզգայութիւս, եւ առնեն որդիք խաւարի եւ ժառանգք դժոխոց։

Այլ զի պարտ է հոգեւոր ծննդոց հոգեւոր վարս ստանալ կատարեալ հնազանդութ՟բ առ հոգեւոր հայրութիւն, նովաւ զխոստովանութիւն ա՟յ ընծայել սուգութ՟բ, եւ մի՟ սուտք 'ի խոստովանութենն լինել։ Ըստ ամ՟ սխալանաց փ՟տաուց զդեղ բժշկութենն դիւրաընկալցին. եւ առ ամ՟ հրամանսն հաւան եւ հպատակք, որպէս յերկնաւոր Հօրէն առեալ հրաման առ գործ պատուիրանին, որ զհասարակաց եղբայրութենն զհանգամանսն հոգւով եւ ճշմարտութ՟բ. «Զայն խորհել եւ առնել որ եւ 'ի Քս՟ Յս՟, որ հնազանդ եղեւ Հօր մահուչափ եւ մահու խաչի»։ Եւ նա ոչ ամօթ համարի զկոչեցեալսն եւ զհրաւիրեալսն 'ի կարգ ա՟ծային կրօնից եղբարս անուանել զնոսա ինքեան եւ ասել, «Պատմեցից զանուն քո եղբարց իմոց. 'ի մէջ եկեղեցեաց օրհնեցից զքեզ»։

Այլ այսպիսի հաւանական մտօք եւ սուրբ սիրով վերաբերել յամ՟ փ՟տաակարացն՝ որ ընդ երկիր քարշէ. վերնոցն զհետ երթալ երկնայնոցն եւ անմահից, որ կուսութ՟բ էնոցա սեպհականութիւն եւ անարատ վարք եւ համապարզորդ փառաբանութի՟ ամենասուրբ Երրորդութենն։ Զի մաքուր եւ ամբիծ եւ անարատ կուսութի՟ ընտանութիւն ունի առ վերին զօրս երկնաւորացն ժողովսն. եւ զփառաբանութիւն նմանապէս ունին առ ա՟ծ։ Զի վարք Ճգնաւորաց՝ երկնայնոցն նմանեցան, եւ 'ի նոցանէ ունին զհանգամանս կարգաց արուեստից ըստ ամ՟ հանդիսից։ Զի երկրաւոր բանակք Ճգնաւորաց ճշմարտեալք սուրբ սիրով եւ անբիծ զգայութ՟բ՝ յարդարեալք հրեշտակական կարգաւորութ՟բ՝ զերկնաւոր բանակացն ունին զհամեստութի՟։ Արդ պետք եւ իշխանք զօրացն անմարմնոց որ սպասաւորութի՟ ըստ իւրաքանչիւր կարգի ունին

առ ա̃ծ կամաւ, և առ միմեանս և առ ազգս մարդկան, որպէս և կամք ամենեցունց տեառնն սահմանեցին զիւրաքանչիւրոցն զիշխանութիւն և զպատիւ և զսպասաւորութի ըստ նախախնամութեն: Իսկ սատան բարկեալն 'ի վերին իշխանացն բանակաւն իւրով 'ի բարւոյն 'ի վայր անկեալ՝ մեզ պատերազմողք եղեն, և սատանայ անուանեցան և դևք. ըստ անուանցն զհակառակ բարւոյ զգործս ունին առ ա̃մ մեղասիրութի, ինքն և ամենայն չար զօրք իւր:

Այլ իմանալի է զբանակս ճգնաւորաց՝ որք զհրեշտակային կարգս զգեցեալ ունին 'ի յերկրի, 'ի նոյն կարգս հրեշտակաց վերամբառնան 'ի տեղի անկելոց հրեշտակացն: Եւ «Տացի ասէ նոցա մարգարէն, տեղի անուանի առաւել քան զուստերաց և զդստերաց իմոց. և անուն յաւիտենական տաց նոցա, և մի պակասեսցէ փառքն»: Զայս աւետիս ունին բանակք սուրբ ժողովոց, միաբանեալք սուրբ սիրով և առաքինասէր վարուք ընդ ա̃ծութեն իսկ կապեալք և ոչ 'ի վայր բերեալք յերկնայնոցն յուսոյն պատրանօք բանսարկուին՝ որ մախացող է ճգնաւորաց կրօնից, համապազ թշնամի արդարութե: Եւ նա է որ հրապուրէ և օցտէ 'ի ճշմարիտ աւանդիցն. զոմանս բաժանէ սնափառութբ յեղքարցն պատճառանօք բարեգործութե և սնոտի խաբէութբ 'ի մեղս, և է որ ընդ խորհուրդսն և ընդ զգայութիւնն 'ի ներքս մուծանէ զամբարշտութե մխասն:

Յոյս այսպիսի ունել կրօնաւորաց՝ բազում զգուշութբ կայցեն 'ի մշակութե բարեձևութբ վարուց և սրբութբ երևելեօք և աներևութիւք. զի մի զրկեսցեն յայնքան առաքինութեան պատուոյն 'ի հրեշտակական դասուցն և 'ի փառացն, որ նոցայն աւանդեցաւ յարարչէն: Լնուլ զպակասութի վերնոցն՝ ներքնովքս առաքինութբք. վերաբերեալք 'ի գետնաքարշիցս, և հաղորդակից լինել բարւոյ քաղաքավարութեն, և ընդ նոսա միաձայնեալ՝ ամենասուրբ Երրորդութեն մատուցանեն զփառս անճառելի օրհնութբ:

Եթէ այսպէս արդարացեալք ճշմարիտ հաւատով և անարատ վարուք կրօնաւորեալք և սուրբ սիրով. եղիցի նոցա երկիր նոր 'ի նորոգութն կենաց հաճոյիցն

ա̃յ, և երկինք նոր պայծառազգեստութեամբ. զոր ակն ոչ ետես և ունկն ոչ լուաւ և ՚ի սիրտ մարդոյ ոչ անկաւ, զոր պատրաստեաց ա̃ծ սրբոց կուսանաց և ճըշմարտասէր կրօնաւորաց։

Նայեա՛լ յիշատակօք վերնոցն յուսով՝ հարք բարեսէրք և բարեգութք և բարեխորհք լցեալ նմանեալք Հօրն երկնաւորի, որ նախախնամական սիրովն իւրոյ խնամէ զարարածս ա̃մ հոգեւորապէս և մարմնաւորապէս երևելի և աներևոյթ դարմանօք, հոգեխառն սիրով և բարեպաշտագոյն երևմամբ ՚ի Ք̃ն Յ̃ս։ Եւ որդիք բարեհաճանք և սրբասէրք և ճշմարտասէրք, որոշեալք յա̃մ դժնդակացն որ երևին և որ ոչն երևին։ Եւ բուռն հարեալ զհրեշտակական վարուց, սուրբ սրտիւ և անարատ մարմնով, ողջախոհ խորհրդով և անկեղծաւոր հաւատով, խրատախոհք և հնազանդք առ Հայրն հոգեւոց և տեսուչ մարմնոցն։ Առ որ միամտամ հանդուցեալ եղիցին հոգւով պաշտամամբ հաճութեանն, վստահութեամբ ընտանութեանն հոգևոր հարազատութեանն, անկարծիս միաւորութեամբ իբրև անդամք մարմնոյ առ ՚ի միմեանս։ Քանզի մի մարմին եմք ՚ի Ք̃ն, պինդ կացցուք զխոստովանութիւն անշարժ յուսոյն, և սովին հաւատովք կատարեալք լիցուք, կապեալք միով հոգւով յարմարմամբք յօդիւք, պնդեալք սովին հաւատովք անխզելի կապակցութեամբ. և ոչ մի իւիք բարեձևութեամբ խաբէութեան զամբութեան միաբանութեան եղբայրութեանն քակել։ Վասն զի այս միայն աւանդ ՚ի տեառնէ առաքելովքն անվրէպ մեզ հաւատացաւ, որ ասէրն՝ թէ «Այսու ծանիցեն յամենեցունց թէ աշակերտք իմ էք, եթէ սէր ընդ միմեանս անքակ ունիցիք», որ է գլուխ մերոյ կատարման։ Եւ առանց այոր՝ եթէ ոք առանձին մտաբերիցէ յառաքինութեան համարի, զոր և գործիցէ իսկ ՚ի բարձրագունից առանց կամաց առաջնորդին և եղբայրութեանն, անընդունելի է ա̃յ, և ՚ի մեղս համարեսցի։ Իսկ որ զճշմարիտ աւանդութիւնս հաստատուն պահեն, տաց նոցա ՚ի տան իմում տեղի ՚ի միասին բնակելով հոգևորօք և մարմնաւորօք. և ոչ անջատեալ ՚ի միմեանց, այլ սուրբ սիրով առ միմեանս կեալ միաբանութեամբ. վասն զի սա է մայր ա̃մ բարեաց։ Վասն այսորիկ

յաճախագոյն առեմ զբանս սիրոյն. վասն զի այս է բարի և ընդունելի ա̃յ, և նոյն ինքն հրամանք նորին։

Տալ մ̃ոք խորհրդով յածիլ և մարմնով գայթակղիլ. այլ մ̃նալ 'ի լաւագոյն սովորութ̃են 'ի կամս միամիտս և յիշատակս վերին որդեգրութեան Հօրն երկնաւորի և մարդասիրի։ Առնուլ զզ̇րաւականն հոգևոր և ուսանել զհանգամանս. և որոշեալ զչեմն և զերևեալս՝ երկնայնոցն փափագելով զերկրայինս արհամարհել։ Եւ մեկնել 'ի զբաղմանց աշխարհիս, մերձ 'ի հրեշտակայնոցն լինել վարս. ոչ հայելով յերկրաւորս, այլ լինել ընդունակ լուսոյն աստէն, որ 'ի ձեռն մարմնոյ և արեանն տեառն վերաստեղծու 'ի զգաստութ̃ի, հանապազ արժանաւորապէս հաղորդելով ըստ ճշմարիտ մաքրմանն և կենդանարար Քս̃ի ազատութեանն, որ շնորհեցաւ սիրողաց ա̃յ և կոչեցելոց սրբոց 'ի կարգ ա̃ծայինն։ Եւ 'ի միւսանգամ գալստեանն իւրոյ շնորհէ զանապառ բարիսն 'ի Հայր և յՈրդի և 'ի Հոգին սուրբ. որում փառք յաւիտեանս յաւիտենից. ամէն։

# ԱՂՕԹՔ

## ՅՈՐԺԱՄ ՅՈՐՈԳԱՅԹ ԱՆԿԱՆԻՑԻ ՈՔ

### ԶՈՐ ԱՍԱՑԵԱԼ Է

## ՍՐԲՈՅՆ ԳՐԻԳՈՐԻ ԼՈՒՍԱՒՈՐՉԻՆ

ՕՐՀՆԵԱԼ է անքաւ մարդասիրութիւն քո, տէր իմ Յ̃ս Ք̃ս. ընդէ՞ր լքաներ զիս. եթէ վասն մեղաց, դու միայն ես առանց մեղաց, և անուն քո զանոխակալութի̃ւ և զմարդասիրութիւն ցուցանէ: Գթա՛ յիս, վասն զի դու միայն ես մարդասէր: Ապրեցո զիս զանկեալս 'ի մեղս. վասն զի դու միայն ես առանց մեղաց: Հան զիս 'ի տղմոյ անօրէնութեան իմոյ, զի մի ընկղմեցայց յաւիտեան: Փրկեա զիս 'ի թշնամւոյ իմոյ, քան-զի ահա իբրև զառիւծ մռնչէ կամելով կլանել զիս: Արդ տէր իմ, փայլատակեա զփայլատակունս քո և կործանեա զզօրութիւն նորա. երկիցէ և խաւարեսցի յերեսաց քոց, քանզի տկար է և ոչ ունի զօրութիւն կալ առաջի քո և ոչ առաջի սիրողացն զքեզ: Տեսանէ զզօրութիւն նշանի խաչի քո և զարհուրի, և ամաչելով 'ի բաց հալածի յայնցանէ՝ որ կարդան առ քեզ: Այժմ տէր, կեցո զիս և ապրեցո, վասն զի 'ի քեզ ապաւինեցայ. հան 'ի նեղութենէ զանձն իմ, զի մի իսպառ կորուսցէ զիս նենգաւորն՝ որ մարտնչի ընդ իս ծածուկ հնարիւք: Որ խորհրդոց ես տէր և քննես զսիրտս և զերիկամունս, սրբեա զսիրտ իմ և զխորհուրդս 'ի զազիր և 'ի պիղծ խորհրդոց, զի մի իսպառ կորեայց զյաւիտենական կորուստն: Որ կարող ես յա̃մի, ողորմեա ինձ ա̃ծ իմ. տուր զշնորհս արտասուաց մեղուցեալ ոգւոյս, որպէս զի լուացից զբազմութիւն մեղաց, զի ապրեցայց 'ի ձեռաց անողորմ հրեշտակաց՝ որք արկանեն զամբարիշտն 'ի հուր գեհենին:

Երանի թէ լայի հանապազ աղաչելով զքեզ ա̃ծ, զի մի անարժան գտայց 'ի ժամուն՝ որ գալոց ես: Մի լուայց զահաւոր զձայնն՝ եթէ երթ 'ի բաց մշակդ անօրէնութեան, ոչ գիտեմ ուստի ես: Աստուած բարձրեալ՝ միայն առանց մեղաց, շնորհեա ինձ մեղաւորիս յաւուր յայնմիկ զբազում գթութիւն քո. զի մի յայտնեսցին ծածուկ ամբարշտութիւնք իմ առաջի տեսողաց հրեշտակաց և հրեշտակապետաց, մարդարէից, առաքելոց և արդարոց սրբոց: Ապրեցո զիս զամբարիշտս շնորհօք ողորմութեան քո. ընկալ զիս 'ի դրախտն փափկութեան ընդ կատարեալ արդարսն. ընկալ զաղօթս մեղուցեալ ծառայիս քո բարեխօսութեամբ սրբոցն որք հաճոյ եղեն քեզ, Յս Քս Տէր մեր, որ ես օրհնեալ ընդ Հօր և սուրբ Հոգւոյդ յաւիտեանս յաւիտենից. ամէն:

